ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 11
ՆՈՅԵՄԲԵՐ
1959 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVI
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ





# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՓԱՌԱՊԱՆԾ ԴՐՈՇՈՎ

*Դարերի և հազարավոր տարիների ընթացքում ժողովուրդների ու պետությունների կյանքում տեղի են ունեցել ոչ քիչ կարևոր իրադարձություններ, բայց նրանցից ոչ մեկը իր նշանակությամբ չի կարելի համեմատել Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հետ։ Ռուսաստանի բանվոր դասակարգը դաշնակցած աշխատավոր գյուղացիության հետ, Լենինի առաջնորդած Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, հաղթանակեց այդ ռևոլյուցիայում, խորտակեց շահագործողների տիրապետությունը, հաստատեց բանվոր դասակարգի դիկտատուրա, վերջ տվեց ամեն տեսակի սոցիալական ու ազգային ճնշման։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան հանդիսացավ հասարակության պատմության նոր՝ կապիտալիզմի խորտակման և սոցիալիզմի ստեղծման դարաշրջանի սկիզբը։*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան հանդիսանալով ամենավիթխարին իր մասշտաբով և ամենախորն իր խնդիրներով ու նպատակներով, բախտորոշ ներգործություն ունեցավ համաշխարհային հասարակական կյանքի ընթացքի վրա։ Մեծ Հոկտեմբերը հարթեց այն մայրուղին, որով այժմ դեպի կոմունիզմ է գնում Սովետական Միությունը. դեպի սոցիալիզմ են ընթանում Եվրոպայի ու Ասիայի բազմաթիվ երկրներ և այդ ուղիով էլ կգնան բոլոր երկրների աշխատավորները։ «Կապիտալիզմի և նրա հետքերի ոչնչացումը,— ասում է Վ. Ի. Լենինը,— կոմունիստական հասարակարգի հիմքի հաստատումը կազմում է համաշխարհային պատմության այժմ սկսած նոր դարաշրջանի բովանդակությունը»։*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան արթնացրեց և կյանքի կոչեց բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության և ինտելիգենցիայի հիրավի անսպառ ստեղծագործական ուժը, պատմական կարճ ժամանակամիջոցում մեր Հայրենիքը թույլ երկրից դարձնելով տնտեսապես հզոր, գիտությամբ ու կուլտուրայով ամենաառաջավորը։ Սովետական ժողովուրդը հարազատ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ գործի դնելով իր անսպառ եռանդը, կարողությունն ու երկրի հարստությունը, աշխարհում առաջինն ավարտեց սոցիալիստական հասարակարգի կառուցումը և աստիճանաբար անցում է կատարում դեպի կոմունիզմ։*

*Անցյալում հետամնաց մեր երկիրը դարձավ ինդուստրիալ, կոլտնտեսային, սոցիալիստական հզոր տերություն։ ՍՍՌՄ-ը ներկայումս արդյունաբերական արտադրության ծավալով գրավում է առաջին տեղը Եվրոպայում և երկրորդ տեղը՝ աշխարհում։ 1958 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքը, 1913 թվականի համեմատությամբ, ավելացել է 36 անգամ, ըստ որում արտադրության միջոցների արտադրությունն աճել է 83 անգամ, իսկ մեքենաշինության, մետաղամշակման արտադրանքը՝ 240 անգամ։*

Հենվելով ՍՍՌ Միության արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության ու կուլտուրայի բնագավառում անցած ավելի քան 40 տարիների ընթացքում ձեռք բերած վիթխարի նվաճումների վրա, ՍՄԿՊ XXI համագումարը մշակեց մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման հոյակապ ու ծավալուն ծրագիր՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների պլանը։ Կոմունիզմի կառուցման վիթխարի այդ ծրագրով մեր պարտիան ու նրա Կենտրոնական Կոմիտեն բոլոր աշխատավորների արտադրական եռանդն ու կարողությունն ուղղեցին այդ պլանը հաջողությամբ կատարելու նպատակին։ Սովետական մարդիկ ջերմորեն արձագանքելով Կոմունիստական պարտիայի կոչին և լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, իրենց աշխատանքային սխրագործություններով հերոսաբար մարտնչում են յոթնամյա պլանը ժամկետից շուտ կենսագործելու, մեր Հայրենիքի հետագա բարգավաճման համար։

ՍՍՌՄ արդյունաբերությունը համախառն արտադրանքի թողարկման 1959 թվականի անցած ինն ամսվա պլանը գերակատարել է ավելի քան չորս տոկոսով։ Մեր երկրի յուրաքանչյուր աշխատավոր մեծ գոհունակությամբ և հպարտությամբ ընդունեց այն հաղորդագրությունը, որ միայն այս տարվա ինն ամսվա ընթացքում, անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, չուգունի արտադրությունն ավելացել է 2,7 միլիոն տոննայով, պողպատինը՝ 3,6 միլիոն տոննայով, նավթի հանույթը՝ 11,9 միլիոն տոննայով, գազի հանույթն ու արտադրությունը՝ 5 միլիարդ խոր. մետրով, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 18 միլիարդ կիլովատ ժամով. միայն ծանր արդյունաբերության արտադրանքի աճն ըստ պլանի այս տարի նախատեսված էր 7,7 տոկոս, իսկ փաստորեն ինն ամսում, անցյալ տարվա նույն ժամանակի համեմատությամբ, աճել էր 12 տոկոսով։

1959 թ. ինն ամիսներին (անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ) ավելի է արտադրվել 243 միլիոն քառակուսի մետր գործվածքեղեն, 24 միլիոն զույգ կոշիկ, 372 հազար տոննա շաքարավազ, 291 հազար տոննա ձեթ։

Նախնական հաշվարկումներով արդյունաբերական արտադրանքի 1959 թվականի տարեկան պլանը կգերակատարվի մոտավորապես չորս տոկոսով, որը կտա ավելի քան 40 միլիարդ ռուբլու գերպլանային արտադրանք։

Այս տարվա ընթացքում զգալի հաջողություններ է ձեռք բերված մեր երկրի գյուղատնտեսության զարգացման բնագավառում։ Չնայած այն բանին, որ Սովետական Միության մի շարք շրջաններում երաշտ էր, այնուամենայնիվ, մինչև հոկտեմբերի 5-ը գնված է 2 միլիարդ 712 միլիոն փութ հացահատիկ, երկիրը լիովին ապահովված է հացով։ Ժամկետից շուտ կատարված է անասնաբուծական մթերքների պետական գնման 1959 թվականի տարեկան պլանը։

Անշեղորեն կենսագործելով Վ. Ի. Լենինի ցուցումները, Կոմունիստական պարտիան ու Սովետական կառավարությունը մեծ հոգատարություն են ցուցաբերում գիտության ու կուլտուրայի բարգավաճման նկատմամբ։ Սովետական գիտնականները, կոնստրուկտորները, ինժեներները մեծ ծառայություն են մատուցում մեր Հայրենիքին, արժանի ներդրում կատարում կոմունիզմի կառուցման համաժողովրդական գործում։ Ամբողջ աշխարհը հիացմունքով նշեց մեր արհեստական արբանյակների և տիեզերական հրթիռների արձակումը։ Երրորդ տիեզերական հրթիռի հաջող արձակումը և նրա միջմոլորակային ավտոմատ կայանի հիանալի գործադրումը ոչ միայն Սովետական Միության, այլև համամարդկային գիտության հաղթանակը հանդիսացավ։



«Յուրաքանչյուր օր մեզ բերկրալի լուր է բերում,— ասում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— սովետական ժողովրդի նորանոր հաղթանակների մասին։ Ինչպե՞ս կարող ենք մենք չուրախանալ, չհպարտանալ սովետական մարդկանց այնպիսի սխրագործություններով, ինչպես միայն 1959 թվականի ընթացքում տիեզերական երեք հրթիռների հաջող արձակումը, որոնք առաջ բերեցին ամբողջ մարդկության հիացմունքը։ Ամբողջ սովետական ժողովուրդը փառաբանում է գիտության և աշխատանքի մարդկանց, որոնք ուղի բացեցին դեպի տիեզերքը»։

Սովետական ժողովուրդն այսպիսի փայլուն հաջողություններով է դիմավորում Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի 42-րդ տարեդարձը։

Եվ մենք՝ սովետական մարդիկս, ինչպե՞ս չուրախանանք այդպիսի հաջողություններով, երբ լավ են գնում մեր երկրի գործերը, երբ արդյունաբերությունը աշխատում է հաջողությամբ և գերակատարում է պլանները, երբ գյուղատնտեսությունը շեշտակի վերելք է ապրում, երբ գիտությունն ու կուլտուրան ծաղկում են, երբ օր-օրի բարեկեցիկ է դառնում մեր երկրի աշխատավորության կյանքը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի մեծագույն նվաճումներից մեկն էլ հանդիսանում է ազգային հարցի լենինյան լուծումը։ Այժմ ՍՍՌՄ-ում բնակվող ժողովուրդների՝ ցարիզմից ժառանգություն մնացած տնտեսական ու կուլտուրական հետամնացության հետքերն անգամ չեն երևում։

Հենց Մեծ Հոկտեմբերի լուսաշող փարոսն էր, որ հայ ժողովրդին ցույց տվեց նրա ազատության ուղին։ Համախմբված Կոմունիստական պարտիայի շուրջն ու մեծ Լենինի դրոշի ներքո Հայաստանի աշխատավորները 39 տարի առաջ՝ 1920 թվականի նոյեմբերի 29-ին, տապալեցին դաշնակցականների արյունալի տիրապետությունն ու հաստատեցին սովետական կարգեր։ Ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնությամբ հայ ժողովուրդը բռնեց սոցիալիզմի ուղին։

Սովետական Միության ժողովուրդների մեծ ու համերաշխ ընտանիքում այսօր հայ ժողովուրդն ընթանում է կոմունիզմի լուսաշող ճանապարհով։ Անցած 39 տարիների ընթացքում մեծ են Սովետական Հայաստանի ձեռք բերած նվաճումները։ 1958 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը 1913 թվականի արտադրության ծավալը գերազանցեց 54 անգամ։ Երկրի ծանր արդյունաբերության բոլոր ճյուղերը, բացի պղնձահանքային արդյունաբերությունից, ստեղծվեցին Սովետական իշխանության տարիներին։ Լիովին փոխվել է նաև պղնձի արդյունաբերության վիճակը, որի բազայի վրա ստեղծվել են գունավոր մետալուրգիայի ժամանակակից հզոր ձեռնարկություններ՝ հագեցված առաջավոր տեխնիկայով ու սարքավորումներով։ Մեր ռեսպուբլիկայում ներկայումս յուրաքանչյուր յոթ օրում ավելի շատ արտադրանք է թողարկվում, քան ամբողջ 1913 թվականին։

Մեծ են Սովետական Հայաստանի գյուղատնտեսության նվաճումները։ Անցյալում տասնյակ հազարավոր հեկտար ամայի դաշտեր այժմ վերածվել են փարթամ այգիների ու բերքառատ դաշտերի։ Միայն Սովետական իշխա-

նության տարիներին ավելի քան 110 հազար հեկտար տարածություն դարձել է ոռոգելի։ Այժմ կոլտնտեսությունների և սովխոզների դաշտերում աշխատում են հազարավոր տրակտորներ, կոմբայններ, ավտոմոբիլներ ու գյուղատնտեսական այլ մեքենաներ։ Տարեցտարի ավելանում է հանրային հոտի գլխաքանակն ու աճում անասնաբուծական մթերքների արտադրությունը։

Խոշոր են Սովետական Հայաստանի նվաճումները նաև գիտության ու կուլտուրայի բնագավառում։ Այժմ ռեսպուբլիկայում գործում են մոտ 1300 դպրոց, 12 բարձրագույն ու 31 միջնակարգ մասնագիտական հաստատություններ։ Հայկական ՍՍՌ-ն ունի իր Գիտությունների ակադեմիան։

Սովետական Հայաստանի արդյունաբերության աշխատողները ծավալված սոցիալիստական մրցության շնորհիվ պատվով են կատարում յոթնամյակի առաջադրանքները։ Ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման 1959 թվականի ինն ամսվա պլանը ընդհանուր առմամբ գերակատարված է 4 տոկոսով։ Այս տարվա ինն ամսում (անցյալ տարվա նույն համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ), ավելի է արտադրվել էլեկտրաէներգիա՝ 105 միլիոն կիլովատ ժամ, ցեմենտ՝ մոտ 47 հազար տոննա. ավելացել է նաև պղնձի, ալյումինի, մոլիբդենի, սինթետիկ կաուչուկի, ավտոդողերի արտադրությունը և այլն։ Գերակատարված են կաշվի ու կոշկեղենի, բրդյա ու մետաքսյա գործվածքների, տրիկոտաժի, կահույքի, շաքարավազի, յուղի արտադրության առաջադրանքները։ Կատարելով իրենց վերցրած պարտավորությունները, տարվա ընթացքում որոշակի հաջողությունների են հասել նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բնագավառի աշխատողները։

Յոթնամյակի առաջին տարվա արդյունքները և համաժողովրդական սոցիալիստական մրցության ընթացքում հայտաբերված լրացուցիչ ռեզերվները հնարավորություն են տալիս 1960 թվականի համար ավելի շատ արտադրանք նախատեսել, քան ընդունված է յոթնամյա պլանով։

ՍՍՌ Միության Գերագույն Սովետի հինգերորդ գումարման երրորդ սեսիան, որը քննարկեց 1960 թվականի՝ յոթնամյակի երկրորդ տարվա ժողովրդական տնտեսության զարգացման պլանն ու պետական բյուջեն, նախատեսեց եկող տարի արտադրության արտադրանքի աճը (1958 թվականի համեմատությամբ), հասցնել 20 տոկոսի և ոչ 18 տոկոսի, ինչպես նախատեսված էր յոթնամյա պլանով։ 1960 թվականին ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ ներդրվելու է 522,4 միլիարդ ռուբլի, կամ 37,9 միլիարդով ավելի, քան 1959 թվականին։ 1959—1960 թվականների ընթացքում մեր երկրում պողպատի ձուլումը աճելու է 10 մլն. տոննայով, այնինչ ԱՄՆ-ում պողպատի արտադրանքի այդպիսի քանակի համար հարկավոր եղավ 12 տարի։ Էլեկտրաէներգիայի արտադրությունը երկու տարում աճելու է 56 միլիարդ կիլովատ ժամով, ԱՄՆ-ը էլեկտրաէներգիայի այդպիսի աճի համար հինգ տարի կորցրեց։ Երկու տարվա ընթացքում մեր երկրում նավթի հանույթն ավելանալու է 31 միլիոն տոննայով։ Այս փաստերը ցույց են տալիս սոցիալիստական սիստեմի մեծ առավելությունները կապիտալիստականի հանդեպ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ծնունդ Սովետական իշխանության պետական առաջին ակտը հաշտության մասին դեկրետի հրապարակումն էր։ Հավատարիմ մնալով լենինյան սկզբունքներին, Սովետական



Միությունը, սոցիալիստական բոլոր երկրներն իրենց խաղաղասեր քաղաքականությամբ մարդկության առջև բաց են արել պատերազմից զերծ, խաղաղ համագործակցության հիմունքներով հասարակության զարգացման ճանապարհը։

ՍՍՌ Միության Գերագույն Սովետի վերջերս տեղի ունեցած սեսիայում տված իր զեկուցման մեջ ընկեր Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ Սովետական կառավարությունը և ժողովուրդը ելնում են հասարակական տարբեր կառուցվածք ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան դրույթից և ամեն ինչ անում են աշխարհում կայուն խաղաղության ապահովման համար։ Հարկավոր է, որպեսզի երբ մարդիկ պառկում են քնելու, չմտածեն, որ դա իրենց վերջին գիշերն է, որ ամեն րոպե կարող է պայթել պատերազմի աղետը։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի՝ աշխարհի բոլոր երկրների պառլամենտներին ուղղած դիմումի մեջ նշված է. «Միջազգային հարաբերությունների զարգացումն այժմ թևակոխել է արտակարգ և պատասխանատու մի փուլ։ Ատոմի, էլեկտրոնիկայի և տիեզերքի նվաճման դարը բացել է գիտության ու տեխնիկայի զարգացման անսահման, հոյակապ հեռանկարներ։ Բայց միևնույն ժամանակ մարդկությունը կանգնել է այդ մեծ հայտնագործությունները մարդկանց բնաջնջման և նյութական արժեքների ոչնչացման նպատակով օգտագործելու ռեալ սպառնալիքի առաջ»։

Ո՞րն է ելքը, ինչպե՞ս վերջ տալ ստեղծված դրությանը, մարդկանց համար ինչպե՞ս ապահովել անդորր ու խաղաղ կյանք։

Արդյոք կա՞ պատերազմի սանձազերծման հնարավորությունը բացառելու հուսալի և վճռական միջոց։ Այո, կա։ Այդ միջոցը պետությունների ընդհանուր և լրիվ զինաթափումն է։ Երբ արդեն ոչնչացված կլինեն պատերազմ մղելու միջոցները, վերացված կլինեն զենքի բոլոր տեսակները և արձակված կլինեն բանակները, այն ժամանակ դրանով իսկ պայմաններ կստեղծվեն աշխարհում կայուն խաղաղության համար, խաղաղություն՝ առանց պատերազմների և արյունահեղությունների։

Սովետական կառավարությունը ձգտելով միջազգային լարվածությունը թուլացնելու և աշխարհում խաղաղություն ստեղծելու նպատակին, միայն վերջին մեկ ու կես տարում արել է այնպիսի կարևոր առաջարկություններ, ինչպիսիք են՝ միջուկային զենքի փորձարկումները դադարեցնելու, ատոմազերծ գոտիներ ստեղծելու, Գերմանիայի հետ հաշտության պայմանագրի կնքման միջոցով երկրորդ համաշխարհային պատերազմի մնացորդները վերացնելու, միջազգային առավել հասունացած հարցերի քննարկման համար կառավարությունների ղեկավարների խորհրդակցություն հրավիրելու, ընդհանուր և լրիվ զինաթափում իրագործելու առաջարկները։

Միջազգային լարվածության վերացման գործում աչքի ընկնող դեր խաղացին ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նախագահ ընկեր Ն. Ս. Խրուշչովի այցը Ամերիկայի Միացյալ Նահանգներ և նրա հանդիպումները պրեզիդենտ Դ. Էյզենհաուերի հետ։

Ղեկավարվելով խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքով, Կոմունիստական պարտիան, Սովետական կառավարությունը միշտ էլ այն կարծիքին են, որ հասարակական տարբեր սիստեմներ ու կառուցվածք ունեցող պետություններ կարող են կողք-կողքի գոյություն ունենալ և մրցել խաղաղ ճանա-

*պարհով՝ տնտեսության, գիտության ու կուլտուրայի բնագավառում, որ հասարակական տարբեր կառուցվածք ունեցող պետությունների այդպիսի գոյակցությունը ենթադրում է, որ նրանք պետք է ամեն կերպ հեռու մնան պատերազմելու մտադրությունից և երկուստեք զիջումներ անեն հօգուտ աշխարհի խաղաղության։ Բայց չի կարելի պետությունների խաղաղ գոյակցության օգտին փոխադարձ զիջումները շփոթել սկզբունքների զիջումների հետ։ «Այստեղ ոչ մի զիջման,— ասում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը,— և որևէ ձևով հարմարվելու մասին խոսք անգամ չի կարող լինել։ Եթե զիջումներ լինեն սկզբունքների ասպարեզում, գաղափարախոսությունների հարցում, ապա դա կնշանակի սայթաքել մեր հակառակորդների դիրքը։ Դա կնշանակի քաղաքականության որակական փոփոխություն, կլինի դավաճանություն բանվոր դասակարգի գործին»։*

*Կոմունիստական պարտիան վստահ մարքսիզմ-լենինիզմի գաղափարների ճշմարտության ուժին, գաղափարներ, որոնք ժայռի պես դիմացել են բոլոր ռեակցիոն ու հակառակորդ գաղափարախոսությունների գրոհներին, դաժան պայքարում պարտության մատնելով հակառակորդներին՝ դարձել է ամբողջ ազատասեր ու առաջադեմ մարդկության զորավիգը։ Այդ գաղափարներով զինված Ռուսաստանի բանվոր դասակարգը ազատության ու խաղաղության դրոշը պարզած 1917 թվականի հոկտեմբերին գրոհի գնաց շահագործողների տիրակալության դեմ և աշխարհի մեկ վեցերորդ մասում ստեղծեց աշխատավորների առաջին սոցիալիստական իշխանություն։*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո անցած տարիների ընթացքում մեծ փոփոխություններ են տեղի ունեցել սոցիալիզմի և կապիտալիզմի համաշխարհային սիստեմների ուժերի հարաբերությունների միջև՝ հօգուտ սոցիալիզմի։ Այժմ սոցիալիզմի դրոշը ծածանվում է աշխարհի մոտավորապես մեկ քառորդի վրա, սոցիալիստական լագերի երկրներում ապրում է մարդկության մեկ երրորդը, համաշխարհային արտադրության մեկ երրորդ մասը բաժին է ընկնում սոցիալիստական սիստեմին։ 1965 թվականին սոցիալիստական լագերը կարտադրի ամբողջ աշխարհի արդյունաբերական արտադրության մոտ 50 տոկոսը։*

*Այսպիսով, երկու սիստեմների խաղաղ գոյակցության ու մրցության մեջ սոցիալիզմի լագերը գնալով աճում ու հզորանում է։ «Խորին գոհունակության զգացումով մենք կարող ենք հայտարարել,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— որ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի բոլոր երկրները համախմբված են, ինչպես երբեք։ Նրանք միասնական շարքով հանդես են գալիս պատմական խնդիրը լուծելու՝ մարդկությանը պատերազմներից փրկելու և խաղաղության ու սոցիալական առաջադիմության ուղիով ժողովուրդների զարգացումն ապահովելու համար»։*

*Սովետական ժողովուրդը, որը 1917 թվականի հոկտեմբերին մարդկությանը ցույց տվեց ազատության և երջանկության ուղին, համախմբված իր հարազատ Կոմունիստական պարտիայի շուրջը, յոթնամյակի կատարման համար մղվող պայքարում նվաճում է նորանոր բնագծեր և մեծ Լենինի նշած ուղիով, Հոկտեմբերի փառապանծ դրոշով ընթանում է դեպի կոմունիզմի լիակատար հաղթանակը։*

---

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՄԻՍԻԱՅԻ ՓԱՍՏԱԹՈՒՂԹԸ

## Ս. ԳԱՍՊԱՐՅԱՆ

*Պետությունների և ժողովուրդների կյանքում լինում են այնպիսի տարեթվեր, որոնք միանգամից տիրապետում են մարդկանց գիտակցությանը, տիրաբար գրավում են մարդկային պատմության տարեգրության էջերը՝ հավիտենապես այնտեղ մնալու համար։ Դրանք միշտ կապված են լինում համաշխարհային պատմական նշանակություն ունեցող այնպիսի իրադարձությունների հետ, որոնք վճռական ազդեցություն են գործում ներկա և գալիք սերունդների կյանքի վրա, իրենց իմաստով և ընդգրկումով նշանավորում նոր դարաշրջան։*

*1959 թվականը ժամանակակից մարդկության համար հենց այդպիսի տարեթիվ հանդիսացավ։ Սեպտեմբերի 14-ին մարդկային պատմության մեջ առաջին անգամ մարդու ձեռքով պատրաստված գիտական ապարատը հասավ մեր հարևան մոլորակին-լուսնին։ Դա ամբողջ մարդկության համար բացառիկ նշանակություն ունեցող իրադարձություն էր։ Մյուս օրը՝ սեպտեմբերի 15-ին, Վաշինգտոնի Էնդրյուս օդանավակայանում Սովետական կառավարության ղեկավարը պատմության մեջ առաջին անգամ ոտք դրեց ամերիկյան հողը։ Դա նույնպես բացառիկ նշանակություն ունեցող երևույթ էր։*

*Տասներեք օր տևեց Ն. Ս. Խրուշչովի պատմական ուղևորությունը Ամերիկայի Միացյալ Նահանգներում։ Այդ տասներեք օրերը ցնցեցին աշխարհը, փոխեցին միջազգային հարաբերությունների զարգացման ընթացքը, կապիտալիստական աշխարհի շատ ու շատ քաղաքական գործիչների, դիվանագետների, գիտնականների ու հասարակական գործիչների ստիպեցին նոր աչքերով նայել աշխարհում կատարվող իրադարձություններին։*

*Ահա մեր սեղանի վրա է այն գիրքը, որն իր մեջ ամփոփում է Ն. Ս. Խրուշչովի Ամերիկա կատարած ուղևորության նյութերը՝ Սովետական կառավարության ղեկավարի հայտարարությունները, ճառերն ու պրեսկոնֆերանսները։ Ժամանակակից միջազգային կյանքի հանրագիտարան կարելի է անվանել այն, քանի որ չկա միջազգային իրադարձության հետ կապված որևէ կարևոր հարց, որն այս կամ այն ձևով չշոշափվեր այս գրքի մեջ։ Ընթերցողը այստեղ կարող է գտնել միջազգային այնպիսի կարևորագույն պրոբլեմների պատասխանը, ինչպիսիք են՝ զինաթափման, խաղաղ գոյակցության, Գերմանիայի հետ հաշտության պայմանագրի կնքման, Արևմտյան Բեռլինի, համաշխարհային առևտրի, ժողովուրդների միջև գիտական ու կուլտուրական կապերի հարցերը։ Գրքի խորագիրը չափազանց պարզ է, բայց և չափազանց պատկերավոր ու խորիմաստ։ «Ապրել խաղաղության և բարեկամության մեջ։*

Ն. Ս. Խրուշչովի ուղևորությունը Ամերիկայի Միացյալ Նահանգներ։ 1959 թ. սեպտեմբերի 15—27»։

Թերթում ենք այս էջ առ էջ, նորից ու նորից կարդում այն ճառերն ու հայտարարությունները, որոնք շարունակում են մնալ ամբողջ աշխարհի հասարակայնության ուշադրության կենտրոնում և կմնան դեռ երկար ժամանակ։ Միջազգային հարաբերությունների ու դիվանագիտության ամբողջ պատմության մեջ տեղի են ունեցել պետությունների ղեկավարների և դիվանագետների շատ հանդիպումներ։ Եղել են այնպիսիները, որոնք անցել են անշուք ու աննկատ ու շուտով մոռացվել։ Եղել են և այնպիսիները, որոնք վճռական ազդեցություն են գործել միջազգային կյանքի զարգացման վրա և խոր հետք են թողել միջազգային հարաբերությունների պատմության մեջ։ Սակայն արտաքին քաղաքականության տարեգրության մեջ հազիվ թե կարելի է գտնել մի իրադարձություն, որն ունենար այնպիսի միջազգային ռեզոնանս, իր վրա բևեռեր այնպիսի ընդհանուր լարված ուշադրություն, ինչպես այդ պատմական ուղևորությունը։

Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ բոլոր երևույթները պետք է դիտել իրենց դիալեկտիկական կապի ու զարգացման, կոնկրետ իրադրության մեջ։ Ընկեր Ն. Ս. Խրուշչովի ուղևորությունը տեղի ունեցավ պատմական բացառիկ պատասխանատու պահին։ Դեռ երբեք խաղաղության ու պատերազմի հարցերը այնքան չեն հուզել մարդկությանը, ինչպես մեր ժամանակներում։ Այդ ուղևորությունը տեղի ունեցավ միջազգային բարդ իրադրության մեջ, երբ ժողովուրդները հրամայաբար պահանջում են գտնել միջազգային հիմնական պրոբլեմների լուծումը և դրանով իսկ փակել պատերազմի ճանապարհը։ Խաղաղության այդ մեծ միսիայի նշանակությունն ընդգծվում էր նրանով, որ դրան նախորդում էր սառը պատերազմի մի ամբողջ ժամանակաշրջան և վերջապես դա հանդիպումն էր աշխարհի ամենահեղինակավոր պետության՝ Սովետական սոցիալիստական պետության ղեկավարի և կապիտալիզմի ամենախոշոր ու ամենաուժեղ պետության՝ ԱՄՆ-ի ղեկավարի, պետություններ, որոնք վճռական ազդեցություն ունեն միջազգային կյանքի վրա և որոնք կարող են մեծագույն ավանդ մուծել խաղաղության ամրապնդման գործում։

Չափազանց բազմազան են այն միջազգային պրոբլեմները, որոնք իր ելույթներում շոշափել է ընկեր Ն. Ս. Խրուշչովն ԱՄՆ-ում կատարած ուղևորության ժամանակ և որոնք զետեղված են գրքի մեջ։

Աշխարհի ժողովուրդների հիշողության մեջ ընդմիշտ կմնա սեպտեմբերի 18-ի օրը, երբ ՄԱԿ-ի լեփ-լեցուն դահլիճում, աշխարհի բոլոր պետությունների ներկայացուցիչների առջև Սովետական Միության կառավարության ղեկավարը հանդես եկավ ընդհանուր ու լրիվ զինաթափման ծրագրով։ Միավորված Ազգերի Կազմակերպության ստեղծման օրվանից նրա ամբիոնից ելույթ են ունեցել աշխարհի շատ պետությունների ղեկավարներ։ Սակայն իր պատմության մեջ այդ համաշխարհային կազմակերպությունը դեռ չէր ունկնդրել մի մարդու, որը կարողանար այդպիսի խորությամբ ու ճշմարտացիությամբ վերլուծել ժամանակակից միջազգային իրադրությունը, բնութագրել հնարավոր պատերազմի բոլոր հետևանքները և ներկայացնել այն կանխելու այդպիսի մի համարձակ ու համապարփակ ծրագիր։ Միջազգային արդի վիճակի խոր ու բազմակողմանի վերլուծությամբ, կուռ և համոզիչ տրամաբանությամբ նա ցույց տվեց զինաթափման ամբողջ կարևորությունը,



անվանելով այն հարցերի հարց։ Այն կրքոտությունը, անկեղծությունն ու ճշմարտությունը, որով տոգորված էր այդ ելույթը, մեր հիշողության մեջ վերականգնեցին Վլադիմիր Իլյիչ Լենինի կրակոտ ելույթներն ու ճառերը սովետական արտաքին քաղաքականության մեծ սկզբունքների մասին։ Ընդհանուր ու լրիվ զինաթափման սովետական ծրագիրը, որ միջազգային առաջադեմ մամուլը որակեց որպես խաղաղության մեծ խարտիա, ամենալայն արձագանք գտավ ոչ միայն աշխարհի բանուկ քաղաքներում, այլև նրա ամենահեռավոր ու ամենախոր անկյուններում։ Նրա արձագանքները մտան աշխարհի հասարակ մարդկանց խաղաղ հարկերի տակ։ Չէ՞ որ նա խոսում էր նրանց սրտից, հույս ու հավատ ներշնչում այն մասին, որ ժամանակակից ավերիչ պատերազմները ճակատագրական անխուսափելիություն չեն, որ կատարյալ զինաթափումը ժողովուրդների առջև կարող է բանալ խաղաղության և ժողովուրդների բարեկամության լայն պողոտան։

Մարդկության բազմադարյան պատմության մեջ պարբերական անթիվ պատերազմները ժողովուրդներին պատճառել են անհամար աղետներ ու զրկանքներ, կլանել ու ոչնչացրել են նրանց ստեղծած նյութական հոգևոր շատ արժեքներ։ Մեր դարում ռազմական գիտության ու տեխնիկայի զարգացումը պատերազմները դարձրել է ավելի աղետաբեր, ավելի բնաջնջող։

Ինչպիսի՞ աղետներ կարող է բերել պատերազմը մեր օրերում։ Այդ հարցի սպառիչ պատասխանը կարելի է գտնել ՄԱԿ-ում ընկ. Ն. Ս. Խրուշչովի արտասանած ճառում։ «Դեռ վերջերս,— ասաց Սովետական կառավարության ղեկավարը,— արագաձիգ ավտոմատ զենքը, տանկերը, հեռահար հրետանին և ավիացիոն ռումբերը համարվում էին մարդկային բնաջնջման ամենաահավոր և ամենահզոր միջոցները։ Բայց մի՞թե կարելի է դրանք համեմատել այն զենքի հետ, որ կա ներկայումս։ Այժմ սկսվել է այնպիսի ստադիա, երբ դժվար է հնարել ավելի հզոր զենք, քան ջրածնային զենքը, որի ուժը գործնականում սահման չունի։ Եթե անցյալում մարդկային հասարակության ունեցած ոչնչացման բոլոր միջոցները գումարենք, ապա այդ ամենն իր հզորությամբ չնչին բաժին կկազմեր այն բանի, ինչ այժմ ունեն միջուկային զենքի տիրապետող երկու-երեք մեծ տերությունները»։ Սովետական Միությունը, այսպիսով, աշխարհի ժողովուրդներին ահազանգում է այն մեծ վտանգի մասին, որը տակավին կա, որը չի վերացված։ Բայց Սովետական Միությունը դրանով չի սահմանափակվում։ Նա ցույց է տալիս պատերազմի կանխման և տևական խաղաղության ուղին։ Դա ընդհանուր ու լրիվ զինաթափումն է։

Տասնչորս տարուց մի փոքր ավելի է անցել այն օրվանից, ինչ լռել են երկրորդ համաշխարհային պատերազմի թնդանոթները։ Սակայն սպառազինությունների անզուսպ մրցավազքի պատճառով այժմ ավելի քան հարյուր միլիոն մարդ կտրված են խաղաղ աշխատանքից։ Ներկայումս բոլոր պետությունների ամենամյա ռազմական ծախսերը կազմում են մոտավորապես հարյուր միլիարդ դոլար։ Լոկ այս երկու թվերը ցույց են տալիս, թե ինչ կնշանակեր մարդկության համար զինաթափման ծրագրի իրականացումը։ Նա մեծագույն հումանիստական ակտ կլիներ ոչ միայն պատերազմը կանխելու իմաստով, այլև ամենաէֆեկտիվ միջոցառումներից մեկը կլիներ պատմական կարճ ժամկետներում բոլոր երկրների խաղաղ տնտեսությունը զարգացման նոր աստիճանի բարձրացնելու, ազատվող հսկայական միջոցները խաղաղ նպատակների տրամադրելու ասպարեզում։ Մեծագույն լավատեսությամբ է

տոգորված Սովետական կառավարության ղեկավարի ելույթը։ Ամբողջ աշխարհում աննախընթաց աճել են խաղաղության ուժերը, նրանք ի վիճակի են իրենց միասնական ու կազմակերպված ջանքերով կանխել պատերազմը։ Այն պետք է ընդմիշտ վերացնել հասարակության կյանքից, որպես մարդկության մեծագույն չարիքներից մեկը։ ՍՄԿԿ XXI համագումարում հռչակված այս մեծ հումանիստական դրույթը ուտոպիա չէ, այն կարելի է և պետք է իրականացնել։ Դարերով սնուցված բուրժուական գաղափարախոսությունն այն մասին, որ պատերազմը դա բնական չարիք է և մարդկության անխուսափելի ուղեկիցը, պետք է հերքվի։ Այժմ դրա համար կա գիտականորեն հիմնավորված ծրագիր, դրա համար կան հասարակական բավականաչափ կազմակերպված ուժեր։ Դրա մեծագույն գրավականը համաշխարհային սոցիալիստական լագերի ուժն ու անպարտելիությունն է։

Որպեսզի իրականացվի զինաթափման մեծ ծրագիրը, որպեսզի լուծվեն միջազգային բոլոր հրատապ հարցերն ու պրոբլեմները, որպեսզի ժողովուրդների ու պետությունների միջև ապահովվեն լայն տնտեսական ու կուլտուրական կապերը, պետք է հաղթանակի սոցիալական տարբեր սիստեմների խաղաղ գոյակցության գաղափարը։ Այս միտքը կարմիր թելի պես անցնում է Ն. Ս. Խրուշչովի բոլոր ելույթներում։ Վաշինգտոնում ու Նյու-Յորքում, Լոս-Անժելոսում ու Սան-Ֆրանցիսկոյում, Դե-Մոյնում ու Պիտսբուրգում— ամենուրեք Սովետական կառավարության ղեկավարը երկաթե տրամաբանությամբ, միջազգային կյանքի զարգացման օրինաչափությունների գիտական վերլուծությամբ համոզում էր, որ կապիտալիզմի ու սոցիալիզմի խաղաղ գոյակցության գաղափարի հաղթանակը ոչ միայն անհրաժեշտ է, այլև պատմական անխուսափելիություն։ Բազմամարդ, լեփ-լեցուն աուդիտորիաներում նրան լսում էին ամերիկյան հասարակության բոլոր խավերի ներկայացուցիչները՝ բանվորներն ու ֆերմերները, ժուռնալիստներն ու դիվանագետները, տնային տնտեսուհիներն ու ուսանողները, կոնգրեսմեններն ու կապիտալիստները։

Թերթում ենք գիրքը։ Ահա ամերիկյան մամուլի ազգային ակումբում ընկեր Խրուշչովի արտասանած ճառը և զրույցը ամերիկյան կոնգրեսի լիդերների հետ, ահա բազմաթիվ պրեսկոնֆերանսների նյութերը։ Լենինյան կրքոտությամբ Սովետական կառավարության ղեկավարը ապացուցում է սոցիալիզմի գերազանցությունը կապիտալիզմի նկատմամբ, ապացուցում է թվերի ու փաստերի անհերքելի ուժով։ Յուրաքանչյուր խոսքում, յուրաքանչյուր նախադասության մեջ զգացվում է Սովետական սոցիալիստական պետության մեծությունն ու հզորությունը, ամբողջ սոցիալիստական լագերի հզորությունն ու անպարտելիությունը։ Սովետական մարդիկ օրինական հպարտության զգացումով են կարդում այդ ելույթներն ու ճառերը։

Ն. Ս. Խրուշչովի ամերիկյան ուղևորության նախօրյակին էր, որ ամերիկյան «Ֆորին աֆերս» ժուռնալում հրապարակվեց նրա «Խաղաղ գոյակցության մասին» հոդվածը։ Վերլուծելով ժամանակակից միջազգային կյանքի զարգացման օրինաչափությունները՝ Ն. Ս. Խրուշչովը գիտականորեն հիմնավորում ու նորագույն փաստերի ընդհանրացումով զարգացնում է սոցիալական տարբեր սիստեմների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը։

Խաղաղ գոյակցությունը սովետական մարդկանց համար, սոցիալիստական երկրների հարյուր միլիոնավոր աշխատավորների համար, աշխարհի բո-



լոր կոմունիստների համար չի նշանակում կապիտալիզմի հետ որևէ գաղափարական հաշտեցում։ Այս գաղափարը բազմաթիվ անգամ ընդգծեց ընկեր Խրուշչովը, որին ամերիկյան մամուլի որոշ օրգաններ անվանեցին «թիվ № 1 կոմունիստ»։ Սան-Ֆրանցիսկոյում, քաղաքագլխի մոտ գործարար շրջանների ներկայացուցիչների հետ ճաշկերույթի ժամանակ Ն. Ս. Խրուշչովն ասաց. «Մե՞թե դուք կարող եք ինձ համոզել, թե կապիտալիստական հասարակարգը սոցիալիստականից լավ է։ Իսկ իմ մտքովն էլ չի անցնում, թե կարող եմ ձեզ համոզել, որ կոմունիստական հասարակարգը ավելի լավ է։ Ըստ երևույթին այստեղ մենք կմնանք յուրաքանչյուրս մեր կարծիքին, բայց դա մեզ չպետք է խանգարի բարեկամաբար ապրելու, լինելու լավ հարևաններ, հոգ տանելու մեր երկրների հարաբերությունները բարելավելու մասին»։ Մենք հպարտ ենք մեր սիստեմով, մեր ժողովրդով և մեր նվաճումներով—այս միտքը որպես լեյտմոտիվ ընթերցողը հասկանում ու զգում է Ն. Ս. Խրուշչովի բոլոր ելույթներում։ Եթե ՄԱԿ-ում ԱՄՆ-ի մշտական ներկայացուցիչ Հենրի Լոջը կամ կապիտալիզմի մյուս ջատագովները փորձում են մեզ համոզել կապիտալիզմի գերազանցության մեջ, ապա դա ապարդյուն աշխատանք է։ Մենք դրանց միայն կարող ենք պատասխանել։ «Ձեզ դուր է գալիս կապիտալիզմը, դե ի՞նչ կա որ, տերն ընդ ձեզ, ապրեցեք կապիտալիզմի պայմաններում, շարունակեցեք գնալ հին նժույգի վրա։ Իսկ մենք կընթանանք նոր, ջահել, սոցիալիստական նժույգի վրա և մեզ համար ավելի հեշտ կլինի հասնել ու անցնել ձեզնից»։

Իր մի շարք ելույթներում Ն. Ս. Խրուշչովն ընդգծում է սովետա-ամերիկյան առևտրական հարաբերությունների զարգացման նշանակությունը։ Նրա արտահայտությամբ «առևտուրը նման է բարոմետրի. նա ցույց է տալիս, թե քաղաքականությունը ինչ ուղղությամբ է զարգանում՝ արդյոք ամպերը խտանալու են ինչպես ամպրոպից առաջ, թե՞ պարզ եղանակ է լինելու։ Մենք անկեղծորեն ուզում ենք, որ բարոմետրը միշտ ցույց տա «պարզ», իսկ դրա համար, մեր խոր կարծիքով, անհրաժեշտ է ըստ ամենայնի զարգացնել առևտուրը մեր երկրների միջև»։

Ամերիկյան գործարար շրջանների ներկայացուցիչները, խոշոր կապիտալիստները, ֆերմերները մեծ հետաքրքրություն ցուցաբերեցին այդ ելույթների նկատմամբ։ Սովետա-ամերիկյան առևտրի բնագավառում գոյություն ունեցող արհեստական այն արգելքները, որոնք ծնունդ են «սառը պատերազմի» և որոնցից համառորեն չեն հրաժարվում ամերիկյան պաշտոնական շրջանները, ավելի ու ավելի անիմաստ են դառնում և դժգոհություն առաջացնում ամերիկյան շատ գործարարների մոտ։ Այժմ Սովետական Միությունն առևտրական լայն կապեր ունի աշխարհի շատ երկրների հետ։ Ասիայի, Աֆրիկայի և Եվրոպայի մի շարք երկրների հետ այդ կապերը հաստատվել են ավելի ուշ, քան ԱՄՆ-ի հետ, բայց այժմ առևտուրն այդ երկրների հետ ավելի մեծ է, քան ԱՄՆ-ի հետ։ Տարեցտարի ընդլայնվում է առևտուրը, մի կողմից, Սովետական Միության և, մյուս կողմից, ԱՄՆ-ի գլխավոր դաշնակիցների՝ Անգլիայի ու Ֆրանսիայի միջև։ ԱՄՆ-ը՝ կապիտալիստական բիզնեսի ամենամեծ երկիրը, այդ ասպարեզում անհասկանալի բացառություն է կազմում։ Կարդալով գրքի նյութերը սովետա-ամերիկյան առևտրական հարաբերությունների մասին, ընթերցողը համոզվում է, որ վաղ թե ուշ առողջ բանականությունը կհաղթանակի։ Դա կլինի այն ժամանակ, երբ կփշրվեն

սառը պատերազմի վերջին սառույցները, երբ վերջնականապես կհաղթանակի խաղաղ գոյակցության մեծ սկզբունքը։

Անցել է մոտ երկու ամիս այն օրվանից, երբ Քեմպ-Դևիդի բանակցություններից հետո հրապարակվեց սովետա-ամերիկյան կոմյունիկեն։ Սակայն Քեմպ-Դևիդի ոգին արդեն զգալի է ամենուրեք։ Սան-Ֆրանցիսկոյից ստացված մի նամակում, որը հրապարակված է սովետական մամուլում, ասվում է. «Այժմ, երբ Ն. Ս. Խրուշչովի ուղևորությունը Միացյալ Նահանգներում ավարտված է, մեր ժողովուրդն ասում է. «Ամերիկան այլևս երբեք չի լինի առաջվանը»։ Ամերիկյան առաջադեմ գրող Մայկլ Գոլդի արտահայտությամբ Ն. Ս. Խրուշչովի այցելությունը Ամերիկայի Միացյալ Նահանգներ հանդիսացավ «պատմության այն հազվագյուտ պահերից մեկը, երբ բոլորը զգում են, թե հնարավոր է, որ ծնվել է մի նոր աշխարհ, և հույսերը, ինչպես ծածանվող վառ դրոշներ սլանում են բարձր, բոլոր ժողովուրդների վրա»։

Բուրժուական տրադիցիոն դիվանագիտությունը ղեկավարվում է այն սկզբունքով, որ իսկական դիվանագետը պետք է կարողանա թաքցնել իր մտքերը, ցույց տա այն, ինչ իրականում չկա և թաքցնի այն, ինչ իրականում կա։ Ֆրանսիական դիվանագետ Թալեյրանին են պատկանում այն խոսքերը, որ աստված մեզ լեզու է տվել, որպեսզի կարողանանք թաքցնել մեր մտքերը։ Տրադիցիոն բուրժուական դիվանագիտությունը հակված է տեսնելու յուրաքանչյուր արտաքին-քաղաքական քայլի մեջ կեղծիք, շահ կամ գործարք։ Այդպիսին են բուրժուական արտաքին քաղաքականությունն ու դիվանագիտությունը։ Այդպիսին չեն սակայն սովետական արտաքին քաղաքականությունն ու դիվանագիտությունը։ Ամերիկյան հասարակայնության ամենալայն խավերը, որոնց ամերիկյան մամուլը բնավ երբեք չէր տվել Սովետական Միության մասին ճշմարտությունը պատմելու մեջ, ապշած էին այն անկեղծությունից, այն բյուրեղային պարզությունից ու ճշմարտությունից, որոնցով տոգորված էին սովետական պրեմիերի ելույթները և որոնցով, ամերիկացիների իսկ արտահայտությամբ, նա նվաճում էր Ամերիկան։

Թերթում ենք գրքի էջերը ու մեր աչքի առջև, ինչպես այդ իրադարձության նվիրված ֆիլմից, պարզ ու հստակ պատկերացնում ենք խաղաղության մեծ միսիայի մանրամասնությունները։ Ահա ժողովրդով լեցուն Նյու-Յորքի ու Վաշինգտոնի փողոցները։ Ահա Ն. Ս. Խրուշչովի ջերմ զրույցն ամերիկյան բանվորների ու ֆերմերների հետ, ահա ամերիկյան ազգային մամուլի ակումբը, ուր ներկայացված են ԱՄՆ-ի և աշխարհի գրեթե բոլոր ուղղությունների թերթերի ու ամսագրերի թղթակիցները։ Նորից ու նորից մտածում ես այն մասին, որ Սովետական կառավարության ղեկավարը այցելեց մի երկիր, որը համաշխարհային կապիտալիզմի միջնաբերդը լինելուց բացի աշխարհում կոմունիզմի դեմ ամենանախապաշարված երկիրն է։ Նա գտնվում էր մի երկրում, որի շատ պետական ու քաղաքական գործիչներ, առատորեն վարձատրվող ժուռնալիստներ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից մինչև մեր օրերը գիտակցաբար խեղաթյուրում են սովետական իրականությունը, ապրելակերպը, սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականությունը։ Եվ, չնայած դրան, ոչ ոք ի վիճակի չէր խանգարելու (թեև այդ ուղղությամբ շատ ճիգեր գործադրվեցին), որ սովետական արտաքին քաղաքականության մեծ սկզբունքները, հաղթահարելով բոլոր արգելքները, հասնեին ամերիկացու սրտին, գերեին նրան իրենց պարզությամբ ու հստակու-



թյամբ, իրենց մեծ հումանիզմով։ Եվ դրա գաղտնիքը պետք է փնտրել ոչ միայն այն իրողության մեջ, որ Ն. Ս. Խրուշչովը հանդես էր գալիս որպես աշխարհում առաջին սոցիալիստական պետության ներկայացուցիչ, այլ նրա պետական իմաստնության մեջ, նրա անսահման եռանդի, կորովի մեջ, նրա խոր սկզբունքայնության, կոմունիզմի վերջնական հաղթանակի նկատմամբ նրա անսահման հավատի ու համոզվածության մեջ։ Անգլիական «Օբսերվեր» թերթը գրել է, որ «Խրուշչովի ուղևորության հիմնական արժեքը կայանում է ոչ թե այն բանում, որ Խրուշչովը, ինչպես այդ կարծում էին շատերը, հայտնագործել է Ամերիկան, այլ նրանում, որ Ամերիկան հայտնագործել է Սովետական Միությունը»։ Միջազգային մամուլը նշում է, որ Ն. Ս. Խրուշչովի ԱՄՆ կատարած ուղևորությունը ոչ միայն նոր աստիճանի բարձրացրեց Սովետական Միության միջազգային հեղինակությունը, այլև միջազգային հասարակության ամենատարբեր խավերին մի անգամ ևս ցույց տվեց, որ Ն. Ս. Խրուշչովը, արտահայտելով առաջադեմ մարդկության նվիրական իղձերն ու ցանկությունները, աննկուն ու աննահանջ պայքարում է խաղաղության ազնիվ գործի վերջնական հաղթանակի համար։ Հնդկական թերթերից մեկը գրել է. «Խրուշչովն իրականացնում է ճշմարտության և գթության միսիան հօգուտ ամբողջ մարդկության։ Ինչպես ատոմային սառցահատ «Լենին» նավը, որը կճեղքի Հյուսիսային բևեռի սառույցի արգելակները, այդ մարդը իրականացնում է հետազոտական միսիա, որի նպատակն է կտրել անցնել ատելության, նախապաշարման և անտեղյակության արհեստական արգելակները»։

Այդ պատմական այցի գլխավոր արդյունքներից պետք է համարել այն, որ արևմտյան երկրների կառավարող շրջանների շատ ներկայացուցիչներ, այդ թվում և սառը պատերազմի մի շարք ջատագովներ այժմ սկսում են համոզվել, որ ժամանակակից միջազգային կարևոր պրոբլեմների լուծման ուղին դա խաղաղ բանակցությունների, պետական ղեկավարների պարբերական կոնտակտների և հանդիպումների ուղին է։ Այդ այցելությունը ծանր հարված հասցրեց հակասովետական պրոպագանդայի ջատագովներին, որոնց համար Սովետական Միության մասին ստահոդ լուրեր տարածելը, նրա իրականությունը խեղաթյուրելը տասնյակ տարիների պրոֆեսիոնալ գործ է։ Նա ցույց տվեց, որ կապիտալիզմը չունի ու չի կարող ունենալ այն մեծ հումանիստական հասարակական ու քաղաքական իդեալները, որոնց մեջ պետք է փնտրել Սովետական Միության և ամբողջ սոցիալիստական լագերի համաշխարհային պատմական նվաճումների ու հաղթանակների գաղտնիքը։

Կայուն և տևական խաղաղության ճանապարհին վարդեր չեն սփռված։ Այն նվաճելու համար անհրաժեշտ են միասնություն, կազմակերպվածություն, անհրաժեշտ են զգոնություն ու աչալրջություն։ ԱՄՆ-ում ունեցած իր ելույթներում Ն. Ս. Խրուշչովը բազմիցս ընդգծել է, որ հնարավոր չէ միանգամից լուծել միջազգային բոլոր պրոբլեմները։ Սառը պատերազմը միջազգային կյանքում շատ ավերածություններ է կատարել։ Այժմ էլ արևմտյան երկրներում նրա ջատագովները չեն նիրհում։ Նրանք շարունակում են իրենց ինտրիգները, դավերն ու մեքենայությունները։ Նրանք իրենց ձեռքում են պահում արևմտյան երկրների պետական և քաղաքական կյանքի շատ լծակներ։ Այդ նրանք են, որ միջազգային կյանքի հորիզոնը մթագնելու համար մերթ

հրապարակ են հանում, այսպես կոչված, Տիբեթի հարցը, մերթ բոլոր տանիքներից աղմկում են Լաոսում «կոմունիստական վտանգի» մասին:

Ն. Ս. Խրուշչովի Սովետական Միություն վերադառնալուց հետո ամերիկյան որոշ քաղաքական գործիչներ հանդես գալով սառը պատերազմի ասպետների տխուր դերում, իրենց ելույթներում փորձում են ինչ-որ չափով թուլացնել այն հսկայական տպավորությունը, որ ամբողջ աշխարհի հասարակայնության վրա թողել է այդ պատմական միսիան: Դրանց թվին են պատկանում ԱՄՆ-ի նախկին պրեզիդենտ Տրումենը, նախկին պետական քարտուղար Աչեսոնը, ԱՄՆ-ի այժմյան վիցե-պրեզիդենտ Նիքսոնը, Նյու-Յորքի նահանգապետ Նելսոն Ռոքֆելլերը: Ժողովրդական առածն ասում է. որտեղ կովն իր կճղակով, այնտեղ խեցգետինն իր շանչով: Կրկնելով իր անդրօվկիանոսյան տերերի բարբաջանքները, Թուրքիայի պրեմիեր մինիստր Ադնան Մենդերեսը հոկտեմբերի 9-ին Վաշինգտոնում տառացիորեն հայտարարեց. «Ես չեմ հավատում, որ Խրուշչովի այցը ԱՄՆ որևէ շոշափելի ազդեցություն է գործել այն պրոբլեմների վրա, որոնք կանգնած են ազատ աշխարհի առաջ»: Այս բոլորը նշանակում է, որ սառը պատերազմի ասպետների մի զգալի մասը դեռ չի ուզում իջեցնել վահանները և սպիտակ դրոշակ բարձրացնել, նա դեռ մնում է բարիկադների այն կողմում և գնդակոծում է խաղաղության բանակատեղին: Սակայն հազիվ թե կարելի է կասկածել, որ կգա ժամանակը, երբ խաղաղության հարյուր միլիոնավոր կողմնակիցներ նրանց էլ ծունկի կբերեն:

Աշխարհում ծավալվող միջազգային իրադարձությունների ընթացքը ցույց է տալիս, որ արևմտյան երկրների որոշ քաղաքական գործիչներ կարող են իսպառ հեղինակազրկվել իրենց ժողովուրդների աչքում, եթե լրջորեն չվերանայեն տարիներով փայփայած «սառը պատերազմի» կոնցեպցիաները. եթե բավականաչափ արիություն և հաստատակամություն չցուցաբերեն մեր ժամանակի ոգին հասկանալու, խաղաղության և պատերազմի հարցերը այդ ոգով քննարկելու և լուծելու գործում: Պատմական մոմենտն այնքան պատասխանատու է, խաղաղության և պատերազմի հարցերը ժողովուրդների համար այնպիսի կենսական նշանակություն են ստացել, որ կապիտալիստական երկրների քաղաքական ու պետական ղեկավարները չեն կարող սահմանափակվել հին աշխարհի դիվանագիտական նորմաների սերտումով ու դրանց կիրառումով: Այդ հարցերը պահանջում են միանգամայն նոր մոտեցում, ժողովուրդները հրամայաբար պահանջում են դրանց դրական լուծումը:

Միջազգային իրադարձությունները զարմանալի արագությամբ են զարգանում: Համաշխարհային հասարակայնությունը գոհունակությամբ ընդունեց այն լուրը, որ Ն. Ս. Խրուշչովը Ֆրանսիայի պրեզիդենտ Դե Գոլլի հրավերով պետք է այցելի Ֆրանսիա: Այժմ արդեն ոչ ոք չի կասկածում, որ բարձր ոլորտի խորհրդակցությունը տեղի կունենա ամենամոտ ապագայում:

Սովետական Միության խաղաղասիրական արտաքին քաղաքականության հաջողություններին զուգահեռ նոր մեծ նվաճումների հասավ սովետական գիտությունը: Համաշխարհային հասարակայնությունը դեռ քննարկում էր սովետական երկրորդ կոսմիկական հրթիռի գիտական նշանակությունը և նրա հնարավոր ազդեցությունը կոսմոսի նվաճման գործում, երբ հոկտեմբերի 4-ին արձակվեց երրորդ կոսմիկական հրթիռը: Լուսին հասած Սովետական վիմպելը այժմ մենակ չէ: Լուսնի անսահման տարածությունների վրա այժմ կան մեզ այնքան հարազատ աշխարհագրական անուններ, ինչպես՝ Մոսկվա,



Սովետական, Ցիալկովսկի, Լոմոնոսով, Ժոլիո-Կյուրի: Չկա այլևս Լուսնի մեզ համար անհայտ մասի միլիոնավոր տարիների կուսական անդորրը: Նրա լուսանկարը սովետական մարդկանց ստեղծագործական հանճարով իջեցված է մեր հին, մեր հարազատ մոլորակը: Ո՞վ կարող է այժմ կասկածել, որ սովետական մարդն առաջինը ոտք կդնի Լուսնի վրա, որը դարեր շարունակ մարդու համար եղել է անմատչելի, որը հազար ձևով երգել են լոկ բանաստեղծները, կամ որի մասին երազել են գիտաֆանտաստիկական վեպերի հեղինակները:

Մեր անծայրածիր Հայրենիքի գործարաններում ու ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում, գիտական ու ուսումնական հաստատություններում աշխատավորները լայնորեն քննարկեցին Ն. Ս. Խրուշչովի ԱՄՆ կատարած այցի արդյունքները: Ամենուրեք դրանք արժանացան համաժողովրդական հավանության: Սովետական Միության արտաքին քաղաքականության բնորոշ գծերից մեկն էլ հենց նրա խոր ժողովրդայնությունն է: Այն բխում է ժողովրդի հոգուց և արտահայտում է նրա կենսական շահերը, աշխարհի բոլոր ժողովուրդների խաղաղասեր ձգտումները:

Սովետական Միության Գերագույն Սովետի վերջերս տեղի ունեցած սեսիայում ժողովրդի ընտրյալները ջերմորեն հավանություն տվին Ն. Ս. Խրուշչովի ԱՄՆ կատարած այցելության արդյունքներին, բնութագրելով այդ այցելությունը որպես Սովետական Միության խաղաղասիրական արտաքին քաղաքականության մեծագույն հաղթանակներից մեկը:

Սովետական Միության ժողովուրդների հետ միասին Ն. Ս. Խրուշչովի ուղևորության արդյունքները միահամուռ հավանության արժանացան Հայաստանի աշխատավորների կողմից: Հայ ժողովուրդը շատ լավ գիտե խաղաղության գինը: Անցած 39 խաղաղ տարիների ընթացքում նա իր պետական, տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում հասավ այնպիսի բարձունքների, որոնց մասին նա չէր կարող երազել իր բազմադարյան պատմության մեջ:

Ն. Ս. Խրուշչովի այցը ԱՄՆ լայն արձագանք գտավ աշխարհի բոլոր երկրներում ապրող հայերի մեջ: Սփյուռքահայության բոլոր ուղղությունների թերթերը, բացի դաշնակցական մամուլից, գոհունակությամբ ընդունեցին մեր ժամանակի այդ ամենակարևոր միջազգային իրադարձությունը:

«Անդունդի եզրեն խաղաղության եզրին»—այս պատկերավոր խորագրով Բեյրութում հրատարակվող «Զարթոնք» թերթը հրապարակել է հոդվածաշարք, նվիրված Ն. Ս. Խրուշչովի ԱՄՆ կատարած այցին: Ընդգծելով այն աննախընթաց հետաքրքրությունը, որ առաջ բերեց այդ այցելությունը համաշխարհային մամուլում, թերթը գրում է, որ «շուրջ երեք հարյուր թղթակիցներ, մեծ մասամբ ամերիկացի, անոթի գայլերու պես կրնկակոխ հետևեցան Խրուշչովին»: «Քաղաքակիրթ մարդկությունը այժմ այն տպավորության տակ է, որ պատմական օրեր կապրի»,—գրում է Ֆրեզնոյում հրատարակվող «Նոր օր» թերթը: Արտահայտելով Մերձավոր և Միջին Արևելքի հարյուր հազարավոր հայերի խաղաղասիրական ձգտումները, «Մեր նշանաբանն է Հառաջ» թերթը գրում է, որ «Աշխարհի բոլոր խաղաղատենչ մարդիկը, առանց ցեղային կամ գաղափարական խտրության, ի սրտե ողջունեցին վարչապետ Նիկիտա Խրուշչովի այցելությունը, անոր մեջ տեսնելով մեծ նպատակ մը միջազգային լարվածության մեղմացման և համաշխարհային խաղաղության ամրապնդման»:

*Մի շարք թերթեր այն միտքն են արտահայտում, որ եկել է ժամանակը, որպեսզի մարդկության հուզող միջազգային հարցերի նկատմամբ ցուցաբերվի նոր մոտեցում, ժամանակի ոգուն համապատասխան: «Նոր դարք, նոր բարք»—ժողովրդական այս իմաստությունը ավելի քան լավ է հնչում մեր օրերում: Միանգամայն իրավացի է «Լրաբեր» թերթը, երբ գրում է. «Կրնանք հաստատ ըսել, որ Միացյալ Նահանգները և ամբողջ աշխարհը այն չեն, ինչ որ էին սեպտեմբերի 15-են առաջ»: Արտասահմանյան հայ մամուլի շատ օրգաններ Ն. Ս. Խրուշչովի խաղաղության միսիան որակեցին որպես «դարուս դեպքը»:*

*Համաշխարհային այն մեծ հետաքրքրությունը, որ առաջ բերեց Ն. Ս. Խրուշչովի և Էյզենհաուերի հանդիպումը, մի անգամ ևս վկայում է մասսաների աճող ազդեցությունը միջազգային հարաբերությունների զարգացման ընթացքի վրա: Բոլոր երկրների ժողովուրդներն արևմտյան տերությունների կառավարություններից պահանջում են միջազգային անհետաձգելի հարցերի անհապաղ կարգավորում: Նրանք տեսնում են, որ Սովետական Միությունը դիվանագիտական բանակցությունների սեղանին է դրել այդ հրատապ հարցերը և ներկայացրել այդ հարցերի լուծման կոնկրետ ծրագրերը: Ժամանակն այլևս չի սպասում: Հասել է այն մոմենտը, երբ ընդհանուր ու երկիմաստ դեկլարացիաների փոխարեն պետք են կոնկրետ լուծումներ, ռեալիստական մոտեցում ու փոխադարձ ըմբռնողության ձգտում:*

*Երբ ամերիկյան թնդանոթների համազարկերը ողջունում էին Ն. Ս. Խրուշչովի ժամանումը Ամերիկայի Միացյալ Նահանգներ, խաղաղության ծարավի մարդկությունը մեծ հույսերով հետևում էր այդ պատմական իրադարձությանը: Երբ այդ ուղևորության ավարտից հետո Ն. Ս. Խրուշչովի ինքնաթիռը հրաժեշտ տալով Ամերիկային, պոկվեց նրա հողից ու կուրս վերցրեց դեպի Մոսկվա, այդ հույսերն ավելի ամրապնդվեցին: Ժողովուրդների բուռն ցանկությունն է, որ նրանք հուսախաբ չլինեն, որ Քեմպ-Դեյվիդի ոգին ավելի ամրապնդվի ու տիրաբար մտնի միջազգային կյանքի բոլոր բնագավառները:*

*Ն. Ս. Խրուշչովի Ամերիկայի Միացյալ Նահանգներ կատարած ուղևորության նյութերն ամփոփող գիրքը կլինի սովետական մարդկանց և խաղաղության բոլոր կողմնակիցների սեղանի գիրքը, նրանք նորից ու նորից կկարդան այն, որպես Սովետական Միության լենինյան արտաքին քաղաքականության մեծ փաստաթուղթ:*

---

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԱՐԾԻՔԸ ԴԵՄ Է «ՍԱՌԸ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ»

(Նամակ ԱՄՆ-ից)

## *ՀԵՐԲԵՐՏ ԱՊՏԵԿԵՐ*

*Մամուլի հաղորդագրությունների համաձայն, Ֆրանսիայի պրեմիեր-մինիստր Դեբրեն 1959 թ. օգոստոսի 16-ին ասել է. «Պատմությունն արագ է շարժվում, և զարմանալի փոփոխություններ կարող են կատարվել: Ո՞վ կարող էր սրանից ընդամենը վեց տարի առաջ հավատալ, որ Մոսկվայի և Վաշինգտոնի միջև տեղի կունենան պետությունների ղեկավարների խնամքով կազմակերպված փոխայցելությունները»:*

*Ինչո՞վ բացատրել այդպիսի փոփոխությունը (ընդ որում հարկ չկա վեց տարով ետ վերադառնալ, որպեսզի այդ փոփոխությունը համարենք «զարմանալի»): Ո՞րն է դրա նշանակությունը և որքանո՞վ է դա ամուր:*

*Ուոլտեր Լիպմանը («Նյու-Յորք հերալդ տրիբյուն»), որը ըստ երևույթին, առավել խորաթափանց խելքի տեր է նրանց թվում, ովքեր ծառայում են ամերիկյան բուրժուազիային, օգոստոսի 14-ին իր հերթական հոդվածում գրել է. «Դժվար չէ կռահել, թե որն է Էյզենհաուերի և Խրուշչովի փոխադարձ այցելությունների նշանակությունը: Մեր ժամանակի որոշիչ փաստի ընդունումը, խաղաղություն թե պատերազմ դիլեմայի լուծումը կախված է Մոսկվայից և Վաշինգտոնից: Միայն ՍՍՌՄ-ը և ԱՄՆ-ը կարող էին ատոմային պատերազմ մղել, ուստի և միայն նրանք կարող են ընդունել վերջնական որոշում, որի հետևանքը կլինի կամ խաղաղություն, կամ պատերազմ»: Այստեղ կա որոշակի ակնհայտ ճշմարտություն, սակայն դա սոսկ մասնակի պատասխան է, էական շատ բաներ անպատասխան են մնացել: Հիրավի, արդեն ահա մի քանի տարի շարունակ բոլորին էլ պարզ է, որ միայն Սովետական Միությունն ու Միացյալ Նահանգներն են ի վիճակի միջուկային պատերազմ մղել, բայց միայն այժմ են կատարվում փոխադարձ այցելություններ: Անվիճելի է նաև այն, որ ՍՍՌՄ կառավարությունը տարիներ շարունակ առաջարկում էր և պնդում այդպիսի այցելություններ իրագործել և, այնուամենայնիվ, միայն այժմ տեղի ունեցավ հանդիպումը: Եվ, վերջապես, այդ փոխադարձ այցելությունների մեջ կա ևս մի ասպեկտ, որպիսին Լիպմանը գերադասել է շրջանցել իր բավականին աշխույժ մեկնաբանությունների մեջ: Հենց այստեղ էլ մենք մոտենում ենք այն «զարմանալի փոփոխությունների» էությանը, որոնց մասին խոսել է ֆրանսիական պրեմիերը. և միայն հասկանալով դրանք՝ ըմբռնելով իրադարձությունների տենդենցներն ու ընթացքը, միջազգային հարաբերությունների դինամիկան,— մենք կարող ենք գնահա-*

տել աշխարհի երկու մեծագույն տերությունների ղեկավարների միջև կատարվող փոխադարձ այցելությունների ամբողջ նշանակությունը։

***

Բանի էությունն այն է, որ «սառը պատերազմի» քաղաքականությունը սնանկացել է։ «Զսպման» և «ազատագրման» քաղաքականությունը, «ուժի», «կենտրոնացած պատասխան հարվածի» և «պատերազմի եզրին հավասարակշռությունը պահպանելու» քաղաքականությունը, այդ ամենը սպասվող էֆեկտ չտվեց, իսկ այնպիսի գործնական ժողովրդի համար, ինչպիսին ամերիկացիներն են, այդ փաստը վճռական է։ «Սառը պատերազմի» իմպերիալիստական քաղաքականությունը հիմնվում էր այն ենթադրության վրա, թե կապիտալիզմի ուժերը վճռականապես գերազանցում են ինչպես տնտեսական, այնպես էլ ռազմական տեսակետից։ Այդ ենթադրությունը հենց սկզբից սխալ էր։ Դրա սխալականությունը տարեցտարի ավելի ու ավելի էր ակներև դառնում, մինչև, վերջապես, մեր օրերում մարդկանց հսկայական մեծամասնությանը, այդ թվում իմպերիալիստական երկրներում ապրող մարդկանց, պարզ դարձավ, որ այդ ենթադրությունն իրականությանը չի համապատասխանում։

Վերջին վեց տարիների իրադարձությունները (մենք նկատի կունենանք այն ժամանակամիջոցը, ո՛ր նշել է ֆրանսիական պրեմիերը) ցույց տվին, որ «սառը պատերազմի» քաղաքականությունը պարտություն պարտության ետևից է կրում։ Կոնտրռևոլյուցիան տապալվեց, ռազմական ինտերվենցիան տապալվեց, տնտեսական բլոկադան և դիսկրիմինացիան տապալվեցին, «չճանաչման» քաղաքականությունը նույնպես տապալվեց։ Իսկ այդ միևնույն ժամանակ աշխարհի սոցիալիստական սեկտորի հզորությունը կյանքի բոլոր՝ տնտեսական, սոցիալական, քաղաքական, ռազմական, կուլտուրական բնագավառներում, աճում էր հիրավի անսովոր կերպով, մասնավորապես, զարգացման մեջ Չինաստանի կատարած «մեծ թռիչքի» շնորհիվ, իսկ սովետական յոթնամյա պլանը, նրա հեռանկարների հափշտակիչ ոգով, նշանավորեց սոցիալիստական սեկտորի մուտքը իր զարգացման վճռական էտապը։

Միաժամանակ յոթմղոնանոց քայլերով էր ընթանում ազգային-ազատագրական շարժումը գաղութային և կախյալ երկրներում, որ նշանավորվեց բոլորովին վերջերս Իրաքում և Կուբայում տեղի ունեցած ռևոլյուցիաներով։ Առաջին ռևոլյուցիան հաղթանակեց, չնայած անգլո-ամերիկյան ինտերվենցիային Մերձավոր Արևելքում, իսկ կուբայական ռևոլյուցիան տեղի ունեցավ ամերիկյան իմպերիալիզմի հենց կողքին։ Այդ ռևոլյուցիան պարզապես ցնցեց ամերիկյան բուրժուազիային, որովհետև այն կատարվեց ԱՄՆ-ի սահմանից ընդամենը իննսուն մղոն հեռու գտնվող մի երկրում, որի արդյունաբերությունը, ֆինանսները, կոմունալ տնտեսությունը և շուկաները գտնվում էին ամերիկյան իմպերիալիստների վերահսկողության տակ, իսկ զինված ուժերը մարզվել և հանդերձավորվել էին Միացյալ Նահանգների կողմից. Կուբայի տերիտորիայում տեղադրված էին ամերիկյան ռազմա-ծովային և ռազմա-օդային բազաներ, իսկ այդ երկիրը կառավարող սադիստ դիկտատորը լիովին օգտվում էր ամերիկյան դիվանագիտության աջակցությունից։ Եվ դա տեղի ունեցավ Լատինական Ամերիկայում, որը համարվում է ԱՄՆ-ի անձեռնմխելի «ազդեցության ոլորտը»։



Այնուհետև։ Չնայած կառավարող դասակարգերի հսկայական չափի հասնող, երբեմն աներևակայելի սուր պրոպագանդային, մնում է այն փաստը, որ ամերիկյան ժողովուրդն ամբողջությամբ վերցրած ամենևին էլ ատելություն չի տածում դեպի մյուս ժողովուրդները և ոչ մի ցանկություն չունի նրանց պատերազմ պարտադրել։ Ընդհակառակը, ամերիկացիներն ամբողջ հոգով ցանկանում են, որպեսզի ամենուրեք խաղաղություն լինի։ Մի շարք պատճառների շնորհիվ, որոնց մասին մասամբ խոսվեց վերը, Միացյալ Նահանգների պատմության մեջ կառավարության արտաքին քաղաքականության նկատմամբ հասարակայնության օպոզիցիան երբեք այնքան տարածված և այնքան ուժեղ չի եղել, որքան վերջին տասներկու-տասնվեց ամիսների ընթացքում։

Երկու հիմնական պարտիաների լիդերներն էլ գիտեն այդ մասին։ Ահա թե ինչու Ստիվենսոնը, Հարրիմանը, Հեմֆրին և Նիքսոնը 1960 թվականի պրեզիդենտական ընտրություններին նախապատրաստվել սկսեցին Մոսկվա մեկնելով։ Առաջիկա ընտրությունները, անտարակույս, արագացնում են ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության կուրսի փոփոխությունը, բայց դրանք սոսկ կատալիզատոր են, բայց ոչ պատճառ։ Պատճառը, ինչպես ես արդեն ասացի, «սառը պատերազմի» քաղաքականության սնանկությունն է, այնպիսի մի կատարյալ սնանկություն, որն այլևս անհնարին է թաքցնել։ Այնտեղից էլ այն շարժումը հասարակական կարծիքում, որն իր հերթին նպաստեց քաղաքականության սնանկության հայտաբերմանը և մոտեցրեց այն։ Հասարակայնության տրամադրության մեջ կատարված այդպիսի փոփոխությունը, իսկ դա խիստ զգալի է, վայրկենական ռեակցիա առաջացրեց քաղաքական շրջաններում, առավել ևս, որ նրանք այժմ գտնվում են հերթական ընտրությունների շեմքին։

***

Պաշտոնական արտաքին քաղաքականության նկատմամբ դժգոհությունը դրսևորում են բնակչության բոլոր խավերը և ամենաբազմապիսի ձևերով։ Այդ քաղաքականությունը ավելի կամ պակաս ուշադրությամբ և ուժով քննադատության ենթարկվեց Ուոլտեր Լիպմանի, Ջեյմս Ուորբերգի, Ուիլյամ Ա. Ուիլյամսի, Ռայտ Միլլսի, Լյուիս Մամֆորդի, Նորման Թոմասի, Ռեյնոլդ Նայբուրի, Ս. Լ. Սուլցբերգերի և շատ ուրիշների վերջերս լույս տեսած գրքերում։ Կատարելապես պատկառելի հրատարակությունների էջերում գնալով ավելի հաճախակի են դառնում ամենաավերիչ գրոհները Պենտագոնի և պետական դեպարտամենտի քաղաքականության վրա։ Ահա մի օրինակ։ Վերջերս (1959 թ. օգոստոսի 5-ին) «Կրիսչեն սենչուրին», որը բողոքական առաջատար շաբաթաթերթ է, հրապարակել է Ստյուարտ Միչեմի հոդվածը, որտեղ նա պնդում է, որ ԱՄՆ-ի արտաքին քաղաքականությունը «մեզ ավելի ու ավելի մեծ վտանգի մեջ է գցում»...

«ՆԱՏՕ-ն տառապում է սպառազինման մրցավազքով,— գրում է Միչեմը, —դրա դեմ մեզ հայտնի միակ բուժադեղը սպառազինման էլ ավելի մեծ մրցավազքն է»։ Հեղինակը վերջիվերջո հանգում է հետևյալ վճռական եզրակացությանը՝ «Պարզ է, որ մենք չպետք է գլուխ ջարդելով առաջ նետվենք ճանապարհից շեղված մեր ղեկավարների հետևից։ Նրանք մեզ համոզում են, թե

անհրաժեշտ է շարունակել միջուկային ռումբերի փորձարկումները, արագաց-
նել հրթիռային սպառազինման ծրագրի կատարումը, կատարելագործել
«սահմանափակ պատերազմ» մղելու մեր ընդունակությունը և ամուր կանգնել
Լիբանանի, Կուէմոյ կղզու և Բեռլինի հարցերում։ Բայց նրանց այդ խոր-
հուրդներն էլ հենց մեզ դեպի ավելի մեծ վտանգ են տանում։ Ինչպիսի՛
անպատասխանատվություն»։

Հավանություն չտվող ձայներն այնքան ուժեղ էին, որ անցյալ ամռան
սկզբին արտաքին գործերի սենատային հանձնաժողովը դիմեց պետական դե-
պարտամենտի նախկին հիսուն չինովնիկներին, խնդրելով գրավոր հաղոր-
դել իրենց կարծիքը պաշտոնական արտաքին քաղաքականության մասին։
Քսանհինգ մարդ ուղարկեցին իրենց պատասխանները, բոլորին էլ խոստացել
էին գաղտնի պահել նրանց ազգանունները։ Հանձնաժողովն այդ պատաս-
խաններն իսկույն ևեթ հրատարակեց 81 էջանոց գրքույկով։ Հիշյալ պա-
տասխանները շատ խիստ քննադատության են ենթարկում պետական
դեպարտամենտի՝ ինչպես նրա գործունեության մեթոդները, նմանապես և
նրա այն գիծը, որպիսին նա անց է կացրել վերջին մի քանի տարիների ըն-
թացքում։ Դատապարտվում է հակակոմունիզմի քաղաքականությունը, որը չի
կարող էֆեկտիվ կերպով ծառայել Ամերիկայի ազգային շահերին։ Դիվանա-
գետներից մեկը մատնանշում է, որ «մանր ռեակցիոն կառավարողները»—
նա հիշատակում է Չան Կայ-շիին—«վճռական ազդեցություն են թողնում
ամերիկյան քաղաքականության ձևավորման վրա»։ Նա ափսոսում է, որ
Միացյալ Նահանգները «հանդես են գալիս Լյուդովիկոս XIV-ի դերում, որն
իրեն ներկայացնելով որպես ազատության ապավեն, ստեղծեց ամենառեակ-
ցիոն ռեժիմ»։ Մի ուրիշը գտնում է, որ «մենք չափից ավելի հույսեր ենք դնում
ռազմական բնույթի ոչ-էֆեկտիվ, տկար, «թղթային» դաշինքների վրա»,
դեռ ավելին՝ որ «ռազմական քաղաքականությունը, որը որպես բաղկացուցիչ
մաս ներառնում է միջուկային սպառազինությունը, մեզ տանում է դեպի
պարտություն, որովհետև նա անխուսափելի է դարձնում Եվրոպայի կործա-
նումը։ Երրորդը պնդում է, որ «նույնիսկ ՆԱՏՕ-ն... այդ զուտ ռազմական
դաշինքը, բացառիկ կերպով թույլ է, պահվում է միայն սարսափի հիման
վրա և ենթակա է ամեն տեսակ տատանումների՝ նայած նրա ղեկավարների
տրամադրություններին»։

Սակայն ամենակարևորը, որ կապված է հիշյալ գրքույկի հրատարակու-
թյան հետ, ոչ թե այն մանրամասնություններն ու կոնկրետ քննադատու-
թյունն են, որ պարունակում է այդ գրքույկը, թեև դրանք ունեն իրենց նշա-
նակությունը, այլ այն փաստը, որ արտաքին գործերի սենատային հանձնա-
ժողովն անհրաժեշտ է համարել այդպիսի հարցում կատարել և այնուհետև,
հենց տվյալ պահին գտել է օգտակար այդ հարցման արդյունքների հրապա-
րակումը, որոնք ցուցադրում են հասարակայնության աճող դժգոհությունը
պաշտոնական արտաքին քաղաքականությունից և «սառը պատերազմից»։

***

Ինչպես մենք տեսանք, պետական դեպարտամենտի նախկին չինովնիկ-
ներից մեկը նշել է, որ դաշինքների այն սիստեմը, որ ստեղծել է ԱՄՆ-ի կա-
ռավարությունը, հենց սկզբից եղել է արատավոր, որովհետև դրանք հիմնը-



վում են «թղթային» պարտավորությունների վրա, կրում են զուտ ռազմական
բնույթ և հենվում են գլխավորապես սարսափի վրա՝ անկախ նրա մասնակից-
ների կազմից։ Նախկին դիվանագետն այստեղ անդրադարձել է, թեև կողմնա-
կիորեն, այն հանրահայտ փաստին, որ Միացյալ Նահանգների «դաշնակից-
ների մեջ գնալով ուժեղանում է պառակտումը։ Աճում և ավելի ինտենսիվ է
դառնում կոնկուրենցիան Անգլիայի և Ֆրանսիայի միջև, Անգլիայի և
Արևմտյան Գերմանիայի միջև։ Ալժիրի պատերազմը հյուծում է Ֆրանսիային
և ԱՄՆ-ի համար ստեղծում է պրոպագանդիստական և դիվանագիտական
լուրջ պրոբլեմներ։ Արևմտյան Գերմանիայի վերազինման հետևանքով առա-
ջացած կասկածանքը հատկապես սուր է զգացվում Ֆրանսիայում և Անգլիա-
յում, բայց դա չէր կարող չանդրադառնալ ամերիկյան հասարակական կար-
ծիքի վրա։ Գերմանական հարցի հետ կապված քաղաքական բարդություններ
նույնպես ավելի սուր են զգացվում Անգլիայում, քան Միացյալ Նահանգնե-
րում։ Այդ ամենին պետք է ավելացնել, որ շարունակվում է ամերիկյան ներ-
թափանցումը Մերձավոր և Միջին Արևելքի, Հարավային Ասիայի և Աֆրիկա-
յի շուկաները, Անգլիայի և Ֆրանսիայի տրադիցիոն «ազդեցության ոլորտ-
ները»։

Դաշնակիցների միջև եղած տարաձայնությունները արտացոլում են
ամերիկյան արտաքին քաղաքականության թուլությունը։ Անգլիայի և Միաց-
յալ Նահանգների միջև տարաձայնությունները ժամանակ առ ժամանակ
դրսևորվել են բավականին ծիծաղելի ձևով։ Օրինակ, այն ժամանակ, երբ ար-
տաքին գործերի մինիստրների խորհրդակցության աշխատանքի ընթացքում
ընդմիջմանը Հերտերը և Լլոյդը Ժնևից վերադարձան տուն, որպեսզի զեկուցեն
առաջին արդյունքների մասին, պ-րն Հերտերն ամերիկացիներին զեկուցեց, թե
սովետական պատվիրակությունը «անկեղծ բանակցություններ վարելու մեջ
շահագրգռվածության նշաններ չի ցուցաբերում»։ Իսկ պ-րն Լլոյդը հայտարա-
րել է, թե «զգալի հաջողություններ են ձեռք բերվել սովետական պատվիրա-
կության հետ ունեցած բանակցություններում»։ Պ-րն Հերտերն ասաց, թե սո-
վետական պատվիրակությունը բացահայտորեն մտադիր է Արևմտյան Բեռլինը
դնել «սարկական վիճակի» մեջ։ Իսկ պ-րն Լլոյդը նշեց, թե սովետական ներ-
կայացուցիչները ցանկանում են, «որ Արևմտյան Բեռլինի բնակիչներին հնա-
րավորություն տրվի ազատ կերպով ընտրելու իրենց ապրելակերպը»։

Այդպես եղավ նաև Լաոսում կատարված պրովոկացիայի ժամանակ, մի
պրովոկացիա, որը սպիտակ թելով էր կարված. երբ ամերիկյան բուրժուական
մամուլը խեղաթյուրում էր փաստերը, անգլիական մամուլը բացահայտ
մարտահրավեր էր նետում նրան։ «Մանչեստեր գարդիան» թերթը, օրինակ,
1959 թ. օգոստոսի 11-ին դիտավորյալ կերպով ընդարձակ քաղվածքներ
հրապարակեց Լաոսում տեղի ունեցած իրադարձությունների հարցի վերա-
բերյալ ամերիկյան դեսպանության հայտարարությունից, այդպիսով մանրա-
մասն ցուցադրելով, թե այդ հայտարարությունը երևակայական հերյուրանք-
ների մի ինչպիսի կույտ է ներկայացնում իրենից։ Լոնդոնի «Թայմս»-ը (12
օգոստոսի 1959 թ.) հաղորդել է «կոմունիստական ագրեսիայի» որևէ նշանի
բացակայության մասին և միաժամանակ ուշադրություն է դարձրել ԱՄՆ-ի
մոտ ծառայության մեջ գտնվող լաոսյան կառավարության ռեակցիոն քաղա-
քականության՝ որպես տեղական բնակչության դժգոհության իսկական պատ-
ճառի վրա։

***

Կա մի առանձնահատուկ հանգամանք ևս, որն ազդում է ամերիկացիների հասարակական կարծիքի փոխվելու վրա։ Դա միանգամայն դրամատիկական բնույթ ունի և մեծագույն կարևորություն է ստանում Խրուշչովի և Էյզենհաուերի փոխադարձ այցելությունների կապակցությամբ։ Այն ժամանակից ի վեր, երբ արձակվեց առաջին արբանյակը, երկրում սկսեց տարածվել նոր, այսպես ասած՝ «երկրորդային հայացք» սովետական իրականության նկատմամբ։ Փաստորեն արբանյակը ՍՍՌՄ-ի վերաբերմամբ ամերիկյան հասարակական կարծիքի մեջ այնպիսի հեղաշրջման ազդակ հանդիսացավ, որպիսին կարելի է համեմատել միայն այն հեղաշրջման հետ, որը տեղի ունեցավ 1941 թվականին Հիտլերի կողմից Սովետական Միության վրա հարձակվելուց մի քանի ամիս անց, երբ կապիտալիստական աշխարհի ժողովուրդները, որոնք հավատացած էին, թե Հիտլերը վեց շաբաթում վերջ կտա ՍՍՌՄ-ին, տեսան, և այդ մասին արժե հիշել,—թե ինչպես այդ փորձը ձախողվեց։

Սույն տողերը գրողը 1958 թ. վերջին հրատարակված իր գրքում («Արբանյակից հետո։ Ամերիկացիների տեսակետը Սովետական Միության մասին») ընդհանրացրել է շատ փաստեր, որոնք վկայում են այդպիսի տեղաշարժի մասին։ Գիրքը լույս տեսնելուց հետո այնտեղ նկարագրված տենդենցն ավելի է ուժեղացել։ Այդ տենդենցն այն աստիճանի է հասել, որ դա հարկադրված էր նշել նույնիսկ մոլեռանդ հակասովետական «Նյու լիդեր» ժուռնալը։ Այդ ժուռնալում հրապարակված է (31 օգոստոսի 1959 թ.) Ռ. Փայփսի (Հորվարդի համալսարանին կից Ռուսաստանի ուսումնասիրման գծով գիտահետազոտական կենտրոնից) «Ամերիկայի նոր պատկերացումը Ռուսաստանի մասին» հոդվածը, «Տեխնիկական պրոգրեսի նկատմամբ ամերիկացիների խիստ մեծ ուշադրությունը պրոսովետական խանդավառության արտոցոլումն է» ենթավերնագրով։ Պ-րն Փայփսը գրում է. «Մենք համակված ենք պրոսովետական համակրության ալիքով այնպիսի ինտենսիվությամբ և խորությամբ, որպիսիք մեր պատմությունը, հավանաբար, չգիտե»։ Փայփսի դիտարկումը ճիշտ է, և այն անտարակույս, ամենակարևորն է նրա արտահայտություններում։ Եվ հենց հասարակական կարծիքը, որը տվյալ դեպքում արտացոլում է ամերիկացիների հիմնական ձգտումը՝ պատերազմից խուսափելու նրանց ցանկությունը, իր նշանավոր դերը խաղաց այն բանում, որ պ-րն Էյզենհաուերը համաձայնեց հանդիպել պրեմիեր Խրուշչովի հետ։

Էյզենհաուերը դարձավ այն շրջանների հայացքների արտահայտիչը, որոնք հասարակայնության և կյանքի բոլոր բնագավառներում Սովետական Միության հաջողությունների մասին «համառ փաստերի» ճնշման տակ հասկացան արտաքին քաղաքականության պրոբլեմների նկատմամբ իրենց վերաբերմունքը վերանայելու անհրաժեշտությունը։ Այն ծուռումուռ ճանապարհ էր, հակասություններով լի որոնումներ, բայց դրանք նոր հնարավորություններ բացեցին ՍՍՌՄ-ի հետ ունեցած փոխհարաբերությունների մեջ։ Չէ՞ որ փաստ է այն, որ ԱՄՆ-ի կառավարող դասակարգը, հարկադրված լինելով հաշվելու փոխադարձ այցելությունների անխուսափելիության հետ, սկզբում փորձում էր այդ զիջումը պահել տակտիկական մակարդակի վրա։ Այդ գիծն արտացոլված է պրեզիդենտ Էյզենհաուերի հետևյալ խոսքերում, որ ասել է նա 1959 թ. սեպտեմբերի 11-ին այն պատճառները «բացատրելիս», որոնք



դրդել են նրան հրավիրելու սովետական լիդերին. «սկզբունքային հարցերում տակտիկայի և մեթոդների ճկունության հետ զուգակցվող հաստատակամությունը այն բանալին է, որ բանակցություններում ամեն մի պրոգրեսի նկատմամբ հույս է ներշնչում»։ Սակայն այցելության ընթացքում Խրուշչովի ջերմ հանդիպումները բնակչության հետ, նրա ելույթներն ու զրույցները, վերջապես, բուն իսկ բանակցությունները պրեզիդենտի հետ, ստեղծեցին օպտիմիզմի մթնոլորտ։ Ճիշտ է, դեռևս շատ փաստեր կան, որոնք վկայում են «սառը պատերազմի» լիկվիդացման ճանապարհին զանազան խոչընդոտներ հարուցելու կանխամտածված փորձերի մասին։ Եվ դա դժվար չէ բացատրել։

ԱՄՆ-ի իմպերիալիստական էկոնոմիկան շատ մեծ չափով է կապված սպառազինության արտադրության հետ։ Ահա թե ինչու փոխադարձ այցելությունների վերաբերյալ հաղորդագրությունը երկրում առաջ բերեց, ինչպես այստեղ ասում են՝ «վախ խաղաղությունից» և «Նյու-Յորքի բորսայում հացրեց բաժնետոմսերի կուրսի ամենաուժեղ անկումը վերջին 4 տարիների ընթացքում։ «Կիպլինջերս Նյուսլետտեր» առաջատար ինֆորմացիոն բանբերը, որը հատկապես հրատարակվում է որպես ղեկավար ձեռնարկ մեծ բիզնեսի տեր մարդկանց համար, իր 1959 թ. հուլիսյան համարում նշում էր. «Պաշտպանության գծով միջոցառումները այնքան վիթխարի են և այնքան են աճել էկոնոմիկայում, որ այն դառնում է ինչ որ տարերայնորեն գործող օրենք։ Հասարակայնության և մանր ձեռնարկատերերի միջամտության շնորհիվ վերջերս բացահայտվեց այսպիսի մի փաստ. ընթացիկ տարում սպառազինման վրա Պենտագոնի ծախսած միլիարդների 85 տոկոսը իրացվում է այսպես կոչված, «ըստ պայմանավորվածության պայմանագրերով», այսինքն՝ այնպիսի պայմանագրերով, որպիսիք կառավարությունը որոշակի ֆիրմաների հետ կնքում է հնարավոր մրցակիցներից գաղտնի։ Դրա հետևանքով, ինչպես պարզված է, կառավարությունը պատվերների համար հաճախ 5 կամ 6 անգամ ավելի է վճարում, քան կվճարեր մրցակիցների առկայության դեպքում։ Բայց որքան թանկ է, այնքան շահեկան է մոնոպոլիաների համար, որովհետև կառավարությունը միայն նրանց հետ է «ըստ պայմանավորվածության» պայմանագրեր կնքում։ Կոնգրեսի նյութերի հիման վրա դատելով, նույնիսկ Պենտագոնը ընդունել է, որ եթե պայմանագրեր կնքելիս թույլատրվի կոնկուրենցիա, կառավարությունը տարեկան մոտ 7 միլիարդ դոլար տնտեսում կունենա։

Այդպիսիք են այն հանգամանքները—ավելացրած վերը շոշափված քաղաքական ու դիվանագիտական նկատառումները, որոնք բացատրում են, թե ինչու այդպես երկար ժամանակ չէր հաջողվում պրեմիեր Խրուշչովին հրավիրել Միացյալ Նահանգներ։ Այդ ամենի լույսի տակ առավել ևս մեծ նշանակություն են ստանում ԱՄՆ-ի հասարակական կարծիքի մեջ և ազդեցիկ շրջաններում վերջին ժամանակներս կատարված խոշոր տեղաշարժերը։ Եվ շատ ուշագրավ է, որ չնայած պրոպագանդիստական ապարատի առավել ռեակցիոն մասի բոլոր ջանքերին, այդքան շատ ամերիկացիներ, հատկապես առաջին օրերին, փողոց դուրս եկան և բարեկամաբար ողջունեցին սովետական ժողովրդի պատվիրակին, որն այնքան առատորեն, այնքան ջերմությամբ ու անկեղծությամբ արտահայտում էր իր համակրանքը Ամերիկայի հասարակ մարդկանց նկատմամբ։

Թշնամական և չարամիտ առանձին հայտարարություններ արվեցին

որոշ քաղաքական գործիչների կողմից, իսկ Նիքսոնը նորից վերադարձավ իր
սովորական զբաղմունքին՝ նորից ձեռնամուխ եղավ գծուծ և կծու հարձակում-
ների։ Սակայն, բարեբախտաբար, ազդեցիկ հասարակական շրջաններում
կարևոր բացառություններ եղան։ Այսպես, ավելի քան 50 ականավոր ամերի-
կացիներ, նրանց մեջ 2 արհմիութենական գործիչ, Հարավային նահանգների
նեգր բնակչության խիզախ ղեկավար դ-ր Մարտին Լյութեր Կինգը, երեք սե-
նատոր, մի քանի համալսարանների ռեկտորներ, մի շարք ականավոր փիլի-
սոփաներ, տիկին Ֆրանկլին Դելանո Ռուզվելտը և ուրիշներ, որոնք հրապա-
րակեցին մի հայտարարություն, որտեղ նրանք ողջունում են Խրուշչովի գա-
լուստը և հույս են հայտնում, որ այդ այցելությունը խաղաղ գոյակցության
դարագլուխ կբացի։

ԱՄՆ-ում Խրուշչովի այցելության արձագանքի ընդհանուր բնույթը վկա-
յում է այն մասին, որ կառավարող դասակարգում դեռևս ուժեղ են խաղաղ
գոյակցության քաղաքականությանը թշնամի տարրերը։ Նրանք կցանկանա-
յին ի չիք դարձնել փոխադարձ այցելությունների դրական հետևանքները,
որպեսզի դրանք ձախողված հայտարարեն և այդպիսով նոր առիթ ստեղծեն
«սառը պատերազմը» շարունակելու համար։

***

«Սատերդեյ ռևյու»-ի խմբագիր Նորման Կազինսը, որը կողմնակից է
«սառը պատերազմը» դադարեցնելուն, վերջերս վերադառնալով ՍՍՌ-ում
կատարած երկարատև շրջագայությունից,— իր ժուռնալում գրել է (29 օգոս-
տոսի 1959 թ.) այն մասին, թե, գտնվելով Սովետական Միությունում, ինքը
էական փոփոխություններ է հայտաբերել մարքսիստական թեորիայի մեջ։
Ըստ Կազինսի այդ փոփոխությունը կայանում է նրանում, թե իբր կոմունիստ-
ները դադարել են պատերազմներին նախապատրաստվել և բուն իսկ պատե-
րազմները օրգանապես յուրահատուկ համարել ժամանակակից կապիտալիզ-
մի համար։ Բացառված չէ, որ պ-րն Կազինսին իրոք որ այդպես է թվացել.
բայց կոմունիստները, իհարկե, այժմ ընդհանուր խաղաղության ռեալ հնա-
րավորությունը տեսնում են ոչ այն բանում, որ մոնոպոլիստական կապիտա-
լիզմը իբր թե փոխել է իր բնույթը, որը հղի է պատերազմով, այլ նրանում,
որ վճռականապես փոփոխվել է ուժերի հարաբերակցությունը հօգուտ խաղա-
ղության քաղաքականության։

Մեր ժամանակներում համաշխարհային պատերազմը կարող է կանխվել,
որովհետև պատերազմ թույլ չտալու ձգտող ուժերն ավելի հզոր են այն ուժե-
րից, որոնք ձգտում են պատերազմ սանձազերծել։ Խաղաղությունը պաշտպա-
նող ուժերը հաղթանակ հաղթանակի ետևից են տանում, այդ ուժերը սնանկու-
թյան հասցրին թշնամության և ատելության այն քաղաքականությունը, որ
հակակոմունիզմի հողի վրա բորբոքում են մոնոպոլիստական կապիտալի
ամենառեակցիոն տարրերը։ Այն դրույթը, որ կարելի է պատերազմը կանխել,
պահանջում է, սակայն և ենթադրում էլ ավելի լարված պայքար հանուն խա-
ղաղության. առանց այդպիսի պայքարի մարդկությունը կարող է ներքաշվել
ժամանակակից պատերազմի աննկարագրելի աղետի մեջ։

Միացյալ Նահանգների և Սովետական Միության կառավարությունների
ղեկավարների փոխադարձ այցելությունների սկիզբը արտացոլում է մեր
դարաշրջանի այդ հիմնական ճշմարտության երկու կողմերը։ Փոխադարձ այ-



ցելությունների վերաբերյալ պայմանավորվածությունը հանդիսացավ խաղա-
ղասիրական ուժերի վիթխարի հզորության արդյունքը, Սովետական Միության
ղեկավարությամբ այդ ուժերի համառ պայքարի արդյունքը։

Այն փաստը, որ խաղաղասեր ուժերը հասել են փոխադարձ այցելու-
թյունների, պետք է ոգևորի այդ ուժերին, ամրապնդի հավատը «սառը պա-
տերազմը» վերացնելու ռեալ հնարավորության մեջ և իսկական խաղաղ գո-
յակցության երկարատև դարաշրջանի սկիզբը դնի։

***

Սույն նոթերը գրվել են պրեմիեր Խրուշչովի ԱՄՆ-ում գտնվելու ժամա-
նակ, երբ դեռևս չափազանց վաղ էր ամերիկյան հասարակայնության վրա
նրա այդ այցելության ընդհանուր գնահատականը տալու փորձ անելու հա-
մար։ Սակայն կարելի է համոզիչ կերպով ասել, որ պրեմիեր Խրուշչովն իրեն
հատուկ ուղղամտությամբ, անկեղծությամբ և աշխուժությամբ կարողացավ
ամերիկացիներին համոզել իր կառավարության իսկապես խաղաղասիրական
մտադրությունների մեջ։

Նա համառ կերպով իր ունկնդիրներին այն միտքն էր ներշնչում, որ
ինքը եկել է համաձայնության համար ընդհանուր հող գտնելու նպատակով,
և ոչ թե այն հարցերի շուրջը վիճելու նպատակով, որոնց վերաբերյալ տա-
րաձայնություններ կան։ Եվ նրա այդ հաստատակամությունը հասկանալի էր
միջին ամերիկացուն, որը բուռն կերպով ցանկանում է իսկական խաղաղու-
թյուն։

Պրեմիեր Խրուշչովին լսեցին և տեսան տասնյակ միլիոնավոր ամերիկա-
ցիներ և նրա կերպարը բացարձակապես նման չէր այն «կարմիրների» և
«սովետական կոմունիստների» ստերեոտիպ նկարագրությանը, որոնցով տա-
րիներ շարունակ սարսափեցնում էին ամերիկացիներին։ Այդ ամենը ամենա-
լավագույն կերպով նպաստեց խաղաղասիրական և պրոգրեսիվ տրամադրու-
թյունների տարածմանը Միացյալ Նահանգներում։

Սույն հոդվածի հեղինակին վիճակվեց այն պատմական ակտի վկան լի-
նել, երբ պրեմիեր Խրուշչովը Միացյալ Ազգությունների Կազմակերպության
Գլխավոր Ասամբլեայի նիստում հանդես եկավ բարի կամքի և ամբողջ աշ-
խարհի խաղաղության կրքոտ կոչով։ Երբ Խրուշչովը հրապարակեց լիակատար
և ընդհանուր զինաթափման վերաբերյալ Սովետական կառավարության
առաջարկությունը, որը պետք է կենսագործվի 4 տարվա ընթացքում, ամեն
մեկն էլ հասկացավ, որ ներկա է պատմական հսկայական կարևորություն
ներկայացնող իրադարձության։

Որոշ քաղաքական գործիչներ, մամուլի մի մասը, հակված են այդ առա-
ջարկությունը համարելու ցնորական և դեմագոգիկ, սակայն պլանի վեհու-
թյունը, այն մտցնելու լրջությունը անչափ ակնբախ են, և ԱՄՆ-ի կառավա-
րող շրջաններում տարակուսում են, թե այդպիսով կհաջողվի հրաժարվել
ռուսների առաջարկությունից։ Այստեղից էլ այնպիսի արտահայտություններ,
ինչպես, օրինակ, «Նյու-Յորք պոստ»-ի՝ դեմոկրատական պարտիայի լիբերալ
թերթի, խմբագրական հոդվածի արտահայտությունն է՝ «Ռուսական մրցա-
կանչին չի կարելի պատասխանել պարզապես ծաղրանքով։ Քանի դեռ Արև-
մուտքը չի առաջադրել զինաթափման իր պլանը, մի պլան, որ ընդունակ
լինի դիմանալ ինչպես երկրի ներսում, այնպես էլ արտասահմանում եղած

դիմադրությանը, Խրուշչովի հիմնական առաջարկությունները մեզ հետապնդելու են ամենուրեք»։

Խրուշչովի առաջարկությունը հիրավի մեզ «հետապնդելու է ամենուրեք»։ Մարդկության պատմության մեջ առաջին անգամ չէ, որ պալատներն ու առանձնատները ենթարկվում են հետապնդման, և մեր օրերում դրանց հետապնդում են ոչ միայն ուրվականները։ Ներկայումս դրանց դռները բախում են աշխարհի հզոր և ավելի ու ավելի անդիմադրելի ուժերը, որոնք ներկայացնում են ամբողջ աշխարհի հասարակ մարդկանց հսկայական մեծամասնությունը։

«Սառը պատերազմի» սառույցը կոտրված է, սկսվում է հալոցքը։ Այնուամենայնիվ ժողովուրդները տեղի ունեցողի պարզ հանդիսատեսները չեն լինի, նրանք գործելու են, որպեսզի ոչ մի բան չկարողանա խանգարել հետագա ավելի ջերմացմանը, որպեսզի այդ ջերմացումը ընթանա լիաքայլ, սրընթաց և անկաշկանդ։

Журнал „Проблемы мира и социализма“, 1959 г. № 11·

---

# ԲԱԶԻՍԸ ԵՎ ՎԵՐՆԱՇԵՆՔԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԾԱՎԱԼՈՒՆ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

## Ա. ԹԵԼՈՒՆՑ

Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ հասարակության զարգացման գլխավոր գործոնը նյութական բարիքների արտադրությունն է, արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների միասնությունը՝ իր զարգացման մեջ։ Հասարակական կյանքը մարդկանց բազմազան կապերի ու հարաբերությունների ամբողջությունն է։ Հասարակական հարաբերությունները լինում են նյութական և իդեոլոգիական բնույթի, որոնցից առաջինները կազմավորվելով մարդկանց կամքից ու գիտակցությունից անկախ՝ կազմում են հասարակության տնտեսական բազիսը, իսկ երկրորդները, որոնք գոյանում են նյութական հարաբերությունների հիման վրա, կազմում են վերնաշենքը։ Հասարակության տնտեսական կառուցվածքի և վերնաշենքի կլասիկ ձևակերպումը տվել է Մարքսը՝ «Քաղաքատնտեսության քննադատության շուրջը» գրքի առաջաբանում։ «Իրենց կյանքի հասարակական արտադրության ժամանակ,— գրում է նա,— մարդիկ մտնում են որոշ, անհրաժեշտ, իրենց կամքից անկախ հարաբերությունների՝ արտադրական հարաբերությունների մեջ, որոնք համապատասխանում են իրենց նյութական արտադրողական ուժերի զարգացման որոշ աստիճանին։ Այդ արտադրական հարաբերությունների ամբողջությունը կազմում է հասարակական տնտեսական ստրուկտուրան, այն իրական բազիսը, որի վրա բարձրանում է իրավական ու քաղաքական վերնաշենքը և որին համապատասխանում են հասարակական գիտակցության որոշ ձևերը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, էջ 427)։

Արտադրողական ուժերը և արտադրական հարաբերությունները զարգանում են որոշակի օրինաչափություններով։ Քանի դեռ վերջիններս համապատասխանում են արտադրողական ուժերի բնույթին և նպաստում են նրանց աճին՝ հանդիսանում են արտադրողական ուժերի զարգացման ձևը, բայց ետ մնալով նրանց զարգացումից, հակասության, ապա և կոնֆլիկտի մեջ են մտնում դրանց հետ, դառնում արտադրողական ուժերի զարգացման կապանքները։ Այդ կոնֆլիկտը վճռվում է ռևոլյուցիոն ճանապարհով. հին, արտադրողական ուժերի զարգացումը կաշկանդող հարաբերությունները փշրվում են և նրանց փոխարինում են նոր, ավելի պրոգրեսիվ հարաբերությունները։

Արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների կոնֆլիկտն իր ամենից ավելի սուր դրսևորումն է գտնում կապիտալիզմի վերջին ստադիայում՝ իմպերիալիզմի ժամանակ։ Պարբերաբար կրկնվող տնտեսական ճգնաժամերը, գործազրկությունը, արտադրության թերբեռնվածությունը, գա-

*սակարգային սուր պայքարը, ավերիչ պատերազմները, կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը այդ կոնֆլիկտի արտահայտություններն են. կոնֆլիկտ, որը վճռվում է ռևոլյուցիոն ճանապարհով, կապիտալիստական կարգերի խորտակմամբ և սոցիալիստական կարգերի հաստատմամբ։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, ապա և ռևոլյուցիոն ճանապարհներով ժողովրդա-դեմոկրատական կարգերի հաստատումը Չինաստանում և Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրներում, այդ կոնֆլիկտի լուծումն էին աշխարհի մեկ քառորդ մասում։*

*Սոցիալիստական արտադրական հարաբերությունների կազմավորման առանձնահատկություններից մեկն այն է, որ դրանք չեն ստեղծվում նախկին՝ կապիտալիստական հասարակության ընդերքում, որովհետև դրանց հիմքը արտադրության միջոցների հանրային սեփականությունն է, իսկ վերջինս անհամատեղելի է կապիտալիզմի գոյության հետ։ Ռևիզիոնիստների այն պնդումը, թե արդյունաբերության որոշ ճյուղերի ազգայնացումը, պետության տնտեսական ֆունկցիաների ուժեղացումը ժամանակակից կապիտալիստական երկրներում իբր թե ստեղծում են սոցիալիստական արտադրական հարաբերություններ, սոցիալիստական բազիս և, հետևաբար, կապիտալիզմը խաղաղ ճանապարհով վերաճում է սոցիալիզմի, սոսկ հակագիտական հերյուրանքներ են։ Բուրժուական պետության կողմից կատարվող ամեն մի ազգայնացում, բուրժուական պետության տնտեսական դերի աճն ամենևին չի խախտում կապիտալիստական մասնավոր սեփականության տիրապետությունը։ Ավելին. այդ նույնպես բխում է բուրժուազիայի շահերից, որին անհրաժեշտ է ուժեղ պետություն շահագործվող դասակարգերին ճնշված պահելու, իր տիրապետությունը պահպանելու, պատերազմներ վարելու, գաղութային և կախյալ ժողովուրդներին թալանելու համար։*

*Սոցիալիստական արտադրական հարաբերությունները կազմավորվում են սոցիալիստական ռևոլյուցիայից հետո, բայց այստեղից ամենևին չի բխում, թե կապիտալիստական հասարակությունը ոչ մի նյութական նախադրյալ չի ստեղծում ապագա հասարակարգի համար։*

*Լենինը բազմիցս նշել է, որ կապիտալիզմի վերջին փուլում խոշոր արտադրության և աշխատանքի հանրայնացման ստեղծմամբ գոյանում է և «...սոցիալիզմի անխուսափելի վրա հասնելու գլխավոր նյութական հիմքը։ Այդ փոխարկման ինտելեկտուալ ու բարոյական շարժիչը և ֆիզիկական կատարողն է հանդիսանում հենց կապիտալիզմի դաստիարակած պրոլետարիատը» (Երկեր, հ. 21, էջ 77)։ Արտադրողական ուժերի զարգացումը իմպերիալիզմի դարաշրջանում անխուսափելիորեն ծնում է սոցիալիզմի իրագործելիության բոլոր օբյեկտիվ նախադրյալները։ «Թե՛ համաշխարհային կապիտալիզմի զարգացման չափազանց բարձր աստիճանն ընդհանրապես, թե՛ ազատ մրցման փոխարինումը մոնոպոլիստական կապիտալիզմով, թե՛ բանկերի, նմանապես և կապիտալիստների միությունների կողմից ապարատ նախապատրաստելը՝ արտադրության պրոցեսն ու մթերքների բաշխումը հանրայնորեն կարգավորելու համար, թե՛ կապիտալիստական մոնոպոլիաների աճման հետ կապված թանկության ու սինդիկատների կեղեքման աճումը՝ բանվոր դասակարգի նկատմամբ, նրա տնտեսական և քաղաքական պայքարի վիթխարի դժվարությունները, թե՛ իմպերիալիստական պատերազմի առաջ բերած սարսափները, թշվառությունները, քայքայումն ու վայրենացումը—*



*այս ամենը կապիտալիզմի զարգացման այժմյան աստիճանը դարձնում է պրոլետարական սոցիալիստական ռևոլյուցիայի դարագլուխ» (Երկեր, հ. 24, էջ 579—580)։*

*Կապիտալիզմի ծոցումն է ծնվում և աճում նրա գերեզմանափորը, ռևոլյուցիոն պրոլետարիատը։ Հանդես գալով պատմության թատերաբեմում, նա դասակարգային մարտերում ստեղծում է իր ռևոլյուցիոն աշխարհայացքը, բարոյականությունը, գրականությունը և քաղաքական պարտիան։ Այդ գործոնները սոցիալիստական հասարակության վերնաշենքի տարրերն են։*

*Սակայն չի կարելի շփոթել սոցիալիզմի նյութական նախադրյալները սոցիալիստական բազիսի հետ, տարրերը՝ ամբողջի հետ։ Կապիտալիզմի ժամանակ չկա սոցիալիզմի տնտեսական բազիս— արտադրության միջոցների հանրային սեփականություն, ընկերական համագործակցության հարաբերություններ արտադրության պրոցեսում, բաշխման սոցիալիստական սիստեմ։ Այնտեղ տիրապետում են մասնավոր սեփականությունը, շահագործողական հարաբերությունները, բաշխման կապիտալիստական սիստեմը։ Կապիտալիստական հասարակության անտագոնիստական բնույթը, հակադիր դասակարգերի գոյությունը պայմանավորում են հակադիր աշխարհայացքների, բարոյական նորմաների, հակադիր կուլտուրաների առկայությունը։ Սակայն քանի գոյություն ունի կապիտալիզմ, քաղաքական տիրապետությունը, դիկտատուրան, պետությունը, իրավունքը մնում են բուրժուազիայի ձեռքին, տիրապետող գաղափարներն ինչպես միշտ, այստեղ ևս մնում են տիրապետող դասակարգի գաղափարները։*

*Անցյալի և ժամանակակից ռևիզիոնիստների դեմ է ուղղված Վ. Ի. Լենինի հայտնի դրույթը. «Կապիտալիզմն ինքն է ստեղծում իր գերեզմանափորին, ինքն է ստեղծում նոր կարգերի տարրերը, և միևնույն ժամանակ այդ առանձին տարրերն առանց «թռիչքի» ոչինչ չեն փոփոխում իրերի ընդհանուր դրության մեջ, չեն շոշափում կապիտալի տիրապետությունը» (Երկեր, հ. 16, էջ 455)։*

*Ռևոլյուցիոն շարժման պրակտիկան, պրոլետարիատի դիկտատուրայի և սոցիալիստական կարգերի հաստատումը երկրագնդի մեկ քառորդ մասում, որտեղ ապրում է բնակչության մեկ երրորդից ավելին, անհերքելիորեն ապացուցել է մարքսիստական այն դրույթը, որ սոցիալիստական հասարակարգն իր տնտեսական բազիսով և քաղաքական ու իրավական վերնաշենքով կարելի է կառուցել միայն կապիտալիստական հասարակարգի տապալման միջոցով։ Ընդ որում այդ պրոցեսում բռնություն գործադրելը կամ չգործադրելը կախված է ոչ այնքան պրոլետարիատից, որքան շահագործողների դիմադրությունից։*

***

*Սոցիալիզմի տնտեսական բազիսը սոցիալիստական արտադրական հարաբերությունների ամբողջությունն է։ Դրանք արտադրության միջոցների հանրային սեփականությամբ պայմանավորվող՝ քաղաքի և գյուղի աշխատավորների ընկերական համագործակցության ու բարեկամական փոխօգնության հարաբերություններ են։ Սոցիալիզմը ներգրավում է աշխատավոր բնակչությանը*

հանրային արտադրության պրոցեսի մեջ, ապահովում է բնակչության հարաճուն նյութական ու կուլտուրական պահանջմունքները, կիրառելով ըստ աշխատանքի վարձատրության՝ հասարակության զարգացման տվյալ աստիճանում ամենաարդարացի սկզբունքը։ Սոցիալիստական հարաբերությունները հասարակության ընդհանուր վերելքին զուգընթաց ապահովում են մարդկանց ընդունակությունների բազմակողմանի զարգացումը, նրանց ակտիվ մասնակցությունը երկրի քաղաքական ու կուլտուրական կյանքին։

Սոցիալիզմի կառուցումը միասնական պրոցես է, որն ընդգրկում է նյութական արտադրությունը և հասարակական հարաբերությունների բոլոր բնագավառները։ Սոցիալիստական էկոնոմիկայի ստեղծմամբ սոցիալիստական կացութաձևը դուրս է մղում անցյալից մնացած մյուս կացութաձևերը, արտադրության նախասոցիալիստական հարաբերությունները, արմատական փոփոխություններ կատարում հասարակության դասակարգային կազմի մեջ, վերացնում շահագործող դասակարգերն ու նրանց մնացորդները։ Հասարակության ռևոլյուցիոն վերափոխման այս պրոցեսում կարևորագույն դեր է կատարում վերնաշենքը — պետությունը, սոցիալիստական իդեոլոգիան, նոր հասարակարգի ղեկավար և ուղղություն տվող ուժը՝ Կոմունիստական պարտիան։

Սոցիալիզմի կառուցումը և անցումը դեպի կոմունիզմ տեղի են ունենում գիտակցաբար, հասարակության զարգացման օրենքների ճանաչման ու նպատակահարմար օգտագործման միջոցով։ Պարտիայի քաղաքականությունը մշակվում և կենսագործվում է ելնելով օբյեկտիվ օրենքների բնույթից ու հասարակության առաջընթաց զարգացման պահանջներից։

Սոցիալիստական արտադրական հարաբերությունները սոցիալիստական արտադրողական ուժերի զարգացման ձևն են, որոնք ապահովում են արտադրողական ուժերի այնպիսի աճ, որպիսին հնարավոր չի եղել նախընթաց պատմության մեջ։ 1958 թվականին ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքը գերազանցեց 1913 թվականի մակարդակը 36 անգամ, ընդ որում արտադրության միջոցների արտադրությունը՝ 83 անգամ, աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 10 անգամ, իսկ ազգային եկամուտն ըստ շնչի՝ 15 անգամ։ Զարգացման բարձր տեմպերը սոցիալիստական հասարակության ընդհանուր օրինաչափությունն են, որը բխում է արտադրողական ուժերի բնույթին արտադրական հարաբերությունների համապատասխանությունից, այն բանից, որ արտադրական հարաբերությունները լայն ասպարեզ են տալիս արտադրողական ուժերի զարգացմանը, որ հանրային արտադրության զարգացմամբ շահագրգռված է ամբողջ հասարակությունը։ Բայց այս չի նշանակում թե սոցիալիզմի ժամանակ զարգացումը տեղի է ունենում միանգամայն հարթ, առանց հակասությունների ու դժվարությունների։ Սոցիալիզմը վերացնում է դասակարգային անտագոնիզմը, բայց հակասությունները մնում են հասարակական կյանքի բոլոր բնագավառներում, այդ թվում և արտադրողական ուժերի ու արտադրական հարաբերությունների միջև։ Դրանք աճի հակասություններ են, որոնք վճռվում են ոչ թե սոցիալական բախումների, այլ արտադրողական ուժերի զարգացման հիման վրա արտադրական հարաբերությունների մեջ կատարվող պրոգրեսիվ փոփոխությունների, նրանց կատարելագործման, ղեկավարության մեթոդների բարելավման միջոցով։



Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության տնտեսական քաղաքականության նպատակը՝ արտադրողական ուժերի հարատև աճը և արտադրական հարաբերությունների հետագա կատարելագործումն է։ Ժամանակին բացահայտելով և ուղղելով տեղ գտած թերություններն ու սխալները, դեն շպրտելով այն ամենը, ինչ խանգարում է հասարակության տնտեսական զարգացմանը, մշակելով տնտեսական ղեկավարության ավելի դեմոկրատական ու ճկուն մեթոդներ, պլանավորման ավելի կատարելագործված եղանակներ, պարտիան լուծում է երկրի տնտեսական անշեղ զարգացման խնդիրը, պայմաններ ստեղծում, որպեսզի սոցիալիստական սիստեմը լիովին դրսևորի իր առավելությունները։

Վերջին տարիների ընթացքում պարտիայի և սովետական ժողովրդի կողմից մշակված և իրագործված միջոցառումներն արդյունաբերության ղեկավարումը վերակառուցելու և գյուղատնտեսության շեշտակի վերելք ստեղծելու ուղղությամբ արդեն տվել են իրենց հիանալի պտուղները։ 1958 թվականին արդյունաբերական արտադրանքը նախորդ տարվա համեմատությամբ ավելացավ 10 տոկոսով, պլանով նախատեսված 7,6 տոկոսի փոխարեն, հացահատիկի արտադրությունը վերջին հինգ տարվա ընթացքում, նախորդ հինգ տարիների համեմատությամբ ավելացավ 39 տոկոսով, խոշոր նվաճումներ ձեռք բերվեցին նաև գյուղատնտեսության մյուս ճյուղերում, վերականգնվեց նյութական շահագրգռվածության սկզբունքը գյուղատնտեսության մեջ, կատարելագործվեց կոլտնտեսությունները տեխնիկայով ապահովելու և նրանց կողմից տեխնիկան օգտագործելու եղանակը, գյուղատնտեսությունն ամրապնդվեց բարձրորակ կադրերով։

«Սովետական Միությունում,— արձանագրված է ՍՄԿՊ XXI համագումարի բանաձևում,— որը մարդկության համար ճանապարհ հարթեց դեպի սոցիալիզմ, այժմ ձեռք է բերված արտադրողական ուժերի, սոցիալիստական արտադրական հարաբերությունների և կուլտուրական զարգացման այնպիսի մակարդակ, որը թույլ է տալիս առաջիկա յոթնամյակում լայն ճակատով ծավալել կոմունիստական հասարակարգի կառուցումը»։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի կենսագործմամբ համակողմանիորեն կզարգանան սովետական երկրի արտադրողական ուժերը, ծանր արդյունաբերության առավելապես զարգացման հիման վրա էկոնոմիկայի բոլոր ճյուղերում ձեռք կբերվի արտադրության այնպիսի աճ, որը հնարավոր կդարձնի կատարելու վճռական քայլ կոմունիզմի նյութատեխնիկական բազան ստեղծելու և կապիտալիստական երկրների հետ խաղաղ մրցության մեջ ՍՍՌՄ-ի հաղթանակը ապահովելու համար։ Արտադրողական ուժերի վիթխարի աճը և համապատասխանաբար արտադրական հարաբերությունների հետագա զարգացումը, ժողովրդի բարեկեցության բարձրացումը և պրոգրեսիվ փոփոխությունները կկազմեն կոմունիզմի ցածր փուլից բարձրագույնին անցնելու նախապայմանը։

Սոցիալիզմը և կոմունիզմը Վ. Ի. Լենինի խոր բնութագրմամբ՝ կոմունիստական հասարակության տնտեսական հասունության տարբեր աստիճաններն են։ «Այն, ինչ որ սովորաբար սոցիալիզմ են անվանում, Մարքսն անվանել է կոմունիստական հասարակության «առաջին» կամ ստորին փուլը։ Որչափով ընդհանուր սեփականություն են դառնում արտադրության միջոցները, այդ չափով այստեղ էլ կարելի է «կոմունիզմ» բառը գործածել, եթե չմոռանանք, որ այդ

լիակատար կոմունիզմ չէ» (Երկեր, հ. 25, էջ 613)։ Արտադրողական ուժերի զարգացման մակարդակը հնարավորություն չի տալիս սոցիալիզմի ժամանակ անցնելու հանրային սեփականության մի ձևի. այստեղ համաժողովրդական սեփականության հետ միասին գոյություն ունի նաև հանրային սեփականության կոլտնտեսային-կոոպերատիվ ձևը և բացի դրանից մնում է դեռևս կոլտնտեսականների օժանդակ տնտեսությունը։ Սոցիալիզմի ժամանակ վերանում է գյուղի և քաղաքի, ինչպես նաև մտավոր ու ֆիզիկական աշխատանքի հակադրությունը, բայց դեռևս մնում են էական տարբերությունները նրանց միջև։ Կոմունիստական հասարակության ստորին փուլում գործում է ըստ աշխատանքի վարձատրության սկզբունքը, որը համապատասխանում է արտադրողական ուժերի զարգացման տվյալ մակարդակին, ի տարբերություն կոմունիստական հասարակության բարձրագույն փուլի՝ յուրաքանչյուրից ըստ ընդունակության, յուրաքանչյուրին ըստ պահանջմունքների սկզբունքի։ Վերջինիս կիրառումը հնարավոր կդառնա այն ժամանակ, երբ Մարքսի բնութագրմամբ, աշխատանքը դադարելով միայն կյանքի միջոց լինելուց, կդառնա նրա առաջին պահանջը և, անհատների համակողմանի զարգացման հետ միասին, կաճեն արտադրողական ուժերն ու հորդառատ կհոսեն հասարակական հարստության բոլոր աղբյուրները։

Սոցիալիզմից կոմունիզմին անցման պրոցեսի ընդհանուր նախագծումները տվել են մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները։ Սովետական հասարակության զարգացման ներկա մակարդակը հնարավորություն տվեց տեսականորեն լուծելու և գործնականորեն ձեռնարկելու սոցիալիզմից կոմունիզմի անցման կոնկրետ խնդիրները։ ՍՄԿԿ XXI համագումարի պատմական նշանակությունն ամենից առաջ այն է, որ նա գիտականորեն մշակեց կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի ծրագիրը և նրա կենսագործման ուղիները։

Սոցիալիզմի զարգացման արագ ընթացքը Հոկտեմբերյան ռևոլյուցիայից առաջ կանխատեսել էր Լենինը, ասելով, որ «...միմիայն սոցիալիզմից է սկսվելու արագ, իրական, իսկապես մասսայական, բնակչության մեծամասնության, ապա նաև ամբողջ բնակչության մասնակցությամբ տեղի ունեցող առաջընթաց շարժումը հասարակական և անձնական կյանքի բոլոր ասպարեզներում» (Երկեր, հ. 25, էջ 615)։

Սոցիալիստական հասարակության արագ զարգացման օբյեկտիվ նախադրյալը արտադրողական ուժերի անկաշկանդ աճն ու մարդկանց նյութական ու հոգևոր պահանջմունքների բազմապատկումն է, որը մշտապես խթանում է արտադրությունը։ Սոցիալիզմից կոմունիզմին անցման պրոցեսը բնութագրվում է զարգացման բարձր տեմպերով, այն հաշվով, որպեսզի առավելագույն ժամանակ շահվի՝ կապիտալիզմի հետ մղվող տնտեսական մրցության մեջ։ Բայց զարգացման արագ տեմպերը ամենևին չի նշանակում հապճեպություն և ժամանակից առաջ կոմունիզմի սկզբունքների ազդարարում։ Չի կարելի շտապել ու հապճեպորեն մտցնել այն, ինչը դեռևս չի հասունացել, ասում է Ն. Ս. Խրուշչովը։ Դա օրինաչափ պրոցես է, որը խարսխվում է ոչ թե կամայական ցանկությունների ու հապճեպ որոշումների վրա, այլ օբյեկտիվ պայմանների զարգացման, կոմունիզմի նյութական ու հոգևոր նախապայմանների ծավալման, դրանց ճիշտ հաշվառման ու էկոնոմիկայի աճի գիտական պլանավորման վրա։ Սոցիալիզմից կոմունիզմին անցման ժամանակա-



շրջանում սովետական հասարակարգի տնտեսական բազիսի զարգացումը բնութագրվում է հետևյալ հիմնական հատկանիշներով։

1. Հանրային սեփականության անշեղ զարգացում և նյութական նախապայմանների ստեղծում՝ հանրային սեփականության մի միասնական ձև հաստատելու համար։ Արտադրական հարաբերությունների կոլտնտեսային ձևը, որի հիմքն է կազմում կոլեկտիվ-խմբային սեփականությունը, գյուղում սոցիալիստական արտադրական հարաբերությունների ամենից ավելի նպատակահարմար ձևն է այժմ։ Դրանք կատարում են իրենց պատմական դերը գյուղի սոցիալիստական վերափոխման պրոցեսում և դեռ չեն սպառել իրենց հնարավորությունները։ Ուրեմն դեռ երկար ժամանակ կծառայեն արտադրողական ուժերի զարգացմանը գյուղում։ Սեփականության այդ ձևի համակողմանի զարգացմամբ և անշեղ կատարելագործմամբ՝ հնարավոր կլինի մերձեցնել այն ու բարձրացնել համաժողովրդական սեփականության աստիճանին։

Արդեն այժմ կոլտնտեսային սեփականության զարգացման մեջ կատարվում են մի շարք բնորոշ պրոցեսներ, որոնք զարգանալով և ծավալվելով մերձեցնում են այն համաժողովրդական սեփականությանը։ Այդ պրոցեսներն են՝ անբաժան ֆոնդերի անընդհատ աճը, անձնական սեփականության անհրաժեշտության վերացումը, միջկոլտնտեսային արտադրական կապերի ընդլայնումը, գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման ու մեքենայացման հետևանքով կոլտնտեսային արտադրական միջոցների միաձուլումը պետականի հետ։ Հետևաբար ավելի բարձր արտադրական հարաբերությունների անցման պրոցեսը գյուղում տեղի է ունենում ոչ թե արտադրական հարաբերությունների կոլտնտեսային ձևի նեղացման ու կծկման ուղիով, այլ դրա հետագա զարգացմամբ, արտադրության միջոցների հանրայնացման մակարդակի ընդլայնմամբ, որ տեղի է ունենում սովետական պետության օգնության ու աջակցության պայմաններում։

Կոլտնտեսային սեփականության մերձեցումը պետականին, և վերջինիս հետ միասին՝ միասնական կոմունիստական սեփականության մեջ միաձուլվելու պրոցեսը միաժամանակ գյուղի և քաղաքի էական տարբերությունների հաղթահարման ու վերացման պրոցես է։ Կոլտնտեսային սեփականության ինդուստրիալ բազայի ընդլայնմամբ, գյուղատնտեսության հետագա էլեկտրիֆիկացմամբ ու մեքենայացմամբ աստիճանաբար գյուղատնտեսությունը դառնում է ինդուստրիալ արտադրության տարատեսակը։ Դա զուտ տնտեսական պրոցես չէ։ Այդ հիման վրա ամրապնդվում է սովետական հասարակության քաղաքական հիմքը՝ բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքը, պայմաններ ստեղծում նրանց միջև եղած տարբերությունների վերացման համար։ Գյուղի տնտեսական հզորության աճման զուգընթաց բարձրանում է կոլտնտեսային գյուղատնտեսության կուլտուրական մակարդակը։ Այսպիսով, հանրային սեփականության երկու ձևերի զարգացումը պայմաններ են ստեղծում սոցիալիզմից կոմունիզմին անցնելու համար, որտեղ գյուղատնտեսական արտադրությունը կմերձենա ինդուստրիալ արտադրության հետ և սեփականության ձևերի միաձուլման հետ կվերանան և դասակարգային տարբերությունները։

2. Սոցիալիստական հասարակարգը ստեղծել է նոր հարաբերություններ մարդկանց միջև աշխատանքի պրոցեսում։ Աշխատանքը ֆիզիկական ու հոգևոր տառապանքից, ինչպիսին այն եղել է աշխատավորի համար նախկի-

նում, այժմ դարձել է ամեն մի գիտակից մարդու կարևոր պարտքը հասարակության նկատմամբ։ «Մեր երկրում,—ասում է Ն. Ս. Խրուշչովը,—արդեն այժմ հանրային աշխատանքը դարձել է մարդկանց նոր, սոցիալիստական հարաբերությունների արտահայտությունը, մարդու բարոյական վսեմ հատկությունների ցուցանիշը»։ Սոցիալիզմը վերացրել է հակադրությունը ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև, շահագործողական հասարակարգերում ծնունդ առած արհամարհանքը ֆիզիկական աշխատանքի նկատմամբ և ստեղծել պայմաններ մարդկանց ֆիզիկական ու մտավոր ընդունակությունների բազմակողմանի զարգացման համար։ Աշխատանքը սոցիալիզմի ժամանակ մարդու դաստիարակման, կոլեկտիվի առջև նրա պատասխանատվության զգացումի բարձրացման միջոց է։ Սակայն սոցիալիզմի ժամանակ դեռևս չեն վերացվել էական տարբերությունները ֆիզիկական ու մտավոր աշխատանքի միջև, արտադրողական ուժերի զարգացման մակարդակը դեռևս հնարավորություն չի տալիս բոլոր բնագավառներում աշխատանքը դարձնելու պատշաճ չափով թեթև, արտադրության մակարդակը դեռևս չի ապահովում մարդու պահանջմունքների բավարարումն անկախ հասարակական արտադրության մեջ նրա կատարած աշխատանքից։

Այդ խնդիրների իրականացման նախապայմանն արտադրողական ուժերի ըստ ամենայնի զարգացումն է, արտադրության հետագա մեքենայացումն ու ավտոմատացումը, աշխատանքի արտադրողականության անշեղ աճը։ Կոմունիստական պարտիան և Սովետական պետությունը սևեռուն ուշադրություն են դարձնում աշխատանքի պայմանների թեթևացման վրա։ Յոթնամյա պլանով նախատեսվում է 1962 թվականին անցնելու 40-ժամյա աշխատանքային շաբաթի, իսկ հետագայում՝ 1966—1968 թթ., աշխատանքային շաբաթվա տևողությունը պետք է հասցվի՝ ծանր պայմաններում աշխատողների համար 30, մնացած բոլորի համար 35 ժամի։ Սովետական Միությունում կհաստատվի ամենակարճ աշխատանքային օրը և ամենակարճ աշխատանքային շաբաթը աշխարհում։

Սոցիալիզմից կոմունիզմին անցման ժամանակաշրջանում նյութական արտադրության աճի հետ միասին ձևավորվում է նոր մարդը, աճում են կոմունիստական աշխատանքի հատիկները, որոնք գնալով տիրապետող նշանակություն են ձեռք բերում։

Կյանքը առաջ է քաշում սոցիալիստական մրցության նոր, ավելի բարձր ձևեր ու մեթոդներ։ Ամբողջ երկրում լայնորեն տարածվում են կոմունիստական աշխատանքի բրիգադները, որոնք աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ նոր, բարձր նորմաներ են հաստատում արտադրության ու կենցաղի մեջ, բարձրացնում աշխատավորների գիտական մակարդակն ու կուլտուրան։

Կոմունիստական աշխատանքին անցնելու կարևորագույն պայմաններից մեկը ուսման պրոցեսի սերտ կապն է պրակտիկայի հետ։ Պարտիայի և Սովետական պետության միջոցառումները դպրոցի վերակառուցման ուղղությամբ հեռանկարներ են բացում կոմունիստական աշխատանքի սկզբունքների ներդրման, ֆիզիկական ու մտավոր աշխատանքի միջև եղած էական տարբերությունների վերացման, ֆիզիկական, հոգևոր ու բարոյական բարձր հատկանիշներ ունեցող սերնդի աճեցման համար։

Արդեն այժմ առաջավոր բանվորների ու մյուս աշխատավորների մոտ



բողբոջում է նոր, իսկական կոմունիստական վերաբերմունք աշխատանքի նկատմամբ։ Վ. Գագանովայի նախաձեռնած օրինակը, որով ոչ թե նյութական շահագրգռվածությունն է դրվում աշխատանքային սխրագործության հիմքում, այլ գաղափարական նվիրվածությունը կոմունիստական հասարակարգի նկատմամբ, լայն տարածում է ստանում արտադրության մեջ։ Առաջավոր աշխատավորների օգնությունը ետ մնացողներին, որի նորանոր ձևերն են ծնվում այժմ ունի ոչ միայն տնտեսական, այլև դաստիարակչական ու բարոյական մեծ նշանակություն։ Բողբոջող կոմունիստական աշխատանքի ծիլերը գնալով ավելի մեծ ծավալ կստանան՝ նախապատրաստելով կոմունիզմի սկզբունքների աստիճանաբար հաստատումը։

Այսպիսով, սովետական հասարակության տնտեսական բազիսի զարգացումը բնութագրվում է նաև որակական փոփոխություններով հանրային աշխատանքի մեջ, ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև եղած էական տարբերությունների հաղթահարումով, կյանքի, աշխատանքի հետ ուսման կապի ուժեղացումով, այն հաշվով, որ աշխատանքը դառնա բազմակողմանի զարգացած մարդու առաջին կենսական պահանջը։

3. Սոցիալիզմից կոմունիզմին անցման ժամանակաշրջանում դեռևս կիրառվում է ըստ աշխատանքի վարձատրման սոցիալիստական սկզբունքը, հետևաբար և աշխատանքի և սպառման չափի նկատմամբ վերահսկման պետական ֆունկցիան։ Ըստ պահանջի բաշխման սկզբունքը, որը կիրականացվի կոմունիզմի ժամանակ, չի կարելի կիրառել ժամանակից շուտ, արտադրողական ուժերի և աշխատանքի արտադրողականության ներկայիս մակարդակի պայմաններում։ Դա կլիներ հավասարարություն, որը, ինչպես նշում է Ն. Ս. Խրուշչովը, ոչ թե կնշանակեր անցում կոմունիզմին, այլ նրա վարկաբեկում։ Բայց չի կարելի սոցիալիզմի բաշխման հարաբերությունները դիտել որպես մի ինչ-որ քարացած, մեկընդմիշտ տրված բան։ Պրակտիկան ցույց է տալիս, որ դրանք պահպանելով իրենց գոյությունը երկարատև ժամանակաշրջանի ընթացքում, միաժամանակ մշտապես փոփոխվում ու կատարելագործվում են սոցիալիստական արտադրության զարգացման համընթաց։

Ըստ աշխատանքի վարձատրման սիստեմը ոչ միայն հիմա, այլև որոշակի ժամանակաշրջանում կպահպանի իր գերակշռող ու որոշիչ դերը, որովհետև այն ապահովում է աշխատավորների նյութական շահագրգռվածությունը, խթանում է աշխատանքի արտադրողականության աճը, կարևոր պայման է հանդիսանում աշխատավորների որակավորման բարձրացման համար, կատարում է վիթխարի դաստիարակչական դեր, սովորեցնում է մարդկանց աշխատանքային դիսցիպլինայի։ Վարձատրման այդ սիստեմն ինքը նախապայմաններ է ստեղծում ավելի բարձր սիստեմին անցնելու համար։ Աշխատանքի արտադրողականության աճը բազմապատկելով հասարակական հարըստությունը, հնարավոր կդարձնի մարդկային նորմալ պահանջմունքների լիակատար բավարարումը։ Նյութական բարիքների արտադրության աճի հետ միասին կարմատավորվեն կոմունիստական աշխատանքի նորմաները, մարդիկ կսովորեն աշխատել ոչ թե հաշվի առնելով աշխատանքի վարձատրությունը, այլ կտեսնեն նրա մեջ կենսական պահանջ և հասարակական պարտքի գիտակցում։

Բաշխման հարաբերությունները սոցիալիզմի ժամանակ չեն սահմանափակվում միայն ըստ աշխատանքի վարձատրման սկզբունքով։ Դա սոցիա-

լիստական բաշխման հիմնական սկզբունքն է, բայց դրա հետ միասին գոյու-
թյուն ունի և գնալով ավելի է մեծանում սպառման հասարակական ֆոնդը,
որը ծախսվում է պետության կողմից բնակչության կուլտուրական ու բժշկական
սպասարկման, բնակարանային շինարարության վրա, ինչպես և տրվում է
բնակչությանը նպաստների, թոշակների ձևով։ Դա աշխատավորների նյութա-
կան ու կուլտուրական բարեկեցության բարձրացման կոմունիստական մեթոդ
է, կոմունիստական բաշխման տարր սոցիալիզմի ժամանակ։ Սոցիալիզմի
զարգացման օրինաչափությունը տանում է դեպի բաշխման այդ եղանակի
ընդլայնումն ու ծավալումը, որը պարզորոշ երևում է յոթնամյա պլանից։
Սպառման հասարակական այս ֆոնդը, ինչպես արձանագրված է պարտիա-
յի XXI համագումարի բանաձևում, կարևոր նախապայման է հանդիսանում
բաշխման կոմունիստական սկզբունքին անցնելու համար։ Ինչպես հասարա-
կական կյանքի մյուս բնագավառներում, այստեղ էլ կոմունիզմի ծիլերը
աճում են սոցիալիզմի ժամանակ, սոցիալիզմն անընդհատ աճում-վերաճում
է կոմունիզմի։

Կոմունիզմի կառուցման արմատական պայմանը նրա նյութա-տեխնի-
կական բազայի ստեղծումն է, բայց այդ պրոցեսը միաժամանակ սոցիալիս-
տական արտադրական հարաբերությունների հետագա զարգացման ու կատա-
րելագործման պրոցես է, կոմունիզմի տնտեսական բազիսի ստեղծման
պրոցես։

***

Սոցիալիստական հասարակարգի արտադրական հարաբերություններին
համապատասխանում է նրա վերնաշենքը՝ քաղաքական, իրավական, գեղագի-
տական, փիլիսոփայական գաղափարներն ու հաստատությունները։ Ինչպես
հասարակության ողջ պատմության ընթացքում, սոցիալիզմի ժամանակ ևս
արտադրության օբյեկտիվ պայմանները կազմում են մարդկանց ամբողջ
պատմական գործունեության բազան, որոնցով պայմանավորվում են քաղա-
քական ու իդեոլոգիական հարաբերությունները, քաղաքական իրավական և
այլ հաստատությունները։ Սոցիալիստական վերնաշենքը, որն ստեղծվել է
բուրժուական վերնաշենքի խորտակման հետևանքով, ոչ միայն կոչված է
պաշտպանելու հասարակության նոր կարգերը հին հասարակարգի և նրա
մնացորդների դեմ մղվող պայքարում, և ոչ միայն պահպանելու արդեն կազ-
մավորված սոցիալիստական արտադրական հարաբերությունները, այլև ակ-
տիվ կերպով աջակցելու ու նպաստելու այդ հարաբերությունների զարգաց-
մանը, նրանց փոխարկմանը ավելի բարձր, կոմունիստական հարաբերու-
թյուններով։

Պատմության մեջ երբեք վերնաշենքը չի ունեցել այնքան ակտիվ ու ռևո-
լյուցիոն դեր ու նշանակություն, ինչպիսին ունի այն սոցիալիստական
երկրներում։ Սոցիալիստական իդեոլոգիան զինում է կոմունիզմ կառուցող-
ներին հասարակական կյանքի ճանաչման ու վերափոխման գաղափարներով։
Մարքսիստական-լենինյան ուսմունքը հանդիսանում է Կոմունիստական
պարտիայի աշխարհայացքը, որի հիման վրա պարտիան մշակում ու կենսա-
գործում է գիտականորեն հիմնավորված քաղաքականություն։ Սովետական
պետությունը կոմունիզմի կառուցման հիմնական գործիքն է, որի հիմնական



ֆունկցիան սոցիալիստական էկոնոմիկայի, արտադրության ու բաշխման
պրոցեսների ղեկավարությունն ու վերահսկողությունն է։ Կոմունիստական
պարտիան հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժն է, մասսա-
ների պատմական սխրագործությունների կազմակերպիչն ու ոգեշնչողը։ Սո-
ցիալիստական վերնաշենքը մարմնացնում է թեորիայի ու պրակտիկայի
միասնությունը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո Վ. Ի.
Լենինը ընդգծեց, որ «հասել է հենց այն պատմական մոմենտը, երբ թեորիան
վերածվում է պրակտիկայի, կենդանանում է պրակտիկայով, ուղղվում է
պրակտիկայով, ստուգվում է պրակտիկայով» (Երկեր, հ. 26, էջ 503)։ Թեո-
րիայի և պրակտիկայի կապը դրսևորվում է վերնաշենքի ակտիվ, կազմակեր-
պող ու վերափոխիչ գործունեության մեջ։ Սոցիալիստական վերնաշենքը
ընդգրկում է ամենաառաջավոր գաղափարներն իրենց գործողության մեջ՝
հասարակական կյանքի բոլոր բնագավառներում։

Սոցիալիստական վերնաշենքի ակտիվ, կազմակերպող ու վերափոխիչ
դերը ավելի է բարձրանում սոցիալիզմից կոմունիզմին անցման ժամանակա-
շրջանում։ Արտացոլելով հասարակության տնտեսական բազիսը, կատարե-
լագործվելով տնտեսական հարաբերությունների զարգացման հետ միասին,
սոցիալիստական վերնաշենքը պատմական նոր ժամանակաշրջանում կոչված
է զինելու ժողովրդական մասսաներին ամենաառաջավոր գաղափարներով,
զարգացման ներկա մոմենտի խնդիրների ու ուղիների մշակմամբ, կազմա-
կերպելու ու ղեկավարելու նրանց տնտեսական ու հասարակական վիթխարի
գործունեությունը։

Սոցիալիստական վերնաշենքի հետագա զարգացման ու կատարելագործ-
ման ուղիները գիտականորեն մշակված են ՍՄԿՊ XXI համագումարի կողմից։
«Ծավալուն կոմունիստական շինարարությունը,— արձանագրված է XXI հա-
մագումարի բանաձևում,— նյութական բարիքների առատության հետ մեկ-
տեղ, պետք է ապահովի հոգևոր կուլտուրայի իսկական հարստություն, բոլոր
մարդկանց պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ բավարարում, սոցիալիս-
տական դեմոկրատիայի հետագա զարգացում, կոմունիստական հասարակար-
գի գիտակից աշխատավորների դաստիարակություն»։

Կոմունիզմի կառուցման պրոցեսում կարևորագույն դեր է կատարում
սոցիալիստական պետությունը։ Սոցիալիստական պետականության զարգաց-
ման հիմնական ուղղությունը ժամանակակից պայմաններում դեմոկրատիա-
յի հետագա զարգացումն է, տնտեսական ու կուլտուրական ղեկավարության
գործին լայն մասսաների ներգրավումը։ Շինարարության վիթխարի պլան-
ների իրագործման խնդիրը ժամանակակից պայմաններում ավելի է բարձ-
րացնում Սովետական պետության հիմնական ֆունկցիան՝ տնտեսական պրո-
ցեսների ղեկավարությունն ու վերահսկողությունը, նրա կազմակերպչական
ու դաստիարակչական դերը։ Միաժամանակ մի շարք ֆունկցիաներ աստիճա-
նաբար պետական օրգաններից անցնում են հասարակական կազմակերպու-
թյուններին, որոնք պետական օրգանների հետ միասին լայն գործունեություն
են ծավալում հասարակական կարգի պահպանման, մասսաների դաստիա-
րակման, կուլտուրական սպասարկման և այլ բնագավառներում։ Մասսանե-
րի, հասարակական կազմակերպությունների ակտիվ մասնակցությունը պե-
տական գործերին, պետական ֆունկցիաների մի մասի անցումը նրանց՝
պայմաններ են ստեղծում կոմունիստական ինքնավարության ծավալման

համար, այն հաշվով, որպեսզի աստիճանաբար արմատավորվի ու տիրապետող դառնա կառավարման կոմունիստական սիստեմը։

Վ. Ի. Լենինը ընդգծում էր պետության մահացման պրոցեսի տևականությունը, նրա կախվածությունը կոմունիզմի բարձրագույն փուլի զարգացման արագությունից, ուսուցանելով, որ «պետությունը լիովին մահանալ կկարողանա այն ժամանակ, երբ հասարակությունը կիրականացնի՝ «յուրաքանչյուրն ըստ իր ընդունակությունների, յուրաքանչյուրին ըստ իր պահանջմունքների» կանոնը, այսինքն՝ երբ մարդիկ այն աստիճան կսովորեն համակեցության հիմնական կանոնները պահպանել, և երբ նրանց աշխատանքն այնքան արտադրողական կլինի, որ նրանք հոժարակամ կսկսեն աշխատել ըստ ընդունակությունների» (Երկեր, հ. 25, էջ 610—611)։ Սովետական հասարակության զարգացման ներկա մակարդակը դեռևս չի ապահովում կոմունիզմի այդ սկզբունքների իրականացումը, հետևաբար պետությունը պետք է ամրապնդի իր դերը տնտեսական շինարարության ղեկավարման, սովետական օրինականության պահպանման, մասսաների դաստիարակման նպատակով։ Սովետական պետության ամրապնդման անհրաժեշտությունը թելադրվում է նաև արտաքին հանգամանքներով։ Ագրեսիվ իմպերիալիստական լագերի առկայությունը հրամայական է դարձնում պետության ֆունկցիայի հետագա ամրապնդման խնդիրը՝ երկրի պաշտպանությունը կազմակերպելու ու ամրապնդելու ուղղությամբ։ Պետության մահացման հարցը կապված է սոցիալիստական հասարակարգի ներքին և արտաքին իրադրության հետ։ Դա տևական պրոցես է։ Պետությունը լիովին կմահանա կոմունիստական հասարակության բարձրագույն փուլում և արտաքին վտանգի բացակայության պայմաններում։

Սոցիալիզմից կոմունիզմին անցման ժամանակաշրջանում բարձրանում է սոցիալիստական վերնաշենքի դերը աշխատավորներին կոմունիստական ոգով դաստիարակելու, մարդկանց գիտակցության և վարքի մեջ կապիտալիզմի մնացուկները վերացնելու, կոմունիստական բարոյականության նորմերն արմատավորելու բնագավառում։ Կոմունիստական հասարակության կառուցման պրոցեսը միաժամանակ ամբողջ հասարակության հոգևոր կյանքի զարգացման ու վերափոխման, աշխատավորների մեջ կոմունիստական աշխարհայացքի արմատավորման պրոցես է։ Կոմունիստական շինարարությունը միլիոնավոր աշխատավորների կենդանի ստեղծարար գործունեությունն է։

Կոմունիզմի կառուցման ոգեշնչողն ու կազմակերպիչը Կոմունիստական պարտիան է, որի ղեկավար դերի նշանակությունն ավելի է բարձրանում պատմական այդ մեծագույն խնդրի կենսագործման մեջ։ Պարտիայի անպարտելի ուժը կայանում է նրանում, որ նա իր գործունեության մեջ առաջնորդվում է մարքս-լենինյան գիտությամբ և հենվում բանվոր դասակարգի, ամբողջ աշխատավոր ժողովրդի կոլեկտիվ մտքի ու բանականության, նրա հարուստ փորձի վրա։ Լինելով ժողովրդի փորձված առաջնորդն ու հասարակական կազմակերպության բարձրագույն ձևը, պարտիան մշակում է և կենսագործում կոմունիստական շինարարության պլանները, ղեկավարում և ծավալում ամեն մի ստեղծագործական նախաձեռնություն ու փորձ, դաստիարակում ու ղեկավարում մասսաներին, ուղղելով նրանց ամբողջ գործունեությունը կոմունիստական հասարակության կառուցմանը։ Պարտիայի և ժողովրդի անխախտ կապը կոմունիզմի հաղթանակի մեծագույն երաշխիքն է։

---

# ԷՋԵՐ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՀԱՅ ՄԱՄՈՒԼԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

Հ. ՑՈԼԱՔՅԱՆ

«Վերցրեք դաշնակցության պատմությունը,—գրում էր բոլշևիկյան «Կարմիր Աստղ» լրագիրը,—թերթեցեք այն ուշի ուշով և դուք բացի լաց ու կոծից, բացի հարյուր հազարավոր անմեղ զոհերից և նույնքան մայրերի ու քույրերի լաց ու կոծից լավ բան պարունակող էջ չեք գտնի»[1]։ Այդպիսի բազմաթիվ արյունոտ էջեր գրվեցին Հայաստանում դաշնակների տիրապետության տարիներին, երբ երկիրը դարձել էր ողբի ու որբի, սովի ու սրի, անվերջ պատերազմների ու ազգամիջյան կոտորածների վայր։

Հայաստանի պրոլետարիատն ու չքավոր գյուղացիությունը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ռևոլյուցիոն անողոք պայքար ծավալեցին դաշնակների բռնապետության դեմ։ Այդ պայքարում պարտիական կազմակերպություններին զգալի օգնություն էր ցույց տալիս բոլշևիկյան հայ պարբերական մամուլը՝ ո՛չ միայն իբրև կոլեկտիվ պրոպագանդիստ ու ագիտատոր, այլև որպես կոլեկտիվ կազմակերպիչ։

Բոլշևիկյան հայերեն թերթերը նկարագրում ու վերլուծում էին այն ծայրաստիճան թշվառ, խրավազուրկ վիճակը, որի մեջ գտնվում էր Հայաստանի աշխատավորությունը, բացահայտում էին այդ վիճակը ծնող պատճառները, միաժամանակ նշելով դրանից դուրս գալու ուղիները։

«Խոսք» (Երևան), «Լոռվա գյուղացիության ձայնը» (Հաղպատ), «Կոմունիստ» (Բաքու), «Պահակ» (Թիֆլիս) և մյուս բոլշևիկյան թերթերի՝ «Բանվորական կյանք», «Գավառական կյանք» և այլ բաժիններում զետեղված բազմաթիվ թղթակցությունները, նամակները, հոդվածները զգալի փաստական նյութ են տալիս բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության աննինա շահագործման, գյուղատնտեսության աննկարագրելի քայքայման ու փլուզման վերաբերյալ։

««Պահակի» խմբագրությունը,—գրված է թերթի առաջնորդող հոդվածներից մեկում,—ստանում է Հայաստանից մի շարք թղթակցություններ, որոնք նկարագրում են կառավարության և առհասարակ «իշխանություն ունեցողների» վերաբերմունքը դեպի բանվորական կազմակերպությունները։ Այդ վերաբերմունքը միանգամայն թշնամական է»։ Այնուհետև նշելով, որ բոլոր միջոցներով հալածվում ու հողմացրիվ են արվում բանվորական կազմակերպությունները, թերթը եզրակացնում էր. «Բանվոր դասակարգը, որպես դա-

[1] «Կարմիր Աստղ», Կրասնոդար, 1920 թ., № 27

սակարգ գտնվում է ճորտացման վիճակում—ահա այն ահռելի հակասությունը, որ ...գերեզման է փորում «սոցիալիստ» տիրողների համար...» [1]:

Բազմիցս անդրադառնալով Հայաստանի գյուղերում տիրող թշվառության ու իրավազրկության, «Կոմունիստ»-ը ընդգծում էր, որ ստեղծված վիճակից միակ ելքը սոցիալիստական ռևոլյուցիան է, որը «միայն վերջ կտա գյուղի ներկա սոսկալի դրության. կվերանա շահագործումը թե՛ ներքին սարդերի ու կուլակների, սպեկուլյանտների ու ավազակ պաշտոնյաների, և թե՛ կանզորանան իմպերիալիստների ճիրանները, որոնց մեջ սեղմված է Հայաստանի ընչազուրկ գյուղացիությունը» [2]:

Սոցիալիստական ռևոլյուցիայի անհրաժեշտության և անխուսափելիության գաղափարը պրոպագանդելիս բոլշևիկյան հայ մամուլը մեծ ուշադրություն էր դարձնում այդ ռևոլյուցիայի հաղթանակի կարևոր պայմանը հանդիսացող բանվորա-գյուղացիական դաշինքի հետագա ամրապնդման ու կոփման վրա: Այդ դաշինքի կենսունակությունն ապացուցված էր Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի և քաղաքացիական կռիվների պատմական փորձով: Հենց այդ փորձի վրա էլ բոլշևիկյան թերթերը Հայաստանի բանվորներին ու չքավոր գյուղացիներին ուսուցանում էին «հայրենի» և օտարերկրյա ճնշողների ստրկական լծից ազատագրվելու միակ ճիշտ ուղին, կոփում նրանց ռևոլյուցիոն դաշինքը: «Ինչո՞ւ է հաղթում հեղափոխությունը Ռուսաստանում, —հարցնում էր «Լոռվա գյուղացիության ձայնը» թերթը և պատասխանում. —Նրա համար, որ այնտեղ բանվորությունն ու աղքատ, աշխատավոր գյուղացիությունը ձեռք-ձեռքի տված՝ միասին, միաբան կռվում են ընդհանուր թշնամու դեմ»: Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի գրավականը բանվորագյուղացիական դաշինքի ամրապնդման մեջ է, ուրեմն՝ պետք է կոփել այդ դաշինքը նաև մեզ մոտ,—այս էր թերթի հիմնական եզրակացությունը. «Մեր ... աղքատ, աշխատավոր գյուղացիությունը նույնպես շատ լավ հասկացել է, որ իր փրկության, ազատության ճանապարհը բանվորի ու գյուղացու կոշտ ձեռքերի և կռվի անսպառ եռանդի միության մեջ է:

Կեցցե՛ բանվորա-գյուղացիական եղբայրությունը, միությունը» [3]:

Բանվորական, գյուղացիական ու զինվորական կյանքի վերաբերյալ տպագրած հոդվածներով, թղթակցություններով, հաղորդագրություններով ու նամակներով բոլշևիկյան հայ թերթերը պարտիական կազմակերպություններին հաղորդակից էին դարձնում մասսաների տրամադրությանը, ձգտումներին ու պահանջներին: Դրանով նրանք օգնում էին ռևոլյուցիոն ուժերին՝ ինչպես ընդօրինակելու դրական և ուսանելի փորձը, այնպես էլ ուշադրությունը կենտրոնացնելու աշխատանքի տարբեր բնագավառներում նկատվող թույլ օղակների վրա: Դա զգալիորեն նպաստում էր աշխատավոր մասսաների հետ բոլշևիկյան կազմակերպությունների կապի հետագա ամրապնդմանը և պարտիայի կողմից նրանց առջև դրված քաղաքական-կազմակերպական խնդիրների պրակտիկ կենսագործմանը: Դա լավագույն ապացույցներից մեկն էր այն բանի, որ բոլշևիկյան մամուլը նաև կոլեկտիվ կազմակերպիչ է: Բոլշևիկյան հայ

[1] «Պահակ», ՌԿ(բ)Պ Կովկասյան երկրային կոմիտեի օրգան, Թիֆլիս, 1920 թ., № 10:

[2] «Կոմունիստ», Ադրբեջանի Կոմպարտիայի Կենտկոմի և Բաքվի կոմիտեի օրգան, Բաքու, 1920 թ., № 1:

[3] «Լոռվա գյուղացիության ձայնը», Հաղպատի բոլշևիկյան կազմակերպության օրգան, 1920 թ., № 1:



մամուլի էջերում տպագրվել են բանվորական, զինվորական և գյուղացիական ժողովների ու միտինգների բազմաթիվ որոշումներ, արձանագրություններ, բանաձևեր, որոնք ինչ-ինչ պատճառներով չեն պահպանվել մեր արխիվներում:

1918—1920 թվականների բոլշևիկյան հայ պարբերական մամուլը բազմակողմանի ու կոնկրետ քննադատության էր ենթարկում դաշնակցության «պետական» գործելակերպը: Այդ գործելակերպի հետևանքով տնտեսական ծայրաստիճան քայքայումն ու փլուզումը, գործազրկությունը, տարափոխիկ հիվանդություններն ու համաճարակը, սովն ու ահռելի չափերի հասնող մահացությունը, ավազակությունը, գողությունը, թալանն ու մարդասպանությունը դարձել էին «դաշնակցական դրախտի» անխուսափելի և օրինավոր ուղեկիցները: Ըստ որում, անհրաժեշտ է ընդգծել, որ բոլշևիկյան թերթերը չէին սահմանափակվում բնորոշ փաստերի լոկ նկարագրությամբ: Նրանց համար կարևորն ու առաջնակարգը դա՛ չէր, իհարկե: Էականը փաստերի վերլուծումից արված քաղաքական հետևությունններն էին:

Առաջին հանգամանքը, որ աչքի էր զարնում, դա ամբողջ Հայաստանում մոլեգնող սովն ու համաճարակ հիվանդություններն էին և դրանց անխուսափելի հետևանքը հանդիսացող համատարած մահացությունը: Բնորոշելով ստեղծված իրադրության պայմաններում բոլշևիկյան մամուլի առջև դրված խնդիրը, «Խոսք»-ը գրում էր. «Պետք է գրի առնել բոլոր կատարված դեպքերն ու փաստերը, որպեսզի ապագա անաչառ պատմաբանը առատ նյութ ունենա ճշգրտորեն պատկերացնելու ժողովրդի ներկա վիճակը, նրա պատճառները, և գնահատի ներկա մեր հասարակական ու քաղաքական գործիչների «արժանիքները»» [1]:

Ինչպես հասարակության մեջ տեղի ունեցող մյուս բոլոր երևույթներին, այնպես էլ սովի և համաճարակների հարցին բոլշևիկյան մամուլը ցուցաբերում էր մարքսիստական մոտեցում, ընդգծելով, որ այդ չարիքների արմատը ևս պետք է փնտրել կապիտալիստական սիստեմի, դաշնակցական կառավարության բուրժուա-կուլակային էության մեջ: Այս առումով խիստ արժեքավոր է «Խոսք»-ում տպագրված «Ուրիշ ելք չկա» առաջնորդող հոդվածը [2]: Նկարագրելով երկրում մոլեգնող սովը և խոլերայի, բծավոր տիֆի ու ժանտախտի մահաբեր հետևանքները, թերթը պատկերավոր կերպով ընդհանրացնում էր ստեղծված դրությունը. «Հայաստանի տերիտորիան դարձել է մի խոշոր հիվանդանոց»: «Ամեն մի հիվանդություն իր վրա կրում է հասարակական երևույթի կնիքը...,—բացատրում էր թերթը:—Հասարակական չարիքը արմատախիլ անելու համար անհրաժեշտ են կտրուկ, արմատական, անխնա, հեղափոխական միջոցներ ու քայլեր»: Իսկ որո՞նք էին այդ հեղափոխական միջոցներն ու քայլերը. հասարակական չարիքի բուն պատճառը հանդիսացող բուրժուազիայի տիրապետության, դաշնակցական կառավարության տապալումն ու բանվորա-գյուղացիական իշխանության հաստատումը: «Նրա տեղ,—գրում էր թերթը դաշնակցական կառավարության մասին,—մեղադրյալների նստարանն է. և պե՛տք է, վերջապես, մի գեղեցիկ օր նստեցնել նրան այդ նստարանի վրա»:

Բացահայտ հափշտակումները, կողոպուտն ու թալանը, պաշտոնների ամենալկտի չարաշահումները ոչ թե մասնակի, պատահական բնույթ էին

[1] «Խոսք», Երևանի բոլշևիկյան կազմակերպության օրգան, 1919 թ., № 1:

[2] Տես «Խոսք», 1918 թ., № 3:

կրում դաշնակցական Հայաստանում, այլ դարձել էին օրինաչափ երևույթ և ընդգրկել կառավարական օրգանները՝ վարից մինչև վեր։ Բոլշևիկյան թերթերը մերկացնում էին դաշնակցական կառավարության ավազակային-թալանչիական գործելակերպը, որը Հայաստանը դարձրել էր «անարխիայի մատնված մի երկիր, ուր ոչ միայն որևէ օրենսդրություն չկա, այլ ուր օրենքը մաուզերի խողովակից է դուրս գալիս՝ ամեն անգամ իբրև արդյունք առանձին քմահաճույքի» [1]։

«Փաստերը գալիս են ապացուցանելու,— ընդհանրացնում էր «Կարմիր Աստղ»-ը,—որ դաշնակցական կառավարությունը ոչ միայն աղգավաճառ է եղել իր քաղաքականության մեջ, այլև ավազակային կառավարություն՝ իր գործունեության ժամանակ։ Պաշտոնների մեջ գողությունը, պետական պարենների սպեկուլյացիան, աղքատ ժողովրդի համիդյան կողոպուտը սովորական երևույթ են համարվել Երևանյան Նախկին պառլամենտում։ Այն տեղն է հասել, որ օգտավետ պաշտոնները նույնիսկ վաճառվել են։ Ահա «մեր» դաշնակցական Հայաստանի «ազգի փրկությունը»։ Ահա հայ աշխատավորի ու գյուղացու անունից խոսող երեսունհինգամյա «հեղափոխական» կուսակցության իսկական պատկերը» [2]։

Դաշնակցական կառավարության և մինիստրների թալանչիական այդ գործելակերպը կոնկրետ փաստերի հիման վրա մերկացնում ու քննադատում էր մասնավորապես Բաքվի «Կոմունիստ»-ը՝ բազմաթիվ ինֆորմացիաներում ու թղթակցություններում, որոնցից արժեքավոր է, հատկապես, «Մահ կամ թալան» բնորոշ վերնագրով հոդվածը (1920 թ., № 58)։ «Թալանը,—նշվում էր հոդվածում,—Հայաստանի պետական հասկացողությամբ քրեական բնույթ չի կրում, այլ նրա հիմքերի, նրա ամբողջ կյանքի այբուբենն է կազմում»։

Ո՞րն էր ելքը ստեղծված դրությունից։ Որոշ միամիտներ, բուրժուական աչքակապությունից մոլորված, կարծում էին, թե փրկությունը պետք է սպասել «Նորին մեծություն» հայոց կառավարությունից։ Այսպես, օրինակ, Ղազախի գավառի Հայրենակցական Միությունը ընդունեց մի բանաձև, որով կառավարությունից պահանջում էր անմիջապես ձերբակալել գավառի ամբողջ ադմինիստրացիան և դատի հանձնել այն բազմաթիվ ոճրագործներին, որոնք թեպետ արձակվել էին պաշտոնից, բայց մնում էին անպատիժ։ Այս բանաձևի կապակցությամբ «Պահակ»-ը տպագրեց «Ովքե՞ր են հանցավորները» վերնագրով առաջնորդող հոդվածը, որը իրավամբ կարելի է համարել նախասովետական հայ բոլշևիկյան հրապարակախոսության փայլուն օրինակներից մեկը։ Նկարագրելով Ղազախ-Շամշադինի շրջանում ստեղծված տնտեսական, իրավական ու կուլտուրական ծայրաստիճան քայքայված վիճակը, թերթը ընդհանրացնում էր. «Այս է Ղազախ-Շամշադինի ընդհանուր պատկերը։ Բայց պետք է շեշտել, որ Հայաստանի բոլոր գավառներն էլ նույն վիճակումն են գտնվում... Ամբողջ Հայաստանում տիրում է անարխիա, սով, և ժողովուրդը մատնված է դանդաղ ոչնչացման...»։

Պատասխանելով այն հարցին, թե ովքեր են հանցավորները և վերլուծելով Ղազախի Հայրենակցական Միության վերոհիշյալ բանաձևը, թերթը պարզաբանում էր. «Բայց այդ դեպքում պետք է դատի հանձնել Հայաստանի բոլոր գավառների ադմինիստրացիան, որովհետև ամեն տեղ նույն թալանն է և հանցավոր գործունեությունը։

[1] «Պահակ», 1920 թ., № 10։

[2] «Կարմիր Աստղ», ԲԿ(բ)Պ Կուբանո-Չերնոմորյան սեկրետարիատին կից արևելյան ազգությունների բաժնի օրգան, Կրասնոդար, 1921 թ., № 44։



Ավելի քան միամտություն կլինի, սակայն, այդպիսի մի պահանջ ներկայացնել մի կառավարության, որն ինքն է չարիքների իսկական և միակ աղբյուրը։ Դաշնակցության ստեղծած մինիստրությունը տեղերում միայն գրնդակահարման և տաժանակիր աշխատանքի արժանի իշխանություն կարող էր ստեղծել և ստեղծեց»։

Հանցավորներին հայտաբերելուց և մերկացնելուց հետո թերթը նշում էր նաև այն միջոցը, որով պետք է պատժել նրանց և, այդպիսով, փրկել ժողովրդին։ Այդ միջոցը սոցիալիստական ռևոլյուցիան էր, դաշնակների բռնապետության տապալումը և բանվորա-գյուղացիական իշխանության ստեղծումը։ «Պետք է խորտակել դաշնակցության հանցավոր տիրապետությունը,—գրում էր թերթը,—որովհետև միայն այդպիսով Հայաստանի ժողովրդական լայն մասսաները հնարավորություն կստանան ընդհանուր ուժերով իրենց տնտեսական-քաղաքական կյանքը բարելավելու... Պետք է պատժել նախ խոշոր հանցավորներին, որոնցից սնվում են մնացած բոլոր սրիկաները Հայաստանի բոլոր անկյուններում» [1]։

***

Բոլշևիկյան հայ պարբերական մամուլի պատմության մեջ առանձնահատուկ տեղ է գրավում Անդրկովկասում, մասնավորապես, Հայաստանում անգլո-ամերիկյան իմպերիալիստների վարած գաղութարարական քաղաքականության դեմ մղված պայքարը։ Այդ պայքարի նշանակությունն ավելի ակնառու է դառնում, եթե նկատի ենք ունենում, որ դաշնակցական կառավարությունը և Հայաստանի բուրժուա-նացիոնալիստական բոլոր երանգի պարտիաներն իրենց ստահոդ պրոպագանդայի հիմք էին դարձրել այն «գաղափարը», թե «անկախ» Հայաստանի փրկությունը պիտի ակնկալել միայն ու միայն «քաղաքակիրթ» Արևմուտքից, «մարդասեր» Անգլիայից ու Ամերիկայից։ Մոբիլիզացիայի էին ենթարկվել բուրժուազիայի բոլոր վարձկան գրչակները, որոնք, ինչպես սրամիտ կերպով նշել է «Պահակ» թերթը, պիտի ջանային աչքեր կուրացնել, սպիտակը սևացնել և արեգակը արևմուտքից ծագեցնել, միայն թե կարողանային խաբել բանվոր դասակարգին կովի ճանապարհից շեղելու համար» [2]։

Բուրժուազիայի դասակարգային շահերը պաշտպանող կառավարությունները, եզրակացնում էր բոլշևիկյան հայ մամուլը, չեն կարող օգնության ձեռք մեկնել այլ երկրների աշխատավոր մասսաներին։ Այս ճշմարտությունը հրապարակախոսական հետաքրքիր ձևով արտահայտված է Ն. Զուբարի «Ազատիչները» վերնագրով հոդվածում («Կոմունիստ», Բաքու, 1920 թ., № 89)։ Նշելով, որ հայ ժողովրդի «ազատիչները շնից էլ շատ են», հեղինակը գրում էր. «Իսկապես, էլ ո՞վ, որ երկնքի և երկրի բոլոր սրբություններով չերդվեր, թե ինքը՝ «Քրիստոս տերը վկա», «ցիվիլիզացիան վկա», «մարդասիրությունը վկա», «պատիվը վկա», կմեռնի, բայց կազատի «բազմատանջ հայ ժողովրդին

[1] «Պահակ», 1920 թ., № 23։

[2] «Պահակ», 1920 թ., № 3։

ափական բարբարոսության շղթաներից»: Վերջապես այնքան «ազատիչներ ու փրկիչներ» քաշեցին ու քաշքշեցին հայ աշխատավոր ժողովրդին, որ այսօր Հայաստանի գյուղացիներն ու բանվորները ոտքի են ելել և ասում են. «Հարգելի ու բարեխիղճ պարոննե՛ր, դադարեցե՛ք: Բավական է, որքան դո՛ւք մեզ ազատեցիք, թույլ տվեք, որ մի քիչ էլ մենք ինքնե՛րս մեզ ազատենք»»:

Աշխատավորական մասսաներին պարզաբանելով Անդրկովկասում և, մասնավորապես, Հայաստանում անգլո-ամերիկյան իմպերիալիստների հետապնդած նպատակները, բոլշևիկյան թերթերը բացահայտում էին այդ նպատակների երկակի բնույթը. մի կողմից ճնշել բանվորա-գյուղացիական շարժումները, արմատախիլ անել բոլշևիզմը՝ ստեղծելով Սովետական Ռուսաստանի վրա հետագա հարձակման հուսալի բազա. մյուս կողմից՝ կողոպտել երկրամասի բնական հարստությունները: Ըստ որում, շեշտվում էր, որ գաղութարարներն ամենուրեք գտնում էին իրենց վստահելի և հմուտ կամակատարներին, հանձինս դաշնակցական, մենշևիկյան ու մուսավաթիստական մարիոնետային «կառավարությունների» և բուրժուա-նացիոնալիստական պարտիաների: Այս վերջին հանգամանքը կարևոր նշանակություն էր ստանում բոլշևիկյան մամուլի համար Անդրկովկասի ներքին ու արտաքին կոնտրռևոլյուցիոն ուժերի դեմ բանվորա-գյուղացիական մասսաների միաժամանակյա ռևոլյուցիոն պայքարը կազմակերպելու առումով:

Քննադատելով օտարերկրյա իմպերիալիստների քաղաքականությունն Անդրկովկասում, բոլշևիկյան թերթերը առանձնապես շեշտում էին այն կապը, շահերի այն միասնությունը, որ գոյություն ուներ գաղութարարների և Անդրկովկասի բուրժուա-կալվածատիրական դասակարգերի ու նրանց շահերն արտահայտող պարտիաների միջև: Իրենց զորքերը խցկելով Անդրկովկաս, ընդգծում էր «Կարմիր Դրոշակ»-ը, իմպերիալիստները «...պատերազմների, սովի, սպանությունների, բանտերի միջոցով պաշտպանում էին իրենց սեփական կապիտալիստների, բանկիրների ու Բաքվի նավթարդյունաբերողների, թուրքական բեկերի, վրացական կնյազների, հայ բուրժուաների շահերը» [1]: Այնուհետև նշելով, որ Անդրկովկասի աշխատավոր մասսաների համար պարզ պետք է լինի, որ «մանր ազգությունների պաշտպան» իմպերիալիստական տերությունները «գիշատիչ գայլեր են գառան մորթու տակ», թերթը շարունակում էր. «Նրանց համար պարզ պետք է լինի նույնպես, որ վրացի և ռուս մենշևիկներն ու էսէռները, թուրք մուսավաթիստներն ու հայ դաշնակցականները այդ գայլերի հլու ծառաներն են, որ շարունակ անամոթ կերպով խաբում են իրենց ժողովուրդներին...»:

Բոլշևիկյան հայ մամուլը անդուլ կերպով պրոպագանդում էր այն միտքը, թե Անդրկովկասի ժողովուրդների ազատագրության շահերը պահանջում են ռևոլյուցիոն պայքար մղել ինչպես տեղի բուրժուական կառավարությունների ու պարտիաների, այնպես էլ օտարերկրյա գաղութարարների դեմ:

1 «Կարմիր Դրոշակ», 1919 թ., № 7:



* * *

Բոլշևիկյան հայ մամուլը միշտ էլ ուշադրության կենտրոնում է պահել աշխատավորության ինտերնացիոնալ դաստիարակության կարևորագույն խնդիրը, որն առանձնահատուկ նշանակություն էր ստանում Անդրկովկասի պայմաններում:

Պայքարը բուրժուական նացիոնալիզմի դեմ բոլշևիկյան մամուլը դիտում էր իբրև սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար մղվող ընդհանուր պայքարի կարևորագույն օղակներից մեկը, ազգային հարցի վերջնական լուծումը կապելով պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման, իշխանությունն Անդրկովկասի մարիոնետային «ռեսպուբլիկաներում» բանվորներին ու չքավոր գյուղացիներին հանձնելու հարցի հետ: Նացիոնալիզմի ամեն մի արտահայտության դեմ բոլշևիկյան թերթերը կիրառում էին պայքարի յուրահատուկ եղանակ՝ իրենց ինտերնացիոնալիստական պրոպագանդայի հիմք դարձնելով «ազգային» կառավարությունների շովինիստական քաղաքականության դրսևորման կոնկրետ փաստերի վերլուծությունն ու քննադատությունը: Այս հանգամանքը բոլշևիկյան թերթերի ագիտացիոն-պրոպագանդիստական գործունեությանը հաղորդում էր կազմակերպչական ուժ, աշխատավորության ինտերնացիոնալ դաստիարակությունը դարձնելով մաքսիմում չափով նպատակասլաց՝ ռևոլյուցիոն պայքարի տվյալ պայմաններին ու աստիճանին համապատասխան:

1918—1920 թվականների բոլշևիկյան հայ պարբերական մամուլում տպագրվել են զգալի թվով նյութեր, որոնք մերկացնում են ազգային ընդհարումներ կազմակերպողներին, դաշնակցական Հայաստանի և մենշևիկյան Վրաստանի միջև ծագած ռազմական կոնֆլիկտը հրահրողներին՝ անգլո-ֆրանս-ամերիկյան գաղութարարներին և նրանց հլու կամակատար դաշնակներին, մուսավաթիստներին ու մենշևիկներին:

Բոլշևիկյան թերթերը նացիոնալիզմի դեմ մղվող պայքարում որոշակի տեղ էին հատկացնում աշխատավոր գյուղացիներից ստացված նամակների տպագրությանը: Դա ո՛չ միայն ավելի էֆեկտիվ էր դարձնում այդ պայքարը, այլև նպաստում էր մասսաների հետ մամուլի ունեցած կապերի հետագա ամրապնդմանը, չքավոր գյուղացիությանը ներգրավում էր ակտիվ քաղաքական պայքարի մեջ, առաջ էր քաշում նորանոր աշխատավորական թղթակիցներ: Այդ նամակները միաժամանակ ցույց են տալիս, թե ի՛նչ գնահատականի էր արժանանում բոլշևիկյան մամուլի գործունեությունը աշխատավոր մասսաների շրջանում, ի՛նչն էր ավելի շատ հուզում ու հետաքրքրում նրանց, ո՛ր հարցերի վրա էր պետք ավելի մեծ ուշադրություն դարձնել և այլն:

1918—1920 թվականների բոլշևիկյան հայ պարբերական մամուլում հատուկ տեղ է գրավում Կոմունիստական պարտիայի և նորաստեղծ Սովետական կառավարության ազգային քաղաքականության պրոպագանդան: Անդրկովկասի բազմազգ աշխատավորական մասսաների կողմից այդ քաղաքականության ճիշտ ըմբռնումն ու մեկնաբանումը պրոլետարիատի դիկտատուրայի համար նրանց մղած պայքարի հաղթության կարևորագույն նախապայմաններից մեկն էր: Բոլշևիկյան հայ թերթերը աշխատավորական ամենալայն մասսաներին էին հասցնում Կոմունիստական պարտիայի համագումարների ու կոնֆերանսների հիմնական որոշումները ազգային հարցի մասին: Նրանք ընդ-

գծում էին, որ միայն բոլշևիկների պարտիան է, որ ճշմարիտ, արդարացի կերպով դնում և լուծում է ազգային հարցը։ Ազգային հարցի վերջնական լուծումը բոլշևիկյան հայ մամուլը կապում էր սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի հարցի հետ։ «Ազգերի ազատագրության գործը,—եզրակացնում էր «Կոմունիստ» շաբաթաթերթը,—միայն և միմիայն սոցիալիստական հեղափոխության գործն է»[1]։

Նացիոնալիզմի միակ գերեզմանափորը բանվորա-գյուղացիական ռևոլյուցիան է, որի շահերը պահանջում են աշխատավորների ինտերնացիոնալ միասնություն. այս էր այն գործնական եզրակացությունը, որին հանգում էր բոլշևիկյան հայ պարբերական մամուլը։

***

Ձնշված Մայիսյան ապստամբության ճնշման ժամանակ կրած ծանր կորուստներին, Հայաստանի կոմունիստական կազմակերպությունները, վերականգնելով իրենց ուժերը, ՌԿ(բ)Պ Կենտկոմի, Կովկասյան Բյուրոյի և ՀԿ(բ)Պ Կենտկոմի ղեկավարությամբ, բանվորներին ու աշխատավոր գյուղացիությանը մոբիլիզացնում էին հանուն սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի։ Այդ աշխատանքը դաշնակցական սպիտակ տեռորի և իդեոլոգիական ռեակցիայի պայմաններում պահանջում էր ուժերի գերագույն լարում և բոլոր հնարավորությունների հմուտ օգտագործում։

Բոլշևիկյան հայ պարբերական մամուլը զգալի օգնություն ցույց տվեց Հայաստանի կոմունիստական կազմակերպությանը։

Ուսումնասիրելով մայիսյան ապստամբությունից հետո մինչև Հայաստանում Սովետական իշխանության հաստատումն ընկած ժամանակաշրջանում բոլշևիկյան հայ թերթերի գործունեությունը, կարելի է բնորոշել այն հիմնական խնդիրը, որ դրված էր նրանց առջև և որի իրագործման ուղղությամբ էլ ընթացել է նրանց ամբողջ աշխատանքը. մասսաների մեջ վառ պահել սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի հավատը, կամք ու կորով ներշնչել նրանց՝ ընթանալու միակ ճիշտ, միակ փրկարար ուղիով՝ դասակարգային պայքարի ուղիով, որը նրանց հասցրեց դաշնակցական բռնապետության վերջնական տապալմանը և բանվորա-գյուղացիական իշխանության հաստատմանը Հայաստանում։

Նշելով, որ հայ աշխատավորական մասսաներն անդառնալիորեն բռնել են ռևոլյուցիոն պայքարի ուղին, «Կոմունիստ»-ը Մայիսյան ապստամբության վայրագ ճնշումից հետո անխախտ համոզմունքով գրում էր. «...Դասակարգային ինքնագիտակցությունը և հեղափոխական ոգին չմեռավ հայ գյուղացու, բանվորի և զինվորի մեջ։ Ձնշված դաշնակցական բանդաները կողոպտեցին, կոտորեցին և բռնաբարեցին հայ գյուղացու տունն ու ընտանիքը, բռնության լծից ազատվելու ցանկությունը վառ մնաց նրա մեջ»[2]։

1920 թվականի հոկտեմբերին բոլշևիկյան մամուլում հրապարակվեց ՀԿ(բ)Պ Կենտկոմի կոչը՝ ուղղված Հայաստանի բանվորներին ու գյուղացիներին[1]։

[1] «Կոմունիստ», Մոսկվա, 1918 թ., № 1։

[2] «Կոմունիստ», Բաքու, 1920 թ., № 23։



Կոչում մանրամասն տրված էր Մայիսյան ապստամբությունից հետո Հայաստանում ստեղծված իրադրության վերլուծությունը։ Մայիսյան ապստամբության ժամանակ, նշված էր կոչում, կապիտալի հավելյալ արժեքով հղփացած դաշնակցությունը հայ աշխատավորությունից պահանջեց նաև «հավելյալ արյուն»։ Հայաստանի խուլ անկյուններում գնդակահարվեցին տասնյակ հարյուրավոր բանվորներ ու գյուղացիներ, նրանց օջախները քարուքանդ եղան ավազակ խմբապետների ձեռքով։ Գնդակահարվեցին բոլշևիկյան կազմակերպությունների մի շարք ղեկավարներ, բանտ նետվեցին հարյուրավոր ռևոլյուցիոն բանվորներ ու գյուղացիներ։ Սակայն այդ ամենը չէր կարող ընկճել և չընկճեց ճնշված ու շահագործվող մասսաների ռևոլյուցիոն կամքը։ «Հալածված և արյունաքամ եղած Կոմունիստական կուսակցությունը չէ՝ որ պիտի ընկճվի այդ ժամանակավոր պարտությունից,— նշված էր կոչում,— Հայաստանի բանվորա-գյուղացիական մասսաները չե՛ն, որ իրենց զենքը պիտի ցած դնեն դաշնակցական ավազակախմբերի հանդեպ... Մենք դիմում ենք Հայաստանի բանվորա-գյուղացիական մասսաներին, նրանց հեղափոխական կորովին ու դասակարգային գիտակցությանը՝ կազմակերպվելու Կոմունիստական կուսակցության դրոշի շուրջը, հավաքելու ցրված հեղափոխական ուժերը, որպեսզի ձեռք-ձեռքի տված Խորհրդային Ռուսաստանի պրոլետարիատի հետ՝ միահամուռ ուժերով խորտակենք միջազգային իմպերիալիզմի հայկական-դաշնակցական հատվածի լուծը, նորից բարձրացնենք Կոմունիզմի Դրոշակը Հայաստանում»։

«Ո՞րն է ճանապարհը» վերնագրով առաջնորդողում, նշելով կոմունիստների շուրջը համախմբվելու անհրաժեշտությունը, «Պահակ»-ը ընդգծում էր, որ Հայաստանի աշխատավոր մասսաները միայն այդ ճանապարհով կհաստատեն «աշխատանքի Խորհրդային իշխանություն..., առաջին անգամ կգրեն հայ ժողովրդի արյունաշաղախ պատմության մեջ խաղաղ, կուլտուրական ու երջանիկ կյանքի նոր էջեր»[2]։

Հետևողականորեն «Կոմունիստ» թերթը կոչ էր անում ամրապնդել Անդրկովկասի աշխատավորության ինտերնացիոնալ միասնությունը, այն հակադրելով դաշնակների, մուսավաթիստների ու մենշևիկների կոնտրռևոլյուցիոն դաշինքին, կոչ էր անում նոր ուժով բորբոքել դասակարգային կռիվը Անդրկովկասի բոլոր շահագործողների դեմ։ «Այդ ընդհանուր քաղաքացիական կռվում,—գրում էր թերթը,—հեղափոխական մասսաները կտապալեն հին, արդեն փտած բուրժուա-կալվածատիրական ազգայնականության սյուները—մուսավաթին, դաշնակցությանը և մենշևիզմը։ Այդ հաջող պայքարի ընթացքում կամրապնդվեն Անդրկովկասյան Խորհրդային հանրապետության հերկուլեսյան երեք սյուները—հայ, թուրք ու վրացի բանվորա-գյուղացիական մասսաների եղբայրությունն ու միությունը»[3]։

1920 թվականի սեպտեմբերին դաշնակցական կառավարությունը անգլո-ամերիկյան իմպերիալիստների դրդմամբ բախվեց քեմալական Թուրքիայի հետ։ «Անգլո-ամերիկյան միլիտարիզմի փշրանքներով կշտացած դաշնակները,— գրում էր «Կոմունիստ»-ը,— շան հավատարմությամբ կատարում են

[1] Տե՛ս «Կոմունիստ», Բաքու, 1920 թ., № 117, «Կարմիր Աստղ», Կրասնոդար, 1920 թ., № 19։

[2] «Պահակ», 1920 թ., № 18։

[3] «Կոմունիստ», 1920 թ., № 16։

*իրենց պարտականությունը պարոն կապիտալի հանդեպ»[1]։ Սեպտեմբերի 24-ին Թուրքական ենիչերինները ներխուժեցին Հայաստան։ Հինգ օր անց նրանք գրավեցին Սարիղամիշը, սեպտեմբերի 30-ին՝ Ղարսը, նոյեմբերի 7-ին մտան Ալեքսանդրոպոլ։ Ծայր առավ խաղաղ բնակչության կոտորածն ու երկրի թալանը։*

*Պատասխանելով այն հարցին, թե ի՞նչն էր հիմնական դրդապատճառը, որը դաշնակցական կառավարությանը պատերազմի հրահրեց Թուրքիայի դեմ, «Կոմունիստ»-ը գրում էր. «Էականը նա է, որ հայ բուրժուազիայի թիկնապահ դաշնակցությունը՝ բանվորա-գյուղացիական հեղափոխության արդար դատաստանից ազատվելու համար, ստոր և վարպետ ձեռներով «տաճկական վտանգի» ու «ֆիզիկական ոչնչացման» դամոկլյան սուրն է կախում Հայաստանի աշխատավորության գլխին»[2]։ Նշելով, որ «եթե ժողովուրդը նոր արկածների ու փոթորիկների է ենթարկվել, ապա դրա մեղքն ընկնում է դաշնակցության վրա», թերթը «հեղափոխական թափ ու ուժ» ունեցող հայ ժողովրդին կոչ էր անում դաշույնը «մխրել դաշնակցության ու հայ բուրժուաների սրտին ու դաշնակցական ամպամած, արյունոտ Հայաստանից ստեղծել կարմիր, արևոտ Խորհրդային Հայաստանը. և այն ժամանակ կփրկվի հայ ժողովուրդը»։*

*1920 թվականի նոյեմբերի 29-ին Իջևանի և Դիլիջանի աշխատավորները բարձրացրին զինված ապստամբության դրոշը։ Նրանց ղեկավարում է Կոմունիստական պարտիան։ Կազմվեց Հայաստանի Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտե՝ Ս. Կասյանի նախագահությամբ։ Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն հրապարակեց դեկլարացիա, որով տապալված հայտարարվեց դաշնակների բռնակալությունը և Հայաստանում հռչակվեց Սովետական իշխանություն։*

*Բոլշևիկյան հայ թերթերը ընդգծում էին, որ դաշնակցական լծի տապալումը և Սովետական իշխանության հաստատումը Հայաստանում պատմական անխուսափելի օրինաչափություն էր։ «Այլ կերպ էլ լինել չէր կարող,— ողջունելով Սովետական իշխանության հաստատումը Հայաստանում, գրում էր «Բանվորի կռիվ» թերթը։—...Այսօր մենք կանգնած ենք հայ իրականության* **մեծ դեպքերի** *առաջ, տասնյակ տարիներ իր դաշույնով դամոկլյան սրի պես հայ ժողովրդի խղճին ու մտքին ծանրացած Հայ. Հեղ. Դաշնակցությունը անփառունակ գերեզման է իջնում։ Նրա հետ միասին բուրժուազիան—տգետ և անհեռատես իր մինչայժմյան համագործակցությամբ, որպես տերև օրորվում է դեպի մահ»[3]։*

*Տալով այդ պատմական իրադարձության ընդհանուր գնահատականը՝ «Կոմունիստ»-ը եզրակացնում էր. «Կատարվում է խոշոր, հայ աշխատավորության կյանքի տեսակետից մի պատմական դեպք։ Սա մի դարագլուխ է հայ ժողովրդի պատմության ընթացքում»[4]։*

---

[1] «Կոմունիստ», 1920 թ., № 121։

[2] «Կոմունիստ», 1920 թ., № 121։

[3] «Բանվորի կռիվ», Ռոստով-Նախիջևան, 1920 թ., № 121։

[4] «Կոմունիստ», Բաքու, 1920 թ., № 163։

## ԴԵՊԻ ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԸ

# ՀԱՆԳՍՏԱՆԱԼՈՒ ՀԻՄՔԵՐ ՉՈՒՆԵՆՔ

**Գ. ԱԼԵՔՅԱՆ**

**ՀԿՊ Մարտունու շրջկոմի քարտուղար**

*Մարտունու շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները մտնելով սոցիալիստական մրցության մեջ, կոնկրետ պարտավորություններ են ստանձնել 1959 թվականին գյուղատնտեսական մթերքների արտադրությունը ավելացնելու համար։ Շրջանի աշխատավորները պարտավորվել են ընթացիկ տարում արտադրել հացահատիկ՝ 13850, ծխախոտ՝ 876, բանջարեղեն՝ 1870, կարտոֆիլ՝ 6983, միս՝ 1591, կաթ՝ 8004 տոննա, բուրդ՝ 1323 ցենտներ, ձու՝ 501 հազար հատ։ Դրա հետ միասին նրանք պարտավորվել են ունենալ խոշոր եղջերավոր անասուններ՝ 12225 գլուխ, այդ թվում կովեր՝ 4654, ոչխարներ՝ 54570, խոզեր՝ 1367, թռչուններ՝ 17400 հատ։*

*Մրցության մեջ են մտել շրջանի 17 կոլտնտեսությունները, 2 անասնապահական սովխոզները, բրիգադաները, ֆերմաները և առանձին կոլտնտեսականներն ու բանվորները, իսկ ամբողջ շրջանը մրցում է Կամոյի շրջանի հետ։*

*Ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարելու նպատակով ստուգվեցին և ճշտվեցին արտադրական նորմաները, ամրապնդվեցին կոլտնտեսությունների և սովխոզների արտադրական բրիգադաները, նախատեսվեցին միջոցառումներ գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու համար։*

*1959 թվականին պատրաստվեց 1500 հեկտար մեքենահարմար դաշտ և 2500 հեկտար մաքրվեց քարերից, որը նպաստեց գյուղատնտեսական մեքենաների ռացիոնալ օգտագործմանն ու բերքատվության բարձրացմանը։ Դաշտ տեղափոխվեց 24400 տոննա օրգանական և 1056 տոննա հանքային պարարտանյութ։ Որոշ աշխատանք կատարվեց ոռոգման ռեժիմը կարգավորելու, անջրդի տարածությունները ջրովի դարձնելու և, ընդհանրապես, այդ գործը բարելավելու ասպարեզում։ Այժմ եղած ցանքատարածությունների 62 տոկոսը ջրովի է։*

*Ագրոտեխնիկական կարևոր միջոցառումներից են խոտացանությունը և ճիշտ ցանքաշրջանառությունը։ Մարտունու շրջանի համար դրանք ունեն կենսական նշանակություն, քանի որ ճիշտ ագրոկանոններ չկիրառելու հետևանքով հողերի զգալի մասը փոշիացել է, մոլախոտերով վարակվել։ Շրջանի 17 կոլտնտեսություններից 16-ում 1958 թվականին ավարտվել են ցանքաշրջանառության կիրառման նախապատրաստական աշխատանքները. սակայն այժմ միայն Վաղաշենի կոլտնտեսությունն է իրացրել այն, իսկ մյուս կոլտնտեսությունները կիրացնեն 1960—1961 թվականների ընթացքում։ Համե-*

մատաբար լավ է եղել նաև մաքուր ցելի վիճակը. պլանով նախատեսված 3600 հեկտարի դիմաց կատարվել է 4385 հեկտար ցել, որը մշակվել է 2—3 անգամ և լիովին դրվել աշնանացանի տակ։

Մեծ ուշադրություն է նվիրվել սերմնաբուծությանը. ժամանակին առանձնացվել են դաշտերը, կատարվել է ապրոբացիա, ցանքսը կատարվել է կոնդիցիոն սերմերով և աստիճանաբար շրջանաչնացվում են բարձր բերքատու սորտեր։ Այսպես՝ Վարդենիկի կոլտնտեսությանը կից կազմակերպված պետական փորձադաշտի աճեցրած «Լենինական № 22» և «№ 18» աշնանացան և «Վարդենիկ» սորտի գարնանացան ցորենը ցանվել են Վարդենիկի, Ծովինարի, Ալիչալուի և այլ կոլտնտեսությունների դաշտերում՝ շուրջ 2300 հեկտարի վրա, որի յուրաքանչյուր հեկտարից ստացվում է 15—20 ցենտներ բերք։ Այդ սորտերը մեզ մոտ մշակվող սորտերից տարբերվում են իրենց ունեցած լավ հատկանիշներով. չեն պառկում, չեն թափվում և դիմացկուն են։ Առաջիկա 2—3 տարիների ընթացքում այդ սորտերը այնքան կբազմացվեն, որ լրիվ կբավարարեն մեր շրջանի պահանջը։ Ունենք նաև կարտոֆիլի և կորնգանի բարելավված ու բարձր բերքատու սորտեր։

Կոլտնտեսությունները և սովխոզները ժամանակին սկսեցին և սեղմ ժամկետում ավարտեցին գարնանացանը։ Հաջողությամբ կազմակերպվեց ծխախոտի սածիլանոցային տնտեսությունը և ժամանակին ու բարձր որակով կատարվեց սածիլումը։ Ծխախոտի հեկտարի միջին խտությունը կազմեց 115 հազար բույս. ստացվեցին լիարժեք հեկտարներ։

Կարտոֆիլը ևս ցանվեց ժամանակին։ Առաջին անգամ խոշոր տարածությունների վրա (ավելի քան 500 հեկտար) ցանվեց եգիպտացորեն։

Այս տարի համեմատաբար լավ կազմակերպվեց ցանքերի մշակությունը, ագրոկանոններով կատարվեցին գյուղատնտեսական կուլտուրաների սնուցման, փխրեցման, հիվանդությունների ու վնասատուների դեմ պայքարի և ոռոգման աշխատանքները։ Կարտոֆիլի, ծխախոտի և բանջարեղենի դաշտերը փխրեցվեցին 2—3 անգամ, ժամանակին ջրվեցին և սնուցվեցին։

Շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները նախապատրաստված սկսեցին բերքահավաքի աշխատանքները։ Հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը, անցյալ տարվա համեմատությամբ, ավարտվեց 15 օր շուտ։ Ըստ նախնական տվյալների 1958 թվականի 10,4 ցենտների դիմաց այս տարի հեկտարից միջինը կստացվի 11—12 ցենտներ բերք և կկատարվի պետական առաջադրանքը։ Վարդենիկի կոլտնտեսությունը, որը պարտավորվել էր յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը հասցնել 15 ցենտների, հեկտարից ստանում է 17,5 ցենտներ, Ն. Գետաշենի կոլտնտեսությունը՝ 14 ցենտներ բերք և այլն։ Սակայն մի շարք կոլտնտեսություններ (Վ. Գետաշեն, Մարտունի, Ղարանլուղ, Թազագյուղ և այլն) վատ աշխատանքի պատճառով ստանում են նախատեսված պլանից ցածր բերք։

Մեր շրջանի ծխախոտագործները մեծ ոգևորությամբ ընդունեցին ՀԿՊ Կենտկոմի և ՀՍՍՌ Մինիստրների Սովետի որոշումը՝ ռեսպուբլիկայի ծխախոտագործների միջև սոցիալիստական մրցություն ծավալելու մասին։ Եվ այդ հասկանալի է, քանի որ ծխախոտագործությունը դարձել է գյուղատնտեսության եկամտաբեր ճյուղերից մեկը։ Շրջանի կոլտնտեսությունները և Լիճքի սովխոզը կատարել են տերևաքաղի պլանը։ Շրջանի աշխատավորները պար-



տավորվել են, ի պատիվ ՍՄԿՊ Կենտկոմի առաջիկա պլենումի, պլանից ավելի երկրին տալ 200 տոննա ծխախոտի հումք։ Ծխախոտի բերքատվության բարձրացման գործում աչքի են ընկնում առանձնապես Ծովինարի կոլտնտեսությունը, որը հեկտարից ստացել է 23 ցենտներ, Վարդենիկի կոլտնտեսությունը՝ 18, Վաղաշենինը՝ 17, Երանոսինը՝ 17 ցենտներ բերք և այլն։

Հաջող է ընթանում նաև կարտոֆիլի բերքահավաքը։ Նախնական տվյալները ցույց են տալիս, որ այս տարի նույնպես կստացվի կարտոֆիլի բարձր բերք և կգերակատարվեն ստանձնած պարտավորությունները։

Կոլտնտեսությունների մեծ մասում ստացվեց եգիպտացորենի բարձր բերք։ Այսպես, օրինակ, Ծովինարի կոլտնտեսությունը եգիպտացորենի յուրաքանչյուր հեկտարից միջինը ստացել է 400, Լիճքի սովխոզը՝ 340 ցենտներ կանաչ մասսա։ Եգիպտացորենից բավական բերք են ստացել նաև Վարդենիկի; Զորագյուղի, Աստղաձորի, Երանոսի և այլ կոլտնտեսություններ։ Իսկ Մարտունու, Ն. Գետաշենի, Ծակքարի և այլ կոլտնտեսություններ Եգիպտացորենի մշակությունը թողեցին բախտի քմահաճույքին և դրա հետևանքով էլ ստացան ցածր բերք։

Անասնաբուծության զարգացման համար կերի բազայի մեջ իր որոշակի տեղը պետք է գրավի եգիպտացորենը. դրա համար էլ որոշված է առաջիկա 2—3 տարիների ընթացքում եգիպտացորենի ցանքատարածությունները հասցնել մինչև 800 հեկտարի։ Անասնապահության զարգացման բարձր տեմպեր ապահովելու նպատակով, սկսած 1960 թվականից, պետք է ավելացնել բազմամյա խոտաբույսերի տարածությունները՝ հասցնելով 4500 հեկտարի, եղած 1600-ի դիմաց, իսկ արմատապտուղներինը՝ 300 հեկտարի, 63-ի դիմաց։

Հաջողությամբ ավարտվեց աշնանացանը, որի մեծ մասը կատարվեց մաքուր ցելերի վրա։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման ուղղությամբ ձեռք բերված որոշ հաջողությունների կողքին դեռևս գոյություն ունեն լուրջ թերություններ։ Մի շարք կոլտնտեսություններ կոպիտ կերպով խախտում են ագրոկանոնները. ինչպես ցանքերի մշակման, այնպես էլ բերքահավաքի շատ աշխատանքներ կատարվում են մեծ ձգձգումներով։

Հացահատիկի սերմադաշտերը վատ մշակելու և քաղհան չկազմակերպելու պատճառով Մարտունու, Ադամխանի, Երանոսի, Ծակքարի, Զորագյուղի կոլտնտեսությունների ստացած սերմացուն տարեկանով վարակված է և կոնդիցիային չի համապատասխանում։

Առանձին կոլտնտեսություններում (Մարտունի, Ծակքար, Վ. Գետաշեն) ինչպես հարկն է չկազմակերպվեց ծխախոտի պլանտացիաների մշակումը, չկարգավորվեց չորանոցային տնտեսությունը և ծխախոտի մի զգալի մասը փչանում է։ Որոշ կոլտնտեսությունների ղեկավարներ անհրաժեշտ պայմաններ չեն ստեղծում մեխանիզատորների համար, չեն օգնում, որպեսզի նրանք կատարեն իրենց օրվա առաջադրանքներն ու պարտավորությունները։ Մեքենաները ռացիոնալ կերպով չեն օգտագործվում մեծ մասամբ այն պատճառով, որ Երևանի և Սևանի միջշրջանային ավտոտրակտորային մասերի բաժանմունքից բավարար քանակությամբ պահեստային նյութեր և մասեր չեն ստացվում, և հաճախ մեխանիզատորները պարապուրդ են տալիս։

Տնկիների պակասության պատճառով թերակատարվեց պտղատու այգի-

ների ավելացման պլանը. 80 հեկտարի դիմաց ցարնանը տնկվել է 32 հեկտար։ Պտղաբուծությունը զարգացնելու նպատակով պլանավորված է 2—3 կոլտնտեսությունում ստեղծել տնկարաններ։ Բացի այդ, որպեսզի Սևանի ավազանի և մյուս լեռնային շրջանները ապահովվեն տնկանյութերով, նպատակահարմար է Ծովինարի պտղաբուծական տնկարանը անջատել Բասարգեչարից և ստեղծել առանձին տնտեսություն, ընդարձակելով նրա տարածությունը մինչև 100 հեկտարի սահմաններում, ի հաշիվ Սևանա լճից ազատված լավագույն հողերի։

Լուրջ թերություններ կան անասնաբուծության զարգացման բնագավառում։ Չնայած հողակլիմայական նպաստավոր պայմաններին, տնտեսության այս ճյուղը չափազանց ետ է մնում։ Նկատի ունենալով, որ Մարտունու շրջանը 2—3 տարվա ընթացքում կարող է դառնալ ռեսպուբլիկայի անասնապահական առաջավոր շրջաններից մեկը, ընթացիկ տարում մի շարք միջոցներ են իրականացվել անասունների գլխաքանակն ավելացնելու համար, որի շնորհիվ էլ սոցիալիստական պարտավորությամբ վերցրած 12225 գլուխ խոշոր եղջերավոր անասունի փոխարեն ունենք 12925 գլուխ, 54570 ոչխարի դիմաց՝ 59460, իսկ 1367 խոզի դիմաց 1773 գլուխ։ Սակայն պետք է նշել, որ հանրային տնտեսության անասնագլխաքանակը դեռևս քիչ է։ 100 հեկտար հողատարածության դիմաց հոկտեմբերի մեկի դրությամբ շրջանում կա խոշոր եղջերավոր անասուն՝ 22,7 գլուխ, որից կովեր՝ 7,7, ոչխարներ և այծեր՝ 119, խոզեր՝ 9,5 գլուխ և թռչուններ 153 թև։ Չնայած կովերի գլխաքանակը ամեն տարի ավելանում է 600—700 գլխով, այնուամենայնիվ կոլտնտեսությունների մեծ մասը չափազանց քիչ կով ունի։ Այսպես, օրինակ՝ Երանոսը շրջանի խոշոր գյուղերից մեկն է և ունի 620 տնտեսություն. 1957 թվականի հոկտեմբերի մեկի տվյալներով գյուղի կոլտնտեսությունն ուներ 115, այժմ ունի 251 կով. չնայած աճը կազմում է 210 տոկոս, սակայն գյուղի 3 տնտեսությանը ընկնում է միայն մեկ կով. Ղարանլուղի կոլտնտեսությունն ունի 300 գլուխ կով (100 հեկտար հողատարածության հաշվով ընկնում է 6,6 կով), իսկ Լիճքի սովխոզում, որն ունի հրաշալի պայմաններ, 100 հեկտարի հաշվով պահվում է ընդամենը 4 կով։

Շրջանի կոլտնտեսությունների մեծ մասում չեն կիրառվում կոլտնտեսությունների կողմից ընդունված կանոնադրության կետերը։ Կոլտնտեսականների անձնական օգտագործման տակ կան մեծ քանակությամբ անասուններ, որը բացասաբար է ազդում հանրային անասնաբուծության զարգացման վրա։ Դեռևս անբավարար է աշխատանքը խոզերի և, հատկապես, թռչունների գլխաքանակի ավելացման ու նրանց մթերատվության բարձրացման ուղղությամբ։

Կոլտնտեսությունները և սովխոզները որոշ աշխատանք են կատարել անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու ասպարեզում։ 1959 թվականին պլանով սահմանված է արտադրել միս՝ 15492, սոցիալիստական պարտավորությամբ՝ 15930 ցենտներ։ Անցած 9 ամսվա և հոկտեմբերի առաջին տասնօրյակում փաստորեն արտադրվել է 9820 ցենտներ միս։ Նախնական արդյունքները ցույց են տալիս, որ շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները, ինչպես նշեցինք վերևում, բոլոր հնարավորություններն ունեն կատարելու մսի արտադրության պլանը։ Սակայն պետք է նշել, որ մի շարք կոլտնտեսություններ (Զոլաքար, Վ. Գետաշեն, Ծովինար, Թազագյուղ, Ադամխան) գիրացման աշխատանքները վատ կազմակերպեցին, որի հետևանքով միջակից ցածր գիրությամբ անասուններ են հանձնում պետությանը։



Որոշ աշխատանք է կատարված նաև կաթի արտադրությունն ավելացնելու ուղղությամբ. եթե 1958 թվականի 9 ամսվա ընթացքում արտադրվել է 45136 ցենտներ կաթ, ապա ընթացիկ տարվա նույն ժամանակամիջոցում արտադրվել է 50799 ցենտներ. աճը կազմում է 12,5 տոկոս։ Սակայն շրջանը, ամբողջությամբ վերցրած, չի կատարում կաթի արտադրության պետական և սոցիալիստական պարտավորությունները։ Դեռ ավելին, անցյալ տարվա համեմատությամբ ֆուրաժային կովի կաթնատվությունը պակասել է 136 կգ-ով, իսկ առանձին կոլտնտեսություններում՝ ավելի շատ։

Կաթի արտադրության գծով սոցիալիստական պարտավորությունը չկատարելը, առաջին հերթին, բացատրվում է նրանով, որ կոլտնտեսությունների վարչությունները և սկզբնական պարտկազմակերպությունները չկարողացան խելացիորեն կազմակերպել աշխատանքը կովաբուծական ֆերմաներում, անհրաժեշտ հոգատարություն հանդես չբերեցին կովերի խնամքը և կերակրումը լավագույն ձևով կազմակերպելու ուղղությամբ։ Առանձին կոլտնտեսություններում (Զոլաքար, Վ. Գետաշեն, Ադամխան, Ծակքար և այլն) անպատասխանատվությունը հասավ այն աստիճանի, որ ֆերմաները չուղարկեցին անասնապահության գործը իմացող կթվորներ ու անասնապահներ, չստեղծեցին կուլտ-կենցաղային նորմալ պայմաններ ֆերմաներում աշխատող անասնապահների համար։

Կաթի արտադրության հետագա տարիների առաջադրանքները կատարելու և անասունների մթերատվությունը բարձրացնելու գործում վճռական դեր է խաղում ցեղի բարելավումը։ Այս առումով լուրջ միջոցառում է գյուղատնտեսության մինիստրության կողմից Մարտունու շրջանում կազմակերպված տոհմային աշխատանքի և արհեստական սերմնավորման միջշրջանային պետական կայանի ստեղծումը, որի շնորհիվ կոլտնտեսություններում եղած 2000 գլուխ արտադրողների փոխարեն կարելի է պահել միայն 20—30 գլուխ, իսկ մնացածի փոխարեն հանրային հոտում ավելացնել կովերի գլխաքանակը, որոնք հսկայական դրամական եկամուտ կբերեն կոլտնտեսություններին, կըկրճատվի կովերի ստերջությունը և կտնտեսվի շատ աշխօր։ Բայց այս տարի, բացի Վարդենիկի, Ղարանլուղի, Ձորագյուղի և Ադամխանի կոլտնտեսություններից, մյուսները գերադասեցին սերմնավորման առաջավոր եղանակի փոխարեն կատարել կովերի ազատ զուգավորում։

Սոցիալիստական պարտավորությունների համաձայն շրջանը պետք է արտադրի 1260 ցենտներ բուրդ։ Հոկտեմբերի 10-ի դրությամբ արտադրվել է ընդամենը 872 ցենտներ, կամ պլանը կատարված է 80,8 տոկոսով։ Այս կապակցությամբ անհրաժեշտ է նշել, որ ՀՍՍՌ Մինիստրների Սովետի որոշմամբ բալբաս ոչխարի ցեղը Մարտունու շրջանի համար հաստատված է որպես պլանային ցեղ։ Սակայն այդ ցեղն իրեն չի արդարացնում։ Երկար տարիների փորձը ցույց է տալիս, որ ամենալավ կերակրման ու խնամքի դեպքում բալբաս ոչխարի միջին բրդատվությունը չի գերազանցում 2—2,2 կգ-ից։ Մինչդեռ ուրիշ շրջաններում զարգացվում են խառնացեղ ոչխարներ, որոնցից ամեն մեկը տալիս է 4—5 կգ բուրդ։ Եթե ընդունենք բուրդը նույն արժողությամբ (կիլոգրամը 30—35 ռուբլի), ապա բալբաս ոչխարից միայն բրդի արժեքի մեջ 80—90 ռուբլով պակաս եկամուտ է ստացվում, իսկ շրջանի համար այն

*կկազմի շուրջ 2 500 հազար ռուբլի։ ՀՍՍՌ Մինիստրների Սովետը պետք է լուրջ ուշադրություն հատկացնի այս խնդրին և լուծի այն։*

*Չնայած վերջին տարիների ընթացքում շրջանում կատարված են զգալի շինարարական աշխատանքներ, բայց դեռևս շինարարության տեմպը անբավարար է և չի ապահովում անասնապահության ու գյուղատնտեսության զարգացման պահանջները։ 1959 թվականի տնտեսական տարում նախատեսված 37 անասնապահական օբյեկտներից կառուցվել է 21-ը։ Անբավարար է նաև ծխախոտի չորանոցների, հացահատիկի պահեստների, կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարությունը։*

*Կոլտնտեսությունների և սովխոզների կողմից անբավարար աշխատանք է կատարվում աշխատատար պրոցեսների մեքենայացման ուղղությամբ։ Աշխատատար պրոցեսների մեքենայացման աստիճանը բարձրացնելու և լայն մասշտաբներով կիրառելու համար պետք է անպայման լուծվի շրջանի էլեկտրաէներգիայի խնդիրը, որովհետև գոյություն ունեցող գէսը չի բավարարում նույնիսկ կոմունալ սպասարկման պահանջները։ Մի շարք կոլտնտեսություններում (Ղարանլուղ, Ջոլաքար, Ծակքար, Վ. Գետաշեն և այլն) ձմեռվա ամիսներին անասունները ջրելու գործը շատ վատ վիճակում է. ջրում են օրը միայն մեկ անգամ։ Ջրի անհրաժեշտությունը չափազանց սուր կերպով է զգացվում ոչ միայն անասնապահության, այլև բնակչությանը ապահովելու տեսակետից։ Ունենալով խմելու հրաշալի ջուր, չենք կարողանում այն օգտագործել՝ խողովակներ չլինելու պատճառով։ Այս հարցում մեզ օգնության պետք է գան համապատասխան ղեկավար մարմինները։*

*Մարտունու շրջանը, որ տնտեսապես տևականորեն ետ էր մնում, շնորհիվ Կոմունիստական պարտիայի վերջին տարիներին կիրառած միջոցառումների, դուրս է եկել ծանր-վիճակից և ընթանում է վերելքի ճանապարհով։ Բավական է ասել, որ կոլտնտեսությունների դրամական եկամուտը 1953 թվականի 7 910 հազար ռուբլուց 1958 թվականին հասավ 27 164 հազարի, իսկ այս տարի այն կկազմի առնվազն 32—33 միլիոն ռուբլի։ Սակայն դա գոհացուցիչ չէ։*

*Մարտունու շրջանն ունի հողակլիմայական բոլոր նպաստավոր պայմանները՝ առաջիկա տարիներում դառնալու ռեսպուբլիկայի առաջավոր անասնապահական շրջաններից մեկը։*

*Մեր պարտիայի Կենտկոմը մշտապես սովորեցնում է, որ պարտիայի քաղաքականության ճիշտ կենսագործման հաջողությունը, առաջին հերթին, կախված է աշխատավորների շրջանում տարվող քաղաքական ու կազմակերպական աշխատանքի մակարդակից և կադրերի ճիշտ ընտրությունից ու դաստիարակությունից։*

*Շրջանային կոմիտեն և պարտիական սկզբնական կազմակերպությունները որոշակի աշխատանք են կատարել կոլտնտեսությունների ու սովխոզների կադրերի ընտրության և դաստիարակության գործում։ Կոլտնտեսությունների և սովխոզների 19 ղեկավարներից 7-ը ունեն բարձրագույն և թերի բարձրագույն, 6-ը՝ միջնակարգ և 6-ը՝ թերի միջնակարգ կրթություն՝ արտադրական մեծ ստաժով։ Միայն բարձրագույն կրթություն ունեցող ագրոնոմների և զոոտեխնիկների թիվը հասնում է 17-ի. զգալի չափով բարելավվել է բրիգադավարների, ֆերմաների վարիչների և մյուս աշխատողների կազմը։*

*Շրջանի կոլտնտեսությունների մեծ մասը և սովխոզները հիմնականում ամրապնդվել են փորձված կադրերով, որոնք ջանք չեն խնայում էկոնոմիկան բարձրացնելու ուղղությամբ։ Դրանով պետք է բացատրել, որ Վարդենիկի, Վաղաշենի, Ալիչալուի, Ծովինարի, Երանոսի, Զորագյուղի, Աստղաձորի և այլ կոլտնտեսություններն ու սովխոզները կարողանում են մշտապես առաջ տանել տնտեսությունը և տարեցտարի բարձրացնել արտադրությունը։*



*Սակայն շրջկոմը և պարտիական սկզբնական կազմակերպությունները չեն կարողացել բոլոր տնտեսություններում բավարար հիմքերի վրա դնել կադրերի ընտրության գործը, որի հետևանքով էլ տնտեսության մի շարք ճյուղերում տեղի են ունենում ձախողումներ և չի ապահովվում գյուղատնտեսության զարգացման համար նախատեսված միջոցառումների կատարումը։ Ծակքարի, Մարտունու, Ադամխանի, Վ. Գետաշենի և այլ կոլտնտեսություններում մի շարք ղեկավար աշխատողներ անպատասխանատու վերաբերմունք են հանդես բերում գործի նկատմամբ, իսկ պարտիական կազմակերպությունները անտեսում են այդ։*

*Կյանքն ամեն օր ցույց է տալիս, որ այնտեղ, որտեղ գործի գլուխ է կանգնած ձեռնհաս, գործունյա, կազմակերպչական ընդունակություններ ունեցող մարդ, գործն ընթանում է հաջող, իսկ որտեղ աշխատանքը գտնվում է կազմակերպչական թույլ կարողություններ ունեցող անձնավորության ձեռքում, այն ձախողվում է։ Այդ կապակցությամբ բավական է բերել մեկ օրինակ. մինչև այս տարվա ապրիլ ամիսը Մադինայի կոլտնտեսության կովաբուծական ֆերմայի վարիչն էր Վ. Գասպարյանը. չնայած առատ կերին, ֆերման չապահովեց կաթնատվության պլանի կատարումը։ Պարտիական կազմակերպությունը և կոլտնտեսության վարչությունը քննության առան այդ հարցը և որոշեցին ֆերմայի վարիչ առաջադրել Հ. Տարախչյանին։ Նրա աշխատանքի 5 ամսվա ընթացքում ֆերման մշտապես կատարում է իր առաջադրանքները. հոկտեմբերի մեկի դրությամբ, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, կաթի արտադրությունն ավելացել է 310 ցենտներով, իսկ մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը՝ 46 կգ-ով։*

*Կոլտնտեսությունների որոշ ղեկավարներ, ինչպես հարկն է, չեն խորանում էկոնոմիկայի հարցերի մեջ, չեն պարզում առանձին մթերքների ինքնարժեքի չափազանց բարձր լինելու պատճառները, որի հետևանքով էլ տնտեսության մի շարք ճյուղեր, ինչպես, օրինակ՝ խոզաբուծությունը, թռչնաբուծությունը շարունակում են մնալ որպես ոչ եկամտաբեր ճյուղեր։*

*1958 թվականին Ծակքարի կոլտնտեսությունը պլանով տրված 40 գլուխ խոզի դիմաց ուներ 28-ը, մեկ խոզամայրից ստացել է 6 խոճկոր. հաշվարկումները ցույց են տվել, որ մեկ ցենտներ խոզի մսի ինքնարժեքը կազմել է 1386 ռուբլի, իսկ մեկ ձվինը՝ 5 ռուբլի։ Թազագյուղի կոլտնտեսությունը մեկ ցենտներ միս արտադրելու համար ծախսել է 820 ռուբլի, մեկ ցենտներ կաթի համար՝ 240 ռուբլի, իսկ խոզի մսի համար՝ 2000 ռուբլի։ Այդպիսի օրինակներ կարելի է բերել նաև մյուս կոլտնտեսություններից։*

*Դժբախտաբար շատ բրիգադավարներ, ֆերմաների վարիչներ և հաշվապահական որոշ աշխատողներ նույնպես չեն խորանում տնտեսության մեջ, գաղափար չունեն ինքնարժեքի մասին, չգիտեն ինչպես առաջ տանել տնտեսությունը։ Պետք է խոստովանել, որ դեռևս կան ոչ քիչ բրիգադավարներ, ֆերմայի վարիչներ, որոնք կիսագրագետ են, չեն կարողանում աշխօրերը ճիշտ գրանցել, հետևապես խիստ պահանջներ ներկայացնել նրանց՝ ապարդյուն*

կլինի։ Շրջկոմից և պարտիական կազմակերպություններից պահանջվում է առաջիկայում լրջորեն զբաղվել կոլտնտեսությունների ու սովխոզների կադրերի ընտրության, նրանց գիտելիքները բարձրացնելու գործով։

Սոցիալիստական պարտավորությունները պատվով կատարելու կարևորագույն պայմաններից մեկն է քաղաքական-մասսայական աշխատանքի լավ կազմակերպումը։ Հաշվի առնելով այդ՝ շրջանային կոմիտեն ավելի մոտիկից զբաղվեց պարտիական-լուսավորության ցանցի, դասախոսական խմբակների և ագիտկոլեկտիվների գործունեությամբ։ 427 ագիտատորները, 103 պրոպագանդիստները, քաղաքական և գիտական գիտելիքների տարածման շրջանային բաժանմունքի անդամները և շրջկոմի դասախոսական խմբակի դասախոսները սկսեցին աշխատավորությանը լայնորեն պարզաբանել ՍՄԿՊ XXI և ՀԿՊ XX համագումարների նյութերը և պարտիայի ու կառավարության մյուս միջոցառումները։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի, մարքս-լենինյան տեսության, սովետական գիտության ու կուլտուրայի, գյուղատնտեսության առաջավորների փորձի ու այլ հարցերի վերաբերյալ կազմակերպվել է շուրջ 400 դասախոսություն, անցկացվել է 3 գիտական կոնֆերանս և բազմաթիվ զեկուցումներ ու զրույցներ։ Տեղի է ունեցել տասը հրապարակային դասախոսություն։ Կոլտնտեսություններում ու սովխոզներում ստեղծվել են փոխանցիկ դրոշներ և վիմպելներ, ցուցանիշների ու պատվո տախտակներ, առաջավորների համար նախատեսվել են պարգևատրման միջոցներ։

Սոցիալիստական պարտավորությունները հաջողությամբ կատարում են տասնյակ բրիգադավարներ, առանձին կոլտնտեսականներ ու սովխոզների բանվորներ։ Աշխատանքի մեջ հրաշալի օրինակներ են ցույց տալիս և իրենց պլանները սիստեմատիկաբար (150—200 տոկոսով) են կատարում մեխանիզատորներ Ա. Սուքիասյանը (Վարդենիկ), Ս. Գեղամյանը (Լիճք), Գ. Ալիգյանը (Ալիչալու), ծխախոտագործներ Ժ. Գևորգյանը, Ն. Մխոյանը (Ծովինար) և շատ ուրիշներ։

Գյուղատնտեսական մթերքների արդադրության ավելացման ասպարեզում իրենց ակտիվ աշխատանքով աչքի են ընկնում շրջանի կոմերիտականներն ու երիտասարդները։ Նրանք առանձնապես լավ մասնակցեցին կերի կուտակման և սիլոսացման աշխատանքներին։ Գյուղատնտեսական աշխատանքներին, մանավանդ ծխախոտի տերևաքաղին, մեծ օգնություն ցույց տվեցին նաև շրջանի դպրոցականները՝ ուսուցչական կոլեկտիվների ղեկավարությամբ։

Կատարված աշխատանքների հետ միասին հարկավոր է ընդգծել, որ որոշ սկզբնական պարտիական կազմակերպություններ ու կոլտնտեսությունների վարչություններ անհրաժեշտ պայքար չեն տանում սոցիալիստական պարտավորությունները պատվով կատարելու համար։ Ծակքարի, Ադամխանի, Վ. Գետաշենի, Մարտունու կոլտնտեսություններն արտադրության մի շարք ճյուղերի գծով ետ են մնում և հավատ չեն ներշնչում, որ կկարողանան իրենց սոցիալիստական պարտավորությունները լրիվ կատարել։ Դրա օրինակը կարող է լինել թեկուզ այն փաստը, որ նրանք պարտավորվել էին պետությանը վաճառվող ամեն մի խոշոր եղջերավոր անասունի քաշը պահպանել



250 կգ, սակայն գիրացումը վատ կազմակերպելու հետևանքով, պետությանը վաճառեցին 190—210 կգ քաշ ունեցող անասուններ։

Մի շարք կոլտնտեսություններում սոցիալիստական մրցությունը ուղղակի ձևական բնույթ է կրում։ Պարտիական կազմակերպությունները միանգամայն անբավարար են զբաղվում մրցության հարցերով, շատ աշխատողներ նույնիսկ չգիտեն իրենց հիմնական խնդիրներն ու օրվա առաջադրանքները։ Այդ մասին են խոսում այն փաստերը, որ Հ. Մելքոնյանի (Վարդենիկ), Ն. Սահակյանի (Զորագյուղ), Գ. Մկրտչյանի (Ն. Գետաշեն) և ուրիշների ղեկավարած բրիգադաները ընթանում են խիստ դանդաղ տեմպերով և չեն կատարում վերցրած պարտավորությունները։

Գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու գործում խոշոր նշանակություն ունի կոմունիստների և կոմերիտականների ուժերի դասավորումը արտադրության վճռական տեղամասերում։ Սակայն պարտիական կազմակերպությունները անհրաժեշտ կերպով չեն զբաղվում այդ կարևոր հարցով, որի հետևանքով կոմունիստների զգալի մասը շարքային աշխատանք չի կատարում. Նրանցից շատերը ձգտում են պաշտոն ստանալ, իսկ անասնապահության մեջ, բացի ֆերմայի վարիչից ու ֆուրաժիրից, ուրիշ պաշտոն չկա։ Անհանդուրժելի է այն, որ մեզ մոտ եթե մեկը, ասենք՝ կոլտնտեսության նախագահը, բրիգադավարը կամ ֆերմայի վարիչը ազատվում է աշխատանքից, այլևս չի աշխատում արտադրության մեջ այնքան ժամանակ, մինչև որ հանգամանքների բերումով նորից պաշտոն ստանա։ Իսկ պարտկազմակերպությունները հարմարվում են այդպիսի վիճակի հետ։

Կոլտնտեսություններում ցածր է աշխատանքային կարգապահությունը. գյուղատնտեսական շատ աշխատանքների ագրոժամկետները խախտվում են։ Պարտիական կազմակերպությունները բավարար չափով չեն իրականացնում իրենց վերահսկողության ֆունկցիան կոլտնտեսությունների ու սովխոզների գործունեության նկատմամբ։

Գյուղատնտեսության զարգացման, վերցրած սոցիալիստական պարտավորությունների կատարման հարցերով ինչպես հարկն է չեն զբաղվում շրջանի պարտիական ու սովետական ղեկավար օրգանները։ Շրջսովետի գործկոմը, նրա գյուղտեսչությունը բավարար հսկողություն չեն սահմանում կոլտնտեսությունների և սովխոզների աշխատանքների վրա և թույլ պահանջկոտություն են հանդես բերում ստանձնած պարտավորությունները կատարելու ասպարեզում։

Մարտունու շրջանային կոմիտեի և պարտիական սկզբնական կազմակերպությունների հիմնական խնդիրն է՝ չհանգստանալ ձեռք բերածով և գործադրել բոլոր միջոցառումները՝ սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները պատվով կատարելու համար։

Մեր որոշ նվաճումները մեզ հիմք չեն տալիս հանգստանալու։ Մեր անելիքները շատ են ու բարդ։ Մարտունեցիք ջանք չեն խնայի վերցրած պարտավորությունները ժամանակին և պատվով կատարելու։

# ԿՀԱՍՆԵՆՔ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻՆ

**Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**

ՀԿՊ Իջևանի շրջկոմի քարտուղար

*Իջևանի շրջանի գյուղատնտեսության աշխատողներն այս տարի որոշեցին զգալի չափով ավելացնել գյուղատնտեսության մթերքների արտադրությունը, առաջիկա 2—3 տարվա ընթացքում տնտեսապես ետ մնացող կոլտնտեսությունները հասցնել առաջավորների մակարդակին։ Նրանք պարտավորվեցին հասկավոր կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից ստանալ 13 ցենտներ բերք, անցյալ տարվա 9,7 ցենտների դիմաց։ Առ մեկը նոյեմբերի հաշվարկները ցույց են տալիս, որ մեկ ցենտներով թերակատարվում է պարտավորությունը, որը հիմնականում բերքահավաքը ձգձգելու և կորուստներ տալու արդյունք է։*

*Կոլտնտեսությունների և սովխոզների աշխատողները պարտավորվել են նաև մշակել 1524 հեկտար եգիպտացորեն, ապահովելով յուրաքանչյուր հեկտարից 25 ցենտներ հատիկի և 250 ցենտներ կանաչ մասսայի ստացումը։ Այդ պարտավորությունը կկատարվի։*

*Իջևանի շրջանի բնակլիմայական պայմանները նպաստավոր են այգեգործության ու ծխախոտագործության զարգացման համար և այդ տեսակետից շրջանն ունի լայն հեռանկարներ։ Տարիներ շարունակ խոսվել է այդ մասին, բայց գործը գրեթե տեղից չէր շարժվել, որովհետև չկար սեփական տնկարան։ 1958 թվականից այգեգործությամբ զբաղվող կոլտնտեսություններում կազմակերպվեցին սեփական տնկարանային տնտեսություններ, որոնք կապահովեն շրջանի պահանջները։ 1953 թվականին շրջանում եղել է ընդամենը 47 հեկտար խաղողի այգի, իսկ ընթացիկ տարվա վերջին կունենանք 378 հեկտար։ Պտղատու այգիների տարածությունն այս տարի պետք է ընդարձակվի 55 հեկտարով, որից կատարվել է գարնանային տնկումներ 25 հեկտար և աշնանային տնկումներ՝ 30 հեկտար։*

*Թեև այգիների տարածությունը տարեցտարի ընդարձակվում է, բայց այգեգործության բնագավառում կան լուրջ թերություններ։ Առանձին կոլտնտեսությունների վարչություններ և սովխոզներ (Գոշ, Կույբիշև, Լալիգյուղ, Իջևանի սովխոզ) անհրաժեշտ ուշադրություն չեն հատկացնում այդ բնագավառին։ Այգիները վատ են մշակվում, գրեթե միշտ ծածկված են մոլախոտերով, ժամանակին բուժում չի կատարվում, եթե կատարվում էլ է, ապա շատ անորակ, որը հետագայում տեղիք է տալիս այգիների փչացման, ցածր բերքատվության։ Շատ քիչ աշխատանք է կատարվում այգեգործությամբ զբաղվող կադրերի հետ։ Միայն այս տարի մեզ հաջողվեց որոշ կոլտնտեսությունների*



*բրիգադաներ ամրապնդել մասնագետ, բարձրագույն կրթություն ունեցող աշխատողներով։*

*Այգեգործության արագ զարգացման համար պետք է խաղողի և պտղի լավ սորտեր աճեցնել և ընդարձակել ջրովի տարածությունները։ Այս հարցերում անհրաժեշտ է Գյուղատնտեսության և Ջրային տնտեսության մինիստրությունների կոնկրետ օգնությունը։*

*Ծխախոտագործությունը Իջևանի շրջանում համարվում է առաջնակարգ ճյուղ, որը ռեսպուբլիկայում ունի որոշակի կշիռ. ռեսպուբլիկայի ընդհանուր հումքի 15 տոկոսը տալիս է միայն Իջևանի շրջանը և Շամշադինից հետո նա համարվում է երկրորդ ծխախոտագործ շրջանը։ Այս տարի շրջանի կոլտնտեսություններում մշակվել է 958 հեկտար ծխախոտի պլանտացիա և ըստ պարտավորության՝ 1501 տոննա հումքի դիմաց պետությանը պետք է տրվի 1600—1700 տոննա ծխախոտի լավորակ հումք։ Այլ կերպ ասած, յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը կհասնի 17 ցենտների։ Նախնական տվյալները վկայում են, որ այդ պարտավորությունը կկատարվի։*

*Վերը նշվածը հաստատելու համար դիմենք որոշ փաստերի. չնայած այս տարվա անբարենպաստ կլիմայական պայմաններին, շրջանի ծխախոտագործներն աճեցրել են հիանալի, կարելի է ասել, ռեկորդային բերք։ Մեր պլանտացիաներից սպասվում է շուրջ 1700 տոննա հումք կամ հեկտարից 17—18 ցենտներ։ Առանձին կոլտնտեսություններ (Աչաջուր, Ուզունթալա և Կույբիշև), որոնք մշակում են 90—100 հեկտար ծխախոտ, պարտավորվել են ամեն մի հեկտարից ստանալ 23—25 ցենտներ հումք։ Օրինակ, Ուզունթալայի կոլտնտեսությունը նոյեմբերի 15-ի տվյալներով հավաքել է ավելի քան 2,5 միլիոն թելամետր ծխախոտ, որը 850 հազար թելամետրով գերազանցում է մրցությամբ վերցրած պարտավորությունը, իսկ պլանի համեմատությամբ՝ մեկ միլիոն թելամետրով։ Այդ կոլտնտեսության առանձին օղակավարներ, ինչպիսիք են՝ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Հ. Հովսեփյանը, Վ. Ղևոնդյանը, գերակատարել են մրցությամբ վերցրած պարտավորությունները։ Շ. Պողոսյանը (Աչաջուր), Շ. Գուլակյանը (Խաշթառակ) և ուրիշներ պարտավորվել են իրենց մշակած ծխախոտի յուրաքանչյուր հեկտարից ստանալ և պետությանը հանձնել 30—35 ցենտներ հումք։ Նրանց հավաքած ծխախոտի բերքը համոզում է, որ նրանք ևս զգալի չափով կգերակատարեն իրենց պարտավորությունները։*

*Հաջողություններն այս բնագավառում ավելի կլինեին, եթե ձեռքի աշխատանքը որոշ չափով մեքենայացվեր։ Ծխախոտի մշակության աշխատանքների մեքենայացումը մեծ չափով կնպաստի արտադրողականության բարձրացմանը մեկ կողմից, իսկ մյուս կողմից՝ կթեթևացնի մարդկանց աշխատանքը և հնարավորություն կստեղծի, որպեսզի նրանք ավելի արդյունավետ օգտագործեն իրենց ուժն ու կարողությունը։*

*Լուրջ թերություններ կան չորանոցային տնտեսության բնագավառում, հատկապես կրակային չորանոցների ստեղծման գործում։ Շրջկոմի բյուրոն քննարկել է այդ հարցը և որոշել է ամեն կոլտնտեսությունում ունենալ 1—3 կրակային չորանոց։*

*Անասնաբուծության բնագավառում սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման պատկերը հետևյալն է. կոլտնտեսությունները պարտավորվել են խոշոր եղջերավոր անասունների թիվը հաս-*

ցընել 12447 գլխի, որից կովերինը՝ 3976 գլխի, մանր եղջերավոր անասուններինը՝ 38426 գլխի, խոզերինը՝ 3897 գլխի, թռչուններինը՝ 23915 հատ։ Պետական հանձնումներն ավարտելուց հետո, շրջանի կոլտնտեսություններում նոյեմբերի մեկի տվյալներով՝ խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացնելու պարտավորությունը կատարված է 102, որից կովերինը՝ 100, մանր եղջերավոր անասուններինը՝ 104,6, խոզերինը՝ 159 և թռչուններինը՝ 100 տոկոսով։

Անասունների գլխաքանակի ավելացման բնագավառում իրենց պարտավորությունները զգալի չափով գերակատարել են Ենոքավանի, Թալայի, Լուսաձորի, Ն. Աղդանի կոլտնտեսությունները։ Այդ բնագավառում իրենց պարտավորությունները անբավարար են կատարում Խաշթառակի, Սարիգյուղի, Կույբիշևի և ուրիշ կոլտնտեսություններ։

Անասնաբուծության զարգացման պլանների և սոցիալիստական մրցությամբ վերցրած պարտավորությունների կատարման գործում լուրջ թերություններից մեկը սեփական հոտի վերարտադրության ցածր վիճակն է։ Այսպես, 100 կովից ստացվել է 60 հորթ, 100 մայր ոչխարից՝ 77 գառ և մեկ խոզամայրից՝ 6 խոճկոր։ Անասունների գլխաքանակի դանդաղ աճման մյուս պատճառներից մեկն էլ անասունների վատ խնամքի հետևանքով տեղի ունեցող անկումներն են։ Դա, իհարկե, պատիվ չի բերում շրջանի անասնապահներին և պարտիական կազմակերպություններին ու մասնագետներին։

Անասնապահության զարգացման կարևոր միջոցը կերի կայուն բազայի ստեղծումն է։ Այս տարի մենք սոցիալիստական մրցությամբ պարտավորվել ենք պլանով տրված 15.000 տոննայի դիմաց կուտակել 18.400 տոննա խոտ, 21.000 տոննա սիլոսի փոխարեն՝ 22060 տոննա։ Այժմյան դրությամբ կուտակել ենք 17.435 տոննա խոտ և 18.100 տոննա սիլոս։ Ջանքեր են գործադրվում, որպեսզի առաջիկայում կուտակվի այնքան խոտ և սիլոս, որքան պարտավորվել ենք։

Խոսելով անասնաբուծության զարգացման մասին, պետք է խոստովանել, որ շրջանի պարտիական ու սովետական կազմակերպություններին դեռևս չի հաջողվել անասնապահական ֆերմաներն ամրապնդել ձեռնհաս կադրերով։ Շատ կոլտնտեսություններում ֆերմաների վարիչներ են միջնակարգ կրթություն չունեցող մարդիկ, որոնք չեն պատկերացնում նորը, առաջավորը։ Դեռ չի արմատավորվել կովերի արհեստական սերմնավորման պրակտիկան. նախատեսված 13 սերմնավորման կայաններից ներկայումս գործում են միայն 5-ը։ Չնայած կովերի գլխաքանակն այս տարի ավելացել է 600 գլխով և կաթի համախառն արտադրությունը 10 ամսվա ընթացքում 3500 ցենտներով, բայց և այնպես դեռ ցածր է ֆուրաժային կովի կաթնատվությունը։

Այս տարի շրջանի կոլտնտեսությունները ժամկետից մի քանի ամիս շուտ գերակատարեցին անասնաբուծական մթերքների պետական գնման պլանները (կաթ՝ 105,5, միս՝ 108,8, բուրդ՝ 110,5 ձու՝ 158,8 տոկոսով)։ Չնայած դրան, քիչ է 100 հեկտար հողատարածության հաշվով արտադրվող մսի և կաթի քանակը։ Այս առումով սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները կատարված են միայն ձվի գծով։

Իջևանի շրջանի պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ անասունների գլխաքանակի ավելացման հետ միասին ավելացնել նաև նրանց



մթերատվությունը։ Մսի արտադրության ավելացման նպատակով անհրաժեշտ է 100 հեկտար հողատարածության դիմաց ունենալ 20 կով, ստեղծել ջրլող թռչունների ու հավերի խոշոր ֆերմաներ և միջկոլտնտեսային թռչնաբուծական ֆաբրիկա, զարկ տալ խոզաբուծության զարգացմանը։

Գյուղատնտեսության բնագավառում գոյություն ունեցող լուրջ թերությունների հիմնական պատճառներից մեկն այն է, որ քիչ թվով կոմունիստներ են աշխատում կոլտնտեսություններում և սովխոզներում։ Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ արտադրություն ուղարկել ավելի շատ թվով կոմունիստների, քանի որ բուն արտադրության մեջ է վճռվում նյութական բարիքների արտադրության, պլանների կատարման բախտը։

Այդ գործում քիչ խնդիրներ չունեն նաև կոմերիտական կազմակերպությունները։ Սակայն կոմերիտականների ուժերը կոլտնտեսային արտադրության մեջ ինչպես հարկն է չեն օգտագործվում, որի հիմնական պատճառը պարտիական կազմակերպությունների թույլ ղեկավարությունն է կոմերիտական կազմակերպությունների նկատմամբ։

Շրջանի գյուղատնտեսության բնագավառում թերություններն ավելի քիչ կլինեին, եթե շրջկոմը և սկզբնական պարտիական կազմակերպությունները հետևողականություն հանդես բերեին որոշումների կատարման նկատմամբ։ Այլապես ինչով բացատրել, որ շրջկոմն իր որոշումներում կոլտնտեսությունների վարչություններին բազմիցս պարտավորեցրել է ժամանակին նախապատրաստել անհրաժեշտ քանակությամբ կրակային չորանոցներ, բայց այդ որոշումները մնացել են թղթի վրա, որի հետևանքով ծխախոտը ժամանակին չի չորացվում։

Դեռևս բավարար չի կարելի համարել աշխատանքի կազմակերպման դրվածքը որոշ կոլտնտեսություններում (Ուզունթալա, Կույբիշև, Գոշ, Փոլադ և այլն)։ Բավական է ասել, որ 459 մարդ չի մասնակցել կոլտնտեսային աշխատանքներին և 1388 մարդ չի կատարել աշխօրերի պարտադիր մինիմումը։ Աշխատանքային կարգապահության անբավարար վիճակը բացասաբար է անդրադառնում կոլտնտեսությունների էկոնոմիկայի վրա։ Շրջանի ետ մնացող կոլտնտեսությունների էկոնոմիկայի ուսումնասիրությունը ցույց տվեց, որ այդ կոլտնտեսություններում (Փոլադ, Գոշ, Աղքիլիսա, Կույբիշև) առանձնապես վատ է աշխատանքային կարգապահությունը։ Առանձին կոլտնտեսականներ տարվելով իրենց անձնական օգտագործման տակ եղած տնտեսությունով, ինչպես հարկն է չեն մասնակցում կոլտնտեսային աշխատանքներին, որի հետևանքով ցածր է ստացված արդյունքը։ Դա հատկապես երևում է նրանից, որ կոլտնտեսականներն ունեն շատ անասուններ, որը խանգարում է հանրային անասնաբուծության զարգացմանը, կերի կայուն բազայի ստեղծմանը։ Կոլտնտեսությունները ստիպված են լինում եկամտի զգալի մասը հատկացնել անասնակերի ձեռքբերման, այլ ոչ թե այն օգտագործել տնտեսության ընդհանուր վիճակը բարելավելու համար։ Պարտիայի շրջանային կոմիտեն, աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետի գործադիր կոմիտեի հետ միասին այս հարցը քննարկեց և կոնկրետ միջոցառումներ նշեց նշված կոլտնտեսությունների էկոնոմիկան բարելավելու ուղղությամբ։

Վերցրած սոցիալիստական պարտավորությունները պատվով կատարելու և ընդհանրապես շրջանի էկոնոմիկան բարձրացնելու գործում մեծ տեղ ունեն կադրերը։ Շրջանի 19 կոլտնտեսությունների նախագահներից և 2 սովխոզների

դիրեկտորներից բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն ունեն 7-ը, իսկ գյուղատնտեսության մասնագետներ են 11-ը։ Առաջին հայացքից թվում է, թե լավ է կադրերի տեղադրման գործը։ Բայց դա իրականում այդպես չէ։ Կոլտնտեսությունների ղեկավարների մի որոշ մասը պրակտիկներ են։ Կար ժամանակ, որ նրանք վատ չէին աշխատում և քիչ ծառայություններ չունեն։ Բայց պետք է խոստովանել, որ այժմ նրանք դժվարանում են և չեն ապահովում այժմյան խնդիրների լուծումը։ Պետք է այդպիսիների փոխարեն առաջ քաշել երիտասարդ ընկերների, որոնք իրենց ջանքերը չեն խնայի կոլտնտեսությունների էկոնոմիկան առաջ մղելու գործում։

Չնայած շրջանային կոմիտեն վերջին շրջանում քիչ աշխատանք չի կատարել կոլտնտեսությունների ղեկավար կազմը ամրապնդելու ուղղությամբ, բայց այդ դեռ բավական չէ։ Լուրջ ուշադրություն պետք է նվիրել միջին ղեկավար կազմի (բրիգադավարներ, ֆերմաների վարիչներ) ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության գործին։ Որոշ կոլտնտեսություններում (Կույբիշև, Ուզունթալա և այլն) ղեկավարների, ինչպես և առանձին կոմունիստների կողմից անվստահություն կա երիտասարդներին (որոնք ունեն միջնակարգ կրթություն) կոլտնտեսային արտադրության այս կամ այն տեղամասում ղեկավար աշխատանքի առաջ քաշելու գործում։ Կոլտնտեսային կադրերի հետ տարվող աշխատանքի հիմնական թերություններից մեկն էլ այն է, որ նրանց համար չի կազմակերպվում գյուղատնտեսության էկոնոմիկայի ուսումնասիրությունը, որի հետևանքով էլ շատ ֆերմայի վարիչներ, բրիգադավարներ, օղակավարներ, նույնիսկ հաշվապահական առանձին աշխատողներ և կոլտնտեսությունների ղեկավարներ չեն կարողանում գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի ճշգրիտ հաշվումներ կատարել, որոշել տնտեսության զարգացման հեռանկարային խնդիրները և այլն։

Վերը նշված թերություններն ավելի քիչ և մեր վերցրած պարտավորությունների կատարումն ավելի լավ կլինեին, եթե վերադաս սովետական-տնտեսական օրգանների մի շարք աշխատողներ լուրջ մոտեցում հանդես բերեին դեպի գործը։ Այդ ընկերները կարծես թե Արարատյան դաշտավայրից բացի, ռեսպուբլիկայի մյուս շրջանների համար պատասխանատվություն չեն կրում։ Բերենք որոշ փաստեր. ՄՏ կայանների վերակառուցումից հետո շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզներն ունեն 84 տրակտոր, 26 կոմբայն, 14 կալսիչ և այլ մեքենաներ։ Սակայն բերքահավաքի ժամանակ ինչպե՞ս կատարվեց ավտոդողերի, մեքենաների պահեստամասերի մատակարարումը։ Շատ վատ։ Մի՞թե բերքահավաքի այս տարվա ձգձգումները և կորուստները նաև դրա հետևանքը չեն։ Շատ օրինակներ կարելի է բերել, երբ բերքահավաքի եռուն օրերին կոմբայններն այս կամ այն, թեկուզ հասարակ մասի փչանալու պատճառով օրերով, նույնիսկ շաբաթներով դաշտում կանգ էին առնում։

Մի շարք կոլտնտեսություններ յուրաքանչյուր տարի մեծ քանակությամբ միրգ են ստանում, բայց ժամանակին ռեալիզացիայի չի ենթարկվում և համարյա բարձրացման փչանում է։ Այս կապակցությամբ մի քանի անգամ հարց ենք բարձրացրել Հայարդխորհրդի, Հայկոոպի, Ժողտնտխորհի առջև՝ Իջևանում պահածոների գործարան կառուցելու համար։ Այդ օրգաններում աշխատող ընկերները մեզ չեն մերժել, հավաստիացումներ են տվել, բայց խոստումը այնպես էլ մնացել է խոստում։

ՀԿՊ Իջևանի շրջանային կոմիտեն և շրջսովետի գործկոմը իրենց աշխա-



տանքի հիմնական խնդիրներից են համարում այգեգործության հետագա զարգացումը ոռոգելի տարածությունների հաշվին։ Այդ առումով մեծ նշանակություն կունենա Մինգեչաուրի բազայի վրա ջրհան կայանի կառուցումը։ Շրջանի ղեկավար պարտիական և սովետական օրգաններին, կոլտնտեսությունների ղեկավարներին շատ է անհանգստացնում այն, որ անասունների ցածր մթերատվության (հատկապես կաթի) պատճառներից մեկը եղել է անասնապահական ֆերմաների շատ հեռու գտնվելը կոլտնտեսություններից, որը չափազանց դժվարացնում է անասունների խնամքը։ Այժմ կոնկրետ միջոցառումներ են իրականացվում անասնապահական ֆերմաները կոլտնտեսություններին մոտեցնելու ուղղությամբ, զարկ է տրվում տիպային անասնագոմերի շինարարությանը։ Արդեն զգալի գործ են կատարել Ենոքավանի, Աչաջրի, Ուզունթալայի, Սարիգյուղի և այլ կոլտնտեսություններ։

Անասնապահության հետագա զարգացման և այն գյուղատնտեսության ավելի եկամտաբեր ճյուղ դարձնելու համար չափազանց կարևոր է մեխանիզացիայի կիրառումը։ Ճիշտ է, շրջանի կոլտնտեսություններում գոմաղբի տեղափոխումը մեքենայացված է, բայց դա դեռ չի բավարարում մեզ։ Կովերի կիթը մեքենայացված է միայն Թալայի կոլտնտեսությունում։

Գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու նպատակով անհրաժեշտ է կտրուկ միջոցներ ձեռնարկել գյուղատնտեսական մեքենաներն ավելի ռացիոնալ օգտագործելու, գյուղատնտեսական աշխատանքները, ինչպես նշեցինք վերևում, հատկապես ծխախոտի բնագավառում մեքենայացնելու ուղղությամբ։

Հայաստանի ԿՊ Կենտկոմի Հոկտեմբերյան պլենումը քննարկելով սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը Արտաշատի, Մարտունու, ինչպես նաև Իջևանի շրջաններում, կոնկրետ միջոցառումներ նշեց սոցիալիստական մրցության գործը հետագայում բարելավելու ուղղությամբ։ Իջևանի պարտիական կազմակերպություններից պահանջվում է կոնկրետ կազմակերպական աշխատանք ծավալել շրջանի ողջ աշխատավորության ուժերը մոբիլիզացնելու, ՀԿՊ Կենտկոմի պլենումի որոշումներն անշեղորեն կենսագործելու և շրջանն առաջավոր դարձնելու համար։

# ԵՐԿՐՈՒՄ ԳՐԱԴԱՐԱՆԱՅԻՆ ԳՈՐԾԻ ՎԻՃԱԿԻ ԵՎ ՆՐԱ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ ՄԻՋՈՑՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Վերջերս ՍՄԿՊ Կենտկոմը որոշում ընդունեց «Երկրում գրադարանային գործի վիճակի և նրա բարելավման միջոցների մասին»։ Այդ որոշման մեջ նշվում է, որ Սովետական իշխանության տարիների ընթացքում մեր երկրում գրադարանային գործը զգալիորեն զարգացել է։ Երկրի միայն մասսայական գրադարանների թիվը նախապատերազմյան ժամանակի համեմատությամբ մեծացել է ավելի քան 10 անգամ, իսկ դրանց գրքային ֆոնդերը՝ 69 անգամ։ Անշեղ կերպով աճում է ընթերցողների թիվը։ Գրադարանները, իրականացնելով պարտիայի XXI համագումարի որոշումները, զգալի աշխատանք են կատարում գրքի պրոպագանդայի ասպարեզում, նպաստում են բանվորների, կոլտնտեսականների և ինտելիգենցիայի հանրակրթական, քաղաքական, կուլտուրական, գիտա-տեխնիկական մակարդակի բարձրացմանը, գործնական օգնություն են ցույց տալիս պարտիական, սովետական և հասարակական կազմակերպություններին՝ աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում։*

*Սակայն գրադարանների աշխատանքի բովանդակությունն ու մակարդակը դեռևս լիովին չեն համապատասխանում կոմունիստական հասարակության ծավալուն շինարարության խնդիրներին։ Բազմաթիվ գրադարաններ կտրված են արտադրական կյանքից, լավ չեն բավարարում քաղաքական, արտադրական, գեղարվեստական, գիտա-տեխնիկական և տեղեկատու գրականության նկատմամբ աշխատավորների աճող պահանջները։ Գրադարաններում կուտակվել է մեծ քանակությամբ հնացած գրականություն, որը կորցրել է իր գիտական և պրակտիկ արժեքը, մինչդեռ պակասում են լավ գրքեր գիտելիքների այնպիսի կարևորագույն ճյուղերի վերաբերյալ, ինչպիսիք են՝ արտադրության մեքենայացումը, ավտոմատացումը և տեխնոլոգիան, շատ քիչ գրականություն կա գյուղատնտեսության հրատապ հարցերի, առաջավոր փորձի վերաբերյալ, պակասում են հանրամատչելի գրքեր մասսայական պրոֆեսիաների աշխատողներին օգնելու համար։*

*Մի շարք գրադարաններում անբավարար է դրված մասսայական աշխատանքը, վատ են օգտագործվում գրքերն ընթերցողներին մոտեցնելու բազմազան ձևերը, կարգավորված չէ նոր ստացվող գրականության ինֆորմացիան, չափազանց թույլ է դրված բիբլիոգրաֆիական գիտելիքների պրոպագանդան բնակչության, հատկապես դպրոցների աշակերտության և բուհերի ուսանողության մեջ։ Այս ամենի հետևանքով բնակչության զգալի մասը գրականությամբ չի սպասարկվում, անհրաժեշտ օգնություն չի ստանում գրքի վրա կատարվող ինքնուրույն աշխատանքում։*

*Լուրջ թերություններ կան բիբլիոգրաֆիական աշխատանքում։ Հրատարակվող գրական տեղեկատուները հաճախ կտրված են կոմունիստական շինարարության պրակտիկ պահանջներից, բնավ էլ չեն բավարարում տեխնիկական պրոգրեսի, արտադրության կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման արմատավորման խնդիրներին, աշխատավորների գաղափարական-քաղաքական և գիտա-տեխնիկական մակարդակի բարձրացմանը։ Շատ քիչ բիբլիոգրաֆիական ձեռնարկներ են հրատարակվում զանազան կատեգորիայի ընթերցողների համար, գիտության, տեխնիկայի, արտադրության կոնկրետ հարցերի վերաբերյալ գրեթե չկան ձեռնարկներ մասսայական պրոֆեսիաների աշխատողներին օգնություն ցույց տալու համար։ Մինչդեռ հաճախակի են այն դեպքերը, երբ միատիպ բիբլիոգրաֆիաներ են հրատարակվում միևնույն հարցերի վերաբերյալ, որ ստեղծում է ավելորդ զուգահեռություն, ցրում է ուժերն ու պետական միջոցները։*

*Շատ գրադարանների նյութա-տեխնիկական բազան անբավարար վիճակում է գտնվում։ Որոշ գրադարաններ չունեն շենքեր ու ընթերցասրահներ, տեղավորված են ոչ պիտանի շենքերում և մասնավոր տներում։ Շատ գրադարաններում պակասում են սեղաններ, աթոռներ, կատալոգային արկղներ, ստելլաժներ։ Բազմաթիվ խոշոր գրադարանների սարքավորումը հնացել է, այնտեղ շատ դանդաղ է արմատավորվում գրադարանային աշխատանքի պրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը։ Պատշաճ ուշադրություն չի դարձվում կոլտնտեսությունների, սպառողական և արհեստագործական կոոպերացիայի միջոցների հաշվին գրադարանային շենքերի շինարարությանը։*

*Վատ է դրված գրադարանային կադրերի ընտրության և դաստիարակման աշխատանքը։ Պետական մասսայական գրադարանների աշխատողների մոտ 70 տոկոսը մասնագիտական գրադարանային կրթություն չունի, չի կազմակերպված գրադարանային կադրերի պատրաստումը գիտա-տեխնիկական, բուհական և մասնագիտական գրադարանների համար, տեղի ունի գրադարանային աշխատողների մեծ հոսունություն և փոփոխականություն։*

*Գրադարանների աշխատանքի նշված լուրջ թերությունները վկայում են այն մասին, որ ՍՍՌՄ Կուլտուրայի մինիստրությունը, ՍՍՌՄ Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը, միութենական ռեսպուբլիկաների կուլտուրայի մինիստրությունները և լուսավորության մինիստրությունները, ՀԱՄԿԽ-ն, ինչպես նաև պարտիական, սովետական, արհմիութենական և կոմերիտական շատ օրգաններ անբավարար են ղեկավարում գրադարանային գործը, անհրաժեշտ օգնություն ցույց չեն տալիս գրադարաններին՝ նյութա-տեխնիկական բազայի ամրապնդման, ընթերցողների հետ կապերի ուժեղացման, կադրերի ընտրության և դաստիարակման գործում։ Գրադարանային աշխատանքի հարցերի լուծման մեջ դեռևս թույլ է ներգրավվում հասարակայնությունը, դեռ շատ ցածր է գրադարանների խորհուրդների դերը, որոնք էական ազդեցություն չեն գործում գրքային ֆոնդերով աշխատավորների սպասարկման որակի բարելավման վրա։*

*ՍՄԿՊ Կենտկոմն առաջարկել է միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների Կենտկոմներին, պարտիայի երկրամասային, մարզային, քաղաքային, շրջանային կոմիտեներին, միութենական ռեսպուբլիկաների Մինիստրների Սովետներին, ՍՍՌՄ Կուլտուրայի մինիստրությանը, միութենական ռեսպուբլիկաների կուլտուրայի մինիստրություններին և լուսավորության*

մինիստրություններին, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Պետական գիտա-տեխնիկական կոմիտեին, ՍՍՌՄ Բարձրագույն և միջնակարգ հատուկ կրթության մինիստրությանը և ՀԱՄԿԽ-ին, ինչպես նաև տեղական սովետական օրգաններին՝ վերացնել գրադարանների աշխատանքում նշված թերությունները և անհրաժեշտ միջոցներ ձեռք առնել՝ արմատապես բարելավելու նրանց գործունեությունը, է՛լ ավելի լիովին օգտագործել գիրքը՝ յուրաքանչյուր սովետական մարդու մեջ կոմունիստական հատկություններ դաստիարակելու գործում, հասնել այն բանին, որ գրադարանները դառնան քաղաքական, հանրակրթական, գիտա-տեխնիկական, գյուղատնտեսական և պրոֆեսիոնալ գիտելիքների մասսայական պրոպագանդայի իսկական կենտրոններ, պարտիական կազմակերպությունների հենակետերը՝ աշխատավորների կոմունիստական դաստիարակության խնդրում:

ՍՄԿԳ Կենտկոմը գտնում է, որ գրադարանների գլխավոր խնդիրն է՝ պարտիայի XXI համագումարի պատմական որոշումների պրոպագանդան, Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության քաղաքականության և որոշումների պարզաբանումը, պարտիայի և պետության ակտիվ օգնությունը սովետական մարդկանց դաստիարակման և կոմունիստական գիտակցականության ու կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման գործում: Գրադարանները բանվորներին, կոլտնտեսականներին և ինտելիգենցիային պետք է օգնեն իրենց գիտելիքների կատարելագործման և էսթետիկական ճաշակի ձևավորման, գիտության, տեխնիկայի նորագույն նվաճումների և աշխատանքի առաջավոր մեթոդների տիրապետման մեջ, ըստ ամենայնի աջակցեն երիտասարդության պոլիտեխնիկ կրթության և բարոյական բարձր հատկությունների դաստիարակման խնդրում: Անհրաժեշտ է ավելի լայնորեն ծավալել գրքի պրոպագանդան, է՛լ ավելի լիովին բացահայտել և օգտագործել գրքային ֆոնդերի հարստությունները, դրանք դարձնել մատչելի և գործնականորեն օգտագործելի բոլոր քաղաքացիների և, հատկապես, սովորող երիտասարդության համար, գործարար կոնկրետ օգնություն ցույց տալ ընթերցողներին՝ գրքի ընտրության և գրքի վրա ինքնուրույն աշխատանքի մեջ:

Միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների Կենտկոմներին, պարտիայի երկրամասային, մարզային կոմիտեներին, միութենական ռեսպուբլիկաների Մինիստրների Սովետներին, աշխատավորների դեպուտատների երկրամասային և մարզային գործկոմներին, ՀԱՄԿԽ-ին, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Պետական գիտա-տեխնիկական կոմիտեին, ՍՍՌՄ Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությանը, ժողտնտխորհներին հանձնարարված է քննարկել և լուծել գրադարանների նյութա-տեխնիկական բազայի բարելավման հետ կապված հարցերը: Մոտակա 2—3 տարում հնարավորություններ ստեղծել գրադարաններին բարեկարգ շենքեր հատկացնելու համար, դրանք ապահովել կահույքով և գրադարանային սարքավորումով:

Հավանություն է տրվել այն առաջավոր կոլտնտեսությունների նախաձեռնությանը, որոնք կառուցել են սեփական լավ սարքավորված գրադարաններ իրենց ընթերցասրահներով: Հանձնարարվել է կոլտնտեսություններին, սպառողական և արհեստագործական կոոպերացիային՝ օգնություն ցույց տալ գրադարաններին ոչ միայն շենքերի կառուցման, այլև գրքային ֆոնդերի



կոմպլեկտավորման, հատկապես մասնագիտական գրականություն, ուսումնական ձեռնարկներ, տեղեկատուներ և պարբերական հրատարակություններ ձեռք բերելու գործում՝ որպես օգնություն դաշտավարներին, անասնաբույծներին, մեխանիզատորներին և գյուղատնտեսական արտադրության այլ կատեգորիայի աշխատողներին:

Բոլոր հիմնարկներին և կազմակերպություններին արգելվել է գրադարանների շենքերն այլ նպատակներով օգտագործելը և գրադարանները ավելի վատ շենքեր փոխադրելը:

Քննարկել ոչ-պիտանի շենքերում գտնվող գրադարանները բարեկարգ շենքեր փոխադրելու հնարավորության հարցը՝ զանազան կազմակերպությունների և հիմնարկների գրասենյակների խտացման հաշվին:

Քաղաքների և առանձին բնակելի շրջանների պլանավորումը կազմելիս, հաստատելիս և դրանք կառուցելիս, ինչպես նաև բանվորական ավաններում և գյուղական վայրերում կուլտուրայի տներ և ակումբներ կառուցելիս նախատեսել այնտեղ մասսայական գրադարանների տեղավորումը:

Գործարանային և ֆաբրիկային գրադարանների աշխատանքում զուգահեռությունից խուսափելու և միջոցներն ավելի ռացիոնալ օգտագործելու նպատակով հանձնարարված է պարտիայի շրջանային, քաղաքային, մարզային և երկրամասային կոմիտեներին ու միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների Կենտկոմներին՝ արհեստակցական և տնտեսական օրգանների հետ մեկտեղ քննարկել միմյանցից ոչ հեռու եղած զանազան գերատեսչությունների փոքր գրադարանների, ինչպես նաև մեկ ձեռնարկության կամ հիմնարկի տերիտորիայում գտնվող գրադարանների միավորման հարցը: Նոր գրադարաններ կազմակերպելիս հաշվի առնել բավականաչափ թվով բնակչության առկայությունը, ինչպես նաև այն ձեռնարկությունների և կազմակերպությունների պետական նշանակությունը, որոնց կից կազմակերպվելու են այդ գրադարանները: Սակավաթիվ բնակչություն ունեցող վայրերում, անհրաժեշտության դեպքում, գոյություն ունեցող հաստիքների և հատկացված գումարների սահմաններում կազմակերպել գրադարանների ֆիլիալներ, շրջիկ-գրադարաններ և մոտակա գրադարաններից գրքերի բացթողման կետեր: Այդ աշխատանքում լայնորեն ներգրավել հասարակայնությանը, տնային տնտեսուհիներին, երիտասարդությանը: Մեթոդական օգնությունը և գրադարանների աշխատանքի կոորդինացիան դնել կուլտուրայի տեղական օրգանների վրա:

Միութենական ռեսպուբլիկաների Մինիստրների Սովետները պարտավոր են մշակել և իրագործել միջոցառումներ՝ ժողտնտխորհների և տեղական արդյունաբերության ձեռնարկություններում կազմակերպելու և ընդլայնելու գրադարանների սարքավորման՝ մետաղե և փայտե ստելաժների, գրապահարանների և կատալոգային պահարանների ու արկղների, ցուցապահարանների, կահույքի արտադրությունը:

Տեղական պարտիական և սովետական օրգաններին, ՍՍՌՄ Կուլտուրայի մինիստրությանը, ՀԱՄԿԽ-ին, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Պետական գիտա-տեխնիկական կոմիտեին, ՍՍՌՄ Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությանը, միութենական ռեսպուբլիկաների կուլտուրայի մինիստրություններին և լուսավորության մինիստրություններին առաջարկված է ապահովել գրադարանների պրոֆիլային կոմպլեկտավորումը

*և դրանց համալրումը նորագույն քաղաքական, գիտա-տեխնիկական, արտա-
դրական, գեղարվեստական, տեղեկատու, ուսումնական գրականությամբ և
դիտողական պիտույքներով. անհրաժեշտ միջոցներ ձեռք առնել գրադարան-
ների գրքային ֆոնդերը հնացած հրատարակություններից մաքրելու համար.
կազմակերպել չօգտագործվող դուբլետային և ոչ-պրոֆիլային գրականության
վերաբաշխումը գրադարանների միջև. ավելացնել գրքային ֆոնդերի շրջանա-
ռությունը. մոտակա 2—3 տարում լուծել յուրաքանչյուր բնակավայրի և ըն-
տանիքի գրադարանով սպասարկելու խնդիրը:*

*Գտնել նպատակահարմար կնիգոտորգերից և գրադարանային կոլեկտոր-
ներից հեռակա կոմպլեկտավորմամբ ստացվող գրքերի փաթեթման ու փո-
խադրման համար գրադարանների ծախսերի վերացումը, դրանք գրելով
կնիգոտորգերի և գրադարանային կոլեկտորների շրջանառության ծախքերի
հաշվին:*

*Գիրքն առավելագույն չափով ընթերցողներին մոտեցնելու նպատակով
ապահովել բոլոր աշխատավորների կողմից ուղած գրադարանից ազատ կեր-
պով օգտվելու իրավունքը, անկախ նրանից, թե որ գերատեսչությանն է այն
ենթարկվում, բացառությամբ փակ տիպի գրադարաններից. համարել սխալ,
երբ գրադարանը սահմանափակվում է մեկ ձեռնարկության կամ գերատես-
չության սպասարկելու շրջանակներով:*

*ՍՍՌՄ Կուլտուրայի մինիստրությանը հանձնարարված է բարելավել
գրադարանները նոր լույս տեսնող գրականությամբ մատակարարելու գործը,
կարգավորել գրադարանային կոլեկտորների աշխատանքը, արգելել առանց
գրադարանների հայտերի նրանց գրականություն ուղարկելը, ինչպես նաև
հրատարակչական պլանները կազմելիս և գրադարանային գրքային ֆոնդերի
ընթացիկ կոմպլեկտավորման ժամանակ մշտապես հաշվի առնել գրադարան-
ների կարծիքն ու շահերը:*

*Հրատարակչությունները և «Սոյուզկնիգան» պարտավոր են յուրա-
քանչյուր գրադարան ժամանակին ապահովել հրատարակչությունների թե-
մատիկ պլաններով և գալիք տարվա պատվերների բլանկներով:*

*ՍՍՌՄ Կուլտուրայի մինիստրությանը հանձնարարված է 1960 թվականին
ձեռնարկել սովետական մամուլի ըստ հնգամյակների համահավաք բիբլիո-
գրաֆիական տեղեկատուի և ամսագրային հոդվածների տարեգրքերի հրա-
տարակմանը:*

*ՍՍՌՄ Պետական հանրային գիտա-տեխնիկական գրադարանին և կենտ-
րոնական գիտա-տեխնիկական, ճյուղային և մասնագիտական գրադարան-
ներին՝ ապահովել տարբեր կատեգորիաների ընթերցողների համար գիտու-
թյան, տեխնիկայի, ժողովրդական տնտեսության էկոնոմիկայի համապա-
տասխան ճյուղերի ընթացիկ բիբլիոգրաֆիաներ ստեղծելու պլանային աշխա-
տանքը. կազմակերպել նոր գրքերի կանոնավոր ինֆորմացիան զանազան
մասսայական պրոֆեսիաների համար, ապահովել ընթացիկ, հետադարձ և
թեմատիկ բիբլիոգրաֆիաների ստեղծման պլանային աշխատանքը:*

*ՍՍՌՄ Կուլտուրայի Մինիստրության և միութենական ռեսպուբլիկաների
կուլտուրայի մինիստրությունների վրա է դրված երկրում գրադարանային
գործի մեթոդական ղեկավարությունը և բոլոր գերատեսչությունների, կազ-
մակերպությունների և կոլտնտեսությունների գրադարանների գործունեու-
թյան կոորդինացիան:*



*Մինիստրությունները, ՀԱՄԿԽ-ն, գերատեսչությունները և այլ կազմա-
կերպություններ, որոնք ունեն իրենց սիստեմի գրադարանները, իրագոր-
ծում են իրենց ենթակա գրադարանների անմիջական ղեկավարությունը և
ապահովում են հասարակայնության լայն մասնակցությունը գրադարանների
աշխատանքի բարելավման և գրքերն ընթերցողներին մոտեցնելու գործում:*

*ՍՍՌՄ Կուլտուրայի մինիստրությանը, ՀԱՄԿԽ-ին և ՍՍՌՄ Մինիստրների
Սովետի շինարարության գործերի Պետական կոմիտեին հանձնարարվել է
մշակել զանազան տիպի մասսայական գրադարանների համար հատուկ շեն-
քերի տիպային նախագծեր, գրադարանների բացման և աշխատանքի օրինա-
կելի պայմաններն ու կարգը, մասսայական գրադարանների սարքավորման
մոտավոր ցանկը, ինչպես նաև սահմանել միասնական որակավորման
պահանջներ բոլոր գերատեսչությունների և կազմակերպությունների գրադա-
րանային աշխատողների համար և ընդհանուր հաստիքային նորմաներ պե-
տական և արհմիութենական զանազան տիպի մասսայական գրադարանների
համար:*

*Երկրի գրադարանների աշխատանքի նկատմամբ պետական վերահսկո-
ղության իրագործման նպատակով որոշված է ՍՍՌՄ Կուլտուրայի մի-
նիստրության կազմում ստեղծել Գլխավոր գրադարանային տեսչություն՝
գոյություն ունեցող հաստիքների սահմաններում:*

*Մեթոդական օգնությունը, կոնսուլտատիվ աշխատանքը երկրի գրադա-
րանների հետ՝ գրադարանավարության և բիբլիոգրաֆիայի ասպարեզում
դրված է Վ. Ի. Լենինի անվան ՍՍՌՄ Պետական գրադարանի վրա, իսկ գի-
տա-տեխնիկական գրադարանների գծով՝ ՍՍՌՄ Պետական հանրային գիտա-
տեխնիկական գրադարանի վրա:*

*Պարտիական, սովետական և արհմիութենական օրգաններին առաջարկ-
վել է վճռականապես բարելավել գրադարանային գործի ղեկավարումը, հա-
սարակայնությանն ակտիվորեն մասնակից դարձնել գրադարանների աշխա-
տանքին, բնակչության մեջ գրքի պրոպագանդմանը, գրադարանների շենքերի
բարեկարգմանը և շինարարությանը, բարձրացնել գրադարանային խորհուրդ-
ների դերը, նրանցում ներգրավել պարտիական, սովետական, արհմիութենա-
կան և կոմերիտական ակտիվին, ուսուցիչներին, արդյունաբերության և գյու-
ղատնտեսության մասնագետներին, որոնք ընդունակ լինեն գրադարանների
աշխատանքը կազմակերպելիս այն սերտորեն շաղկապել տնտեսական ու
կուլտուրական շինարարության և աշխատավորների կոմունիստական դաս-
տիարակության խնդիրների հետ:*

*ՍՍՌՄ Կուլտուրայի մինիստրությանը, ՀԱՄԿԽ-ին և ՍՍՌՄ Մինիստրների
Սովետի Պետական գիտա-տեխնիկական կոմիտեին՝ մեկամսյա ժամկետում
պատրաստել և հրատարակել գրադարանների խորհուրդների կանոնադրու-
թյունը:*

*ՍՍՌՄ Կուլտուրայի մինիստրությանը, միութենական ռեսպուբլիկաների
կուլտուրայի մինիստրություններին և բոլոր հրատարակչություններին առա-
ջարկված է կազմակերպել գրքերի կենտրոնացված դասակարգումը և կատա-
լոգավորումը, գրադարաններն ապահովել ուսումնական և դիտողական պի-
տույքներով՝ գրքի հետ տարվող ինքնուրույն աշխատանքի համար, տեղեկա-
տուներից, բիբլիոգրաֆիական տեղեկատուներից և կատալոգներից օգտվե-
լու համար:*

ՍՍՌՄ Կուլտուրայի մինիստրությանը, միութենական ռեսպուբլիկաների կուլտուրայի մինիստրություններին, ինչպես նաև այլ մինիստրությունների և գերատեսչությունների, պարտիական, սովետական, արհմիութենական և կոմերիտական օրգաններին առաջարկված է գրադարաններն ամրապնդել որակյալ կադրերով, միջոցներ ձեռք առնել բարելավելու բարձր ու միջին որակավորման գրադարանային աշխատողների պատրաստումը, հատկապես գիտա-տեխնիկական, բուհական և մասնագիտական գրադարանների համար։ Նախատեսել դասընթացային միջոցառումների և սեմինարների սիստեմ՝ գրադարանավարների գաղափարական-քաղաքական մակարդակը և գործարար որակավորումը բարձրացնելու համար։

Կենտրոնական և տեղական թերթերի և ամսագրերի խմբագրությունները, ինչպես նաև ռադիոն և հեռուստատեսությունը պարտավոր են լուսաբանել գրադարանների աշխատանքի փորձը, վճռականորեն բարելավել գրքի պրոպագանդան, սիստեմատիկ կերպով տպագրել գրքերի գրախոսականներ և գրական տեսություններ՝ գիտելիքների կարևորագույն ճյուղերի, գիտության, արտադրության և առաջավոր փորձի նվաճումների մասին. Հրապարակել առավել կարևոր գրական երկերի հանձնարարական ցուցակներ, ինչպես նաև գրքեր՝ մասսայական պրոֆեսիաների և արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրության հիմնական ճյուղերի բանվորներին և կոլտնտեսականներին օգնություն ցույց տալու համար։

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԳՈՐԾԱՐԱՐ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅՈՒՆ

Ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության ֆունկցիայի ճիշտ կիրառումը պարտիական կազմակերպական աշխատանքի կարևորագույն խնդիրներից, տնտեսական հարցերի հաջող լուծման գրավականներից մեկն է։ Անդրադառնալով այդ հարցին՝ պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հունիսյան պլենումը պարտիական կազմակերպությունների ուշադրությունը բևեռեց ձեռնարկությունների ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու՝ պարտիական կանոնադրությամբ նրանց վերապահված ֆունկցիայի անշեղ կենսագործման վրա։ Կենտրոնական Կոմիտեի պլենումի որոշմամբ վերահսկողության նոր ձև առաջադրվեց։

Կենտրոնական Կոմիտեն նպատակահարմար գտավ արտադրական և առևտրական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպություններում պարտիայի անդամներից և թեկնածուներից ստեղծել հանձնաժողովներ, որոնք պարտիական կազմակերպությունների անմիջական ղեկավարությամբ վերահսկելու են ամբողջ նոմենկլատուրայով արտադրական առաջադրանքները, պետական պատվերներն ու մատակարարումները ձեռնարկության կողմից ժամանակին և բարձր որակով կատարելու, պետական կարգապահությունը խստորեն պահպանելու, տեղայնության և նեղ գերատեսչական մոտեցման դրսևորումների դեմ պայքարն ուժեղացնելու համար։ Այժմ, երբ բոլոր ձեռնարկություններում ծավալվում է նորարարությունը, երբ յուրաքանչյուր գործարան, ֆաբրիկա, աշխատող ձգտում է յոթնամյա պլանը կատարել և գերակատարել բոլոր ցուցանիշներով, առավել ևս բարձրանում է պարտիական վերահսկողության ձևերի ու մեթոդների հետագա բարելավման նշանակությունը։

Էլեկտրատեխնիկական գործարանի կոլեկտիվն անցած 9 ամիսների ընթացքում պլանից դուրս երկրին տվել է մեծ քանակությամբ արտապլանային արտադրանք։ Կոլեկտիվն արտադրության զգալի աճի է հասել շնորհիվ այն բանի, որ պարտիական կազմակերպությունը կարողանում է ճիշտ կենսագործել իր վերահսկողության ֆունկցիան ադմինիստրացիայի նկատմամբ։ Գործարանում ստեղծված նոր տեխնիկայի ներդրմանը և արտադրական պրոցեսների մեքենայացմանն ու ավտոմատացմանը, թողարկվող արտադրանքի որակի բարելավմանը, տնտեսական այլ շրջաններ էլեկտրաշարժիչների առաքմանը և արտասահմանյան պատվերների կատարմանը վերահսկող հանձնաժողովները ձեռնամուխ են եղել իրենց պարտականությունների կատարմանը, որի առաջին արդյունքներն արդեն առկա են։

Տնտեսական այլ շրջաններ էլեկտրաշարժիչների առաքմանը վերահսկող հանձնաժողովը (ինժեներ-էլեկտրիկ Վ. Սիմոնյանի գլխավորությամբ) հան-

գամանորեն ուսումնասիրել է արտադրվող էլեկտրամեքենաների առաքման վիճակը: Հատուկ էլեկտրաշարժիչների պատրաստման համար Կրասնոդարի երկրամասի Գառո գործարանի պատվերի կատարումը ձգձգվում էր. հանձնաժողովը ուսումնասիրեց այդ հարցը և առաջարկություններ ներկայացրեց գործարանի ղեկավարությանը, որը ձեռնարկեց կոնկրետ միջոցառումներ պատվերը կարճ ժամանակամիջոցում կատարելու համար: Հանձնաժողովի աշխատանքը նաև նպաստել է երրորդ եռամսյակում ժամանակին կատարելու արտասահման էլեկտրաշարժիչներ ուղարկելու բոլոր պատվերները:

Երևանի էլեկտրամեխանիկական գործարանի պարտիական կազմակերպության փորձն ասում է, որ պարտիական կազմակերպության վերահսկողությունը նախ և առաջ հասարակական վերահսկողություն է, վերահսկողություն ներքևից, կոլեկտիվի բոլոր անդամների մասնակցության գործնական ձևն է ձեռնարկության կարևոր հարցերի լուծմանը:

Արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունններն ավելի հաճախ են լսում տնտեսական աշխատողների հաշվետվությունները որպես պարտիական վերահսկողության միջոցներից մեկը: Սակայն ոչ բոլոր կազմակերպություններն են ճիշտ օգտագործում վերահսկելու այդ ձևը: Նրանք հաճախ սահմանափակվում են միմիայն հաշվետվություններ լսելով, նախնական ուսումնասիրություններ չեն կատարում, որի հետևանքով երբեմն գործը հանգում է նրան, որ ամբողջ աշխատանքը տարվում է ոչ թե թերությունների հայտաբերման ու վերացման, այլ սոսկ հարցերը քննարկելու, որոշումներ ընդունելու ուղղությամբ:

Ատաղձագործական ու մսի կոմբինատների, ասֆալտ-բետոնի գործարանի պարտիական կազմակերպությունները տարբեր ժամանակներում քննարկել են ձեռնարկությունների տնտեսական գործունեությանը վերաբերող շատ հարցեր. պարբերաբար լսել են դիրեկտորների հաշվետվություններ, ցեխերի պետերի զեկուցումներ ձեռնարկությունների տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարելավման, աշխատանքային ու պետական կարգապահության բարձրացման և այլ հարցերի վերաբերյալ և ընդունել տնտեսական ղեկավարներին պարտավորեցնող շատ որոշումներ: Սակայն, որովհետև ընդունված որոշումները չեն ամրապնդվել կազմակերպչական կենդանի գործով, բացակայել է հսկողությունը դրանց կատարման նկատմամբ, գործերի վիճակը քիչ բանով է փոխվել: Բավական է նշել, որ ատաղձագործական կոմբինատի, ասֆալտ-բետոնի գործարանի կոլեկտիվները չկատարեցին առաջին կիսամյակի պլանը:

Պարտիական վերահսկողությունը ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ իրական է այն դեպքում, երբ կենսագործվում են նշված միջոցառումները: Էականը այն չէ, թե քանի նիստ է եղել, տնտեսական ղեկավարների քանի հաշվետվություն է լսվել, այլ այն, որ օպերատիվ վերահսկողության շնորհիվ արագորեն վերացվեն թերությունները, սխալները:

«Սմիչկա» արտելի տնտեսական ղեկավարները հաճախ փորձում են ապացուցել, որ արտադրանքի ցածր որակը հումքը ժամանակին չստանալու և նրա վատ որակի հետևանք է միայն: Պարտիական բյուրոն քննարկել է այդ հարցը, բայց չի պարզել վատորակ արտադրանքի մյուս պատճառները, որի հետևանքով էլ բյուրոյի ընդունած որոշումը գործին ոչնչով չի օգնել: Մի՞թե պարտիական բյուրոյի համար պարզ չէ, որ լավորակ արտադրանքի համար



անհրաժեշտ է նաև աշխատանքը լավ կազմակերպել, որը բացակայում է «Սմիչկա» արտելում:

Տեղական շինանյութերի կոմբինատի կոլեկտիվը հասել է լավ արդյունքների: Պլանային արտադրանքի կատարման որոշակի միջոցներն ու ուղիները, ինչպես նաև կազմակերպչական-տեխնիկական միջոցառումներն այստեղ իրականացվում են պարտիական, պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ընդհանուր ուժերով: Պարտիական կազմակերպությունը չի խառնվում մանրուքներին, այլ հանգուցային հարցերում արտահայտում է իր կարծիքը, համապատասխան ուղղություն է տալիս, մոբիլիզացնում մասսաներին՝ վերացնելու թերությունները: Կոմբինատի տնտեսական ղեկավարները հենվում են կոլեկտիվի կարծիքի և փորձի վրա, միշտ խորհրդակցում են բանվորների, ինժեներների հետ, որի հետևանքով էլ նրանց առաջարկությունները հավանություն են գտնում կոլեկտիվի կողմից: Սակայն կան փաստեր, երբ առանձին ղեկավարներ պլանի կատարման ապահովումը գտնում են միմիայն հրամաններ արձակելու մեջ (Գ. Մարտիրոսյան— էլեկտրատեխնիկական գործարանի մոտորային ցեխային վարիչ, Գ. Անտոնյան— տաքսամոտորային պարկ), հաշվի չեն առնում կոլեկտիվի անդամների խորհուրդները, հոգատարություն չեն ցուցաբերում աշխատանքի և բանվորների կենցաղային պայմանների նկատմամբ: Պարզ է, որ նման ղեկավարների նույնիսկ ճիշտ կարգադրությունները հաճախ ժամանակին չեն կատարվում:

Առանձին տնտեսական ղեկավարներ էլ (Մ. Մկրտչյան—բուսապատման տրեստ) համոզված չլինելով իրենց միջոցառումների ճշտության մեջ, հետապայում անձնական պատասխանատվությունից խուսափելու նպատակով իրենց ֆունկցիաներին վերաբերող անգամ ամենափոքր հարցերը ձգտում են լուծել պարտիական կազմակերպության միջոցով: Աշխատանքի այդպիսի մեթոդներն ընդհանուր ոչինչ չունեն միանձնյա և կոլեգիալ ղեկավարության սկզբունքների հետ: Այնտեղ, որտեղ հիմնարկի ղեկավարը, ցեխերի պետերը, պարտիական և պրոֆմիութենական կազմակերպությունների ղեկավարները լավ են հասկանում իրենց խնդիրները, նրանք միշտ գտնում են գործերի բարելավման ճիշտ ուղիներ, գործերն անհամեմատ լավ են ընթանում:

Շրջանի արդյունաբերական ձեռնարկություններն զգալի աշխատանք են կատարել տեխնիկական պրոգրեսի ուղղությամբ, որի շնորհիվ իրացվել և մասսայաբար թողարկվում են տեխնիկապես ավելի կատարելագործված ավտոմատներ, կիսաավտոմատներ, ագրեգատներ, դազգահներ: Սակայն առանձին ձեռնարկությունների տնտեսական ղեկավարներ ու պարտիական կազմակերպություններ հաշտվում են առաջավոր տեխնիկայի ներդրման բնագավառում գոյություն ունեցող թերությունների հետ:

Թիթեղագլանման գործարանի ղեկավարությունը (դիրեկտոր Լ. Օգանով)
դանդաղկոտություն է հանդես բերում աշխատատար պրոցեսների մեքենայացման, եղած սարքավորումների կատարելագործման, նոր կոնստրուկցիաների
մշակման, ռացիոնալիզատորական և գյուտարարական աշխատանքների կազմակերպման ուղղությամբ: Որոշ աշխատատար ծանր պրոցեսներ դեռևս կատարվում են ձեռքով: Գործարանի ղեկավարության և պարտիական կազմակերպության կողմից բավականին մեծ ուշացումներով մշակված աշխատատար
պրոցեսների մեքենայացման կազմակերպչական 42 միջոցառումներից միմիայն

22-ն են կատարված։ Դեռևս անցյալ տարվանից գործարանի տեխնիկական սովետի կողմից ընդունված 36 ռացիոնալիզատորական առաջարկություններից ներդրվել են միայն 7-ը։ Այս բոլորի հիմնական պատճառն այն է, որ գործարանի ղեկավարությունը համոզված լինելով, որ արտադրանքի մեծ մասը դեֆիցիտային է և որքան էլ կատարելագործված չլինի՝ գործարանում չի մնա, ավելի շատ մտահոգված է համախառն արտադրանքի պլանի կատարումով և մյուս կարևոր հարցերի մասին շատ քիչ է մտածում։ Իսկ գործարանի պարտիական կազմակերպությունը (քարտուղար Պ. Մալխասյան) չի ապահովել պարտիական վերահսկողությունը, հաշտվել է տնտեսական ղեկավարների՝ գործին վնասող տրամադրությունների հետ։ Պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է ուշադրություն նվիրել տեխնիկայի զարգացման և տեխնիկան արտադրության մեջ ժամանակին ներդնելու հարցերին։

Արտադրական և առևտրական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունները, նրանց ղեկավարությամբ գործող հանձնաժողովները պետք է հետևեն, որպեսզի ձեռնարկության բոլոր աշխատողները խստորեն պահպանեն պետական կարգապահությունը։ Սակայն դեռևս կան փաստեր, որ առանձին տնտեսական ղեկավարներ անձնական շահերից ելնելով զբաղվում են աչքակապությամբ, չարաշահում են իրենց նկատմամբ ունեցած վստահությունը, թաքցնում իրենց թերությունները, ցույց են տալիս գոյություն չունեցող հաջողություններ, իսկ պարտիական կազմակերպություններն այդ երևույթների կողքով են անցնում։

Շինանյութերի գործարանի նախկին դիրեկտոր Ն. Թոթոլյանը, ցեխի պետ Վ. Գրիգորյանը հավելյալ վարձատրություն ստանալու համար զբաղվել են խաբեբայությամբ, գրի են առել և՛ կատարած, և՛ չկատարած աշխատանքները, թաքցրել են գերակատարած պլանի մի մասը, որպեսզի ավելցուկը ցույց տան մյուս ամսվա, կամ եռամսյակի կատարողականում։ Պարտիական կազմակերպությունը (քարտուղար Ս. Փարվանյան) փոխանակ ապահովելու ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողությունը, ցուցաբերել է անհանդուրժելի լիբերալիզմ։

Պարտիական վերահսկողությունն իրականացնող հանձնաժողովները կոչված են՝ պարտիական կազմակերպությունների անմիջական օգնությամբ ու ղեկավարությամբ արմատախիլ անելու աշխատանքում եղած թերությունները թաքցնելու ամեն մի փորձ, անխնա պայքարելու պետական կարգապահության խախտումների դեմ, սիստեմատիկ հաշվետվություն պահանջելու աշխատողներից՝ հանձնարարված գործի համար։

Պարտիական վերահսկողությունը պետք է սերտորեն զուգակցվի նաև քաղաքական աշխատանքի հետ։ Քաղաքական աշխատանքի միջոցով է, որ պարտիական կազմակերպությունը լայն մասսաներին ընդգրկում է գիտակցական աշխատանքի։ Անվիճելի են շրջանի պարտիական կազմակերպությունների ձեռք բերած հաջողություններն այս ուղղությամբ։ Սակայն չի կարող անհանգստություն չպատճառել, որ որոշ պարտիական կազմակերպություններ չեն կարողանում իր նպատակին ծառայեցնել քաղաքական աշխատանքը։ Ատաղձագործական կոմբինատն այս տարի, համեմատած անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի հետ, ո՛չ միայն չի բարձրացրել, այլև իջեցրել է աշխատանքի արտադրողականությունը։ Երկաթ-բետոնե կոնստրուկցիաների գործարանը գերակատարելով համախառն արտադրանքի պլանը, բարձրացրել է ինքնարժեքը։



Ասել, որ հիշյալ ձեռնարկություններում քաղաքական աշխատանք չի տարվում, ճիշտ չէ. ընդհակառակը, վերջին ժամանակներս կարծես թե ավելի է ուժեղացել այդ աշխատանքը։ Բայց որովհետև դա տարվում է ոչ նպատակասլաց, չի նպաստում արտադրության ցուցանիշների բարձրացմանը։ Կամ մեկ ուրիշ օրինակ. Ստանկոնորմալ գործարանի պարտիական կազմակերպությունը պարտիական ժողովում քննել է խնայողության ռեժիմի հարցը։ Որոշման մեջ ամբողջ շեշտը դրվել է միմիայն տնտեսական բնույթի միջոցառումներ անցկացնելու վրա. ոչինչ չի ասված ձեռնարկությունում կատարվող քաղաքական աշխատանքի մասին։ Իհարկե, այդպիսի որոշումը քիչ կօգնի գործին։

Պարտիական վերահսկողության լավագույն դրվածքը զգալի չափով կախված է նաև արտադրության մեջ կոմունիստների տեղաբաշխումից։ Որպեսզի կազմակերպությունը կարողանա ժամանակին բարձրացնել արտադրության գլխավոր հարցերը, պետք է լավ իմանա բոլոր տեղամասերի, առավել ևս արտադրության բախտը որոշող տեղամասերի աշխատանքը։ Այս առումով մեծ անելիքներ ունեն անմիջականորեն արտադրության մեջ աշխատող կոմունիստները։ Սակայն որոշ պարտիական կազմակերպությունների քարտուղարներ մի կողմ են քաշվել այդ կարևոր գործից. օրինակ, նորմալ չէ, երբ Մյասնիկյանի անվան գործարանի պարտիական կազմակերպության հաշվառման մեջ գտնվող 16 կոմունիստներից միայն երկուսն են աշխատում արտադրության մեջ, լաքերի-ներկերի գործարանում՝ 12 կոմունիստներից՝ 3-ը։

Պարտիական վերահսկողության ապահովման կարևոր ձևերից մեկն էլ սոցիալիստական մրցության, արտադրական խորհրդակցությունների և բանվորական ժողովների, տեխնիկական կոնֆերանսների լավ կազմակերպումն է, որոնք մեծ չափով նպաստում են աշխատավորների նախաձեռնությանն ու ակտիվությանը։ Այս առումով ուշադրության արժանի է շրջանի շատ արտադրական սկզբնական պարտիական կազմակերպությունների աշխատանքը։ Խտացրած կերի գործարանի բոլոր ցեխերը լավ են աշխատում, կատարում և գերակատարում են իրենց յուրաքանչյուր ամսվա առաջադրանքները. գործարանը կիսամյա պլանը ժամկետից մեկ ամիս շուտ կատարելով հանդերձ, պետությանը տվեց 3,5 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ Այս արդյունքները պատահական չեն. այստեղ լավ է կազմակերպված սոցիալիստական մրցությունը, բանվորներն իրենք են որոշում, թե ինչպիսի աշխատանքային հաջողություններով են ցանկանում նշել հաջորդ ամիսը։ Պարտիական կազմակերպությունը մշտապես հետևում է մրցության ընթացքին և կազմակերպում համապատասխան օգնություն, ամեն կերպ ձգտում է գտնել հասարակական աշխատանքի նոր ձևեր։ Սակայն սոցիալիստական մրցության կազմակերպման, արտադրական խորհրդակցությունների հրավիրման, առաջավորների փորձի ուսումնասիրման ու արմատավորման աշխատանքներում դեռևս կա ձևական մոտեցում (պրոտեզի ուսումնական կոմբինատ, գինեթթվի գործարան և այլն)։ Որոշ ձեռնարկություններում դեպքից-դեպք են հրավիրվում արտադրական խորհրդակցություններ, բանվորական ժողովներ, տեխնիկական կոնֆերանսներ, հասարակական վերահսկողությունն իրականացնելու գործում դեռևս թույլ են ներգրավվում պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունները։

Պարտիայի շրջանային կոմիտեն իր գործունեության ընթացքում միշտ էլ լուրջ ուշադրություն է հատկացրել տնտեսության ղեկավարման ձևերի և մե-

*թողների մշտական բարելավմանը։ Այդ կապակցությամբ անց են կացվել արտադրական, առևտրական ձեռնարկությունների, շինարարության տրանսպորտի պարտիական կազմակերպությունների քարտուղարների սեմինար պարապմունքներ, որտեղ փորձի փոխանակման կարգով լսվել են առանձին քարտուղարների ինֆորմացիաներ ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ պարտիական վերահսկողությունն ապահովելու մասին։*

*ՍՄԿՊ Հունիսյան պլենումի որոշման համաձայն Երևանի Լենինյան շրջանի 51 պարտիական կազմակերպություններում ստեղծվել և արդեն գործում են թողարկվող արտադրանքի որակի, շինարարական աշխատանքի արժեքի իջեցման և որակի բարելավման, նոր տեխնիկայի արմատավորման, սովետական առևտրի կանոնների պահպանման և այլ տիպի 81 հանձնաժողովներ, որոնց մեջ ընդգրկված են պարտիայի 359 անդամներ, այդ թվում՝ լավագույն բանվորներ, ինժեներներ, տեխնիկներ։*

*Պարտիայի շրջանային կոմիտեն հանձնաժողովներին օգնելու նպատակով անց է կացրել սեմինար պարապմունք, որտեղ փորձի փոխանակման նպատակով լսվել են մի շարք հանձնաժողովների նախագահների ինֆորմացիաները կատարված աշխատանքների մասին։ Շրջկոմի բյուրոյի չորրորդ եռամսյակի աշխատանքային պլանում նախատեսված է քննարկել էլեկտրատեխնիկական թիթեղագլանման, լաքերի ու ներկերի գործարանների, տեղական շինանյութերի և ալրաղաց կոմբինատների պարտիական կազմակերպություններում գործող հանձնաժողովների աշխատանքների ընթացքը։*

*Շրջանային կոմիտեի և սկզբնական պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ ամենօրյա օգնություն և ղեկավարություն ցույց տալ այդ հանձնաժողովներին, նրանց աշխատանքներում ընդգրկելով սկզբունքային և ակտիվ կոմունիստների, որը հնարավորություն կտա իսկական պարտիական վերահսկողություն սահմանել՝ պարտիայի և կառավարության դիրեկտիվների և որոշումների հաջող կենսագործման համար։*

Վ. ՍՏԵՓԱՆՅԱՆ
ՀԿՊ Երևանի կազմակերպության
Լենինյան շրջկոմի քարտուղար

## ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ԿԱՏԱՐՄԱՆ ՆՊԱՏԱԿՈՎ

*Ազիզբեկովի շրջանի Խնձորուտ գյուղի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը (քարտուղար Գ. Խաչատրյան) որոշում ընդունեց պարտիական ուժերն արտադրության մեջ տեղաբաշխելու, նրանց ավանգարդային դերը բարձրացնելու մասին։ Հաշվի առնելով կոմունիստների ցանկությունները ու կարողությունները, որոշման մեջ կոնկրետ նշվեց, թե ո՛ր կոմունիստը որ ճյուղում պետք է աշխատի։ Պարտիական կազմակերպության բյուրոն ապահովեց այդ որոշման կենսագործումը, որի շնորհիվ այժմ բոլոր կոմունիստները աշխատում են արտադրության մեջ։ Նրանցից շատերը ապահովելով իրենց առաջավոր դերը, աչքի են ընկնում աշխատանքային լավագույն ցուցանիշներով։*

*Աշխատանքի լավագույն օրինակ են ցույց տալիս կոմունիստ ծխախոտագործները, որոնք այս տարի օրինակելիորեն կատարեցին սածիլացումը և լավագույն կերպով կազմակերպեցին պլանտացիայի մշակումը, որի շնորհիվ էլ ստանում են բարձր բերք։*



*Եգիպտացորենն այս կոլտնտեսությունում մուտք գործեց վերջին տարիներս։ Սկզբում շատերը դժկամությամբ ընդունեցին այն։ Պարտիական կազմակերպությունը ժամանակին քննեց այդ հարցը և կոնկրետ որոշում ընդունեց եգիպտացորենի մշակումն արմատավորելու և բարձր բերք ստանալու համար։ Կենսագործելով պարտիական կազմակերպության որոշումը, կոմունիստները ամենաակտիվ մասնակցությունն ունեցան եգիպտացորենի ցանքի մշակման և բերքահավաքի աշխատանքներին։ Արդյունքը եղավ այն, որ այս տարի կոլտնտեսությունը 20 հեկտար եգիպտացորենի յուրաքանչյուր հեկտարից ստացավ 470 ցենտներ կանաչ մասսա։*

*Որոշումների կենսագործման բնագավառում դրական աշխատանքի փորձ ունի Կեչուտի Կիրովի անվան կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը։ Այս կոլտնտեսությունում անասնաբուծությունն ունի զարգացման լայն հեռանկարներ։ Սակայն կոլտնտեսության վարչությունը անբավարար էր զբաղվում այդ հարցով։ Անասնաբուծության զարգացման հարցը քննարկվեց պարտիական ժողովում, որտեղ ընդունվեց կոնկրետ որոշում։ Դրանից հետո անասնաբուծության բնագավառ ուղարկվեցին մի շարք կոմունիստներ և կոմերիտականներ։ Կայունացվեց անասնապահների կազմը։ Պատահական չէ, որ Կեչուտի կոլտնտեսության անասնաբուծության վիճակը 1957 թվականի համեմատությամբ անցյալ տարի զգալի չափով բարելավվեց. մեկ ֆուրաժային կովի միջին կաթնատվությունը կազմեց 1670 կգ։ Այս տարի անասնաբուծության գործն ավելի լավ հիմքերի վրա դնելու շնորհիվ Կեչուտի կոլտնտեսությունն առ մեկը հոկտեմբերի յուրաքանչյուր կովից ստացել է 1618 կիլոգրամ կաթ, անցյալ տարվա նույն ժամանակի 1036-ի դիմաց։*

*Կոնկրետ որոշումներ են ընդունում և հետևում նրանց կատարմանը նաև Արտավան, Դայլախլու, Ազատեկ գյուղերի կոլտնտեսությունների պարտիական կազմակերպությունները։ Այդ է պատճառը, որ նշված կոլտնտեսություններում տարեցտարի աճում են հանրային բարիքները, արագորեն զարգանում է անասնաբուծությունը։*

*Ազատեկ գյուղի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը քննելով սոցիալիստական մրցության ծավալման հարցը՝ կոնկրետ միջոցառումներ մշակեց այն բարձր հիմքերի վրա դնելու համար։ Այնուհետև պարտիական կազմակերպության բյուրոն բոլոր բրիգադներին, ֆերմաներին, օղակներին ընդգրկեց սոցիալիստական մրցության մեջ, որոնք վերցրին կոնկրետ պարտավորություններ։ Բայց պարտիական կազմակերպությունը չբավարարվեց միայն դրանով։ Իր որոշումների կատարումն ապահովելու նպատակով պարտկազմակերպությունը կոլտնտեսության վարչության հետ միասին օգնեց մրցողներին և անասնապահական ֆերմաներում երեք ամիսը մեկ անգամ, իսկ դաշտավարական բրիգադներում ամիսը մեկ անգամ ստուգեց ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը։*

*Մրցող բրիգադները, ֆերմաները և օղակները այժմ պատվով են կատարում իրենց պարտավորությունները։ Կաթնապրանքային ֆերման այս տարում իրենց պարտավորությունները։ Կաթնապրանքային ֆերման այս տարվա 10 ամսվա ընթացքում յուրաքանչյուր կովից ստացել է 1469 կիլոգրամ կաթ, որը 105 կիլոգրամով ավելի է անցյալ տարվա նույն ժամանակա-*

շրջանում ստացված կաթից։ Կոլտնտեսությունը 6 ամսում կատարել ու գերակատարել է կաթի, մսի և ձվի վաճառքի առաջադրանքները։

Անցյալ տարվա համեմատությամբ, այս տարի կոլտնտեսությունն ավելի շուտ ավարտեց ծխախոտի սածիլացումը, զգալիորեն ընդարձակեց ծխախոտի պլանտացիաները, ավելի լավ կազմակերպեց նրա մշակումը։ Նախնական արդյունքները ցույց են տալիս, որ կոլտնտեսությունը յուրաքանչյուր հեկտարից կստանա միջին հաշվով 17 ցենտներ ծխախոտի հումք, անցյալ տարվա 13 ցենտների դիմաց։

Սակայն այդ չի կարելի ասել Կարմրաշենի, Ջեյթայի, Փոքր կոլտնտեսային, Ջարիթափի սովխոզի պարտիական կազմակերպությունների աշխատանքի մասին։ Շրջկոմը վերջերս լուրջ թերություններ բացահայտեց այդ կազմակերպությունների աշխատանքներում։ Դրա հիմնական պատճառներից մեկն այն է, որ պարտիական բյուրոների և ժողովների որոշումները կոնկրետ չեն և ոչնչով չեն պարտավորեցնում այս կամ այն կոմունիստին։ Որոշումների նկատմամբ այդպիսի ձևական վերաբերմունքը հասցրել է նրան, որ կոմունիստներից շատերը պատասխանատվություն չեն զգում իրենց ընդունած որոշումների կատարման համար։

Որոշումների կիրառման ստուգումը պետք է դրվի կազմակերպության քարտուղարի ու բյուրոյի ուշադրության կենտրոնում։ Քարտուղարն իր աշխատանքային պլանը կազմելիս պետք է նկատի ունենա կազմակերպության նախորդ որոշումների կատարման ժամկետները և պայմանները։ Այդ գործում քարտուղարը ազատ կերպով կարող է ներգրավել պարտիական ակտիվիստներին, բյուրոյի անդամներին։ Կատարման ստուգումը պետք է կրի ոչ թե կամպանիոն, այլ սիստեմատիկ բնույթ, պետք է ստուգվեն ոչ միայն վատ, այլև լավ աշխատողները։ Այստեղ չի կարելի չնշել այն հայտնի ճշմարտությունը, որ նույնիսկ լավ աշխատողը, եթե երկար ժամանակ չի ստուգվում, կարող է կորցնել գործի նկատմամբ ունեցած իր առաջվա եռանդը, համակվել ինքնահանգստացմամբ։ Մի՞թե այդ մասին չի վկայում հետևյալ փաստը։ Մարտիրոս գյուղի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը համարվում էր շրջանում լավագույնը։ Շրջանային կոմիտեն երկար ժամանակ չէր ստուգել այդ կազմակերպության աշխատանքը, որը չափազանց լուրջ հետևանքի հասցրեց։ Կոլտնտեսությունում թույլ էին տրվել հանրային ունեցվածքի շռայլումներ, վատնումներ։ Պարտիական կազմակերպությունը կոլտնտեսության վարչության գործունեության նկատմամբ չէր իրականացրել վերահսկողության ֆունկցիան, հաշտվել էր ստեղծված վիճակի հետ։ Քննելով այդ հարցը, շրջկոմի բյուրոն աշխատանքից հանեց այդ կոլտնտեսության վարչության նախագահ Ա. Հովհաննիսյանին և պարտկազմակերպության քարտուղար Է. Ներսիսյանին։

Զհանգստանալով ձեռք բերած հաջողություններով, շրջանի աշխատավորները իրենց բարեխիղճ և օրինակելի աշխատանքի շնորհիվ զգալիորեն ավելացրել են անասնաբուծական մթերքների արտադրանքը։ Դա շրջանի կոլտնտեսություններին հնարավորություն տվեց անցած վեց ամսվա ընթացքում կատարելու ամբողջ տարվա համար նախատեսված կաթի ու ձվի վաճառքի առաջադրանքները։

Ոգևորված այդ հաջողությունով, շրջանի կոլտնտեսային աշխատավորները նոր եռանդով գործի կպան յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու ուղղությամբ սոցիալիստական մրցությունում ստանձնած պարտավորությունները լրիվ կենսագործելու և երկրին ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ տալու համար։

Կոմունիզմի ծավալուն կառուցման հոյակապ պլանների հաջող կենսագործումը շրջանի պարտիական կազմակերպություններից պահանջում է՝ ամեն կերպ բարձրացնել յուրաքանչյուր կոմունիստի պատասխանատվությունը պարտիայի որոշումներն անթերի կատարելու և շրջանի էկոնոմիկան ավելի արագ զարգացնելու համար։

Զ. ՂԱԶԱՐՅԱՆ
ՀԿՊ Ազիզբեկովի շրջկոմի քարտուղար



## ՊԱՐՏՔԻ ԳԻՏԱԿՑՈՒԹՅԱՄԲ

Ամեն անգամ, երբ անցնում ենք Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի ցեխերով, տեսնում ենք մի նորություն, մի առաջընթաց քայլ։ Արտադրության մեջ անընդհատ ներդրվում է նորագույն տեխնիկան, ավտոմատացվում, կատարելագործվում են արտադրական և տեխնոլոգիական պրոցեսները։ Կոմբինատի այսօրվա պատկերը հնարավոր չէ համեմատել ոչ միայն նախասովետական շրջանի, այլև երկու տասնամյակ առաջ եղած վիճակի հետ։ Անցյալում այստեղ օգտագործվում էր միայն պղինձը, իսկ հանքանյութի մեջ պարունակվող մյուս նյութերը թափվում էին Դեբեդ գետը. այժմ կոմպլեքսային կերպով օգտագործվում է հումքի մեծ մասը։ Միևնույն հումքային բազայի վրա արտադրվում են՝ պղինձ, ծծմբաթթու, պղնձարջասպ և այլ նյութեր։ Հետպատերազմյան տարիներին այստեղ ծծմբաթթվի արտադրության բազայի վրա սկսվեց նաև քիմիական պարարտանյութերի թողարկումը։ Պղնձի ձուլումը այժմ Ալավերդու կոմբինատում կատարվում է ամբողջ ցիկլով՝ հանքանյութի հալումից մինչև վայրբարձրային պղնձի ստացումը։

Կոմբինատում ուսումնասիրվում և արտադրության մեջ ներդրվում են Միության և արտասահմանյան պղնձարդյունաբերության նվաճումները։ Նախկին վառերժակետային վառարաններն իրենց տեղը զիջել են ավելի հզոր ու բարձր արտադրողական արտացոլիչ վառարաններին։ Էլեկտրոլիզի ցեխում կապարե ավազանները փոխարինվել են պլաստմասսայից պատրաստած ավազաններով։ Միության մեջ առաջինը այստեղ օգտագործվեցին կոնվերտերային բաժանմունքից հեռացող գազերը, որոնք ծծմբաթթվի արտադրության համար ձրի հումքի զգալի պաշար են։

Կենսագործելով ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումները, կոմբինատի պարտիական կազմակերպությունը հետևողականորեն քաղաքական-մասսայական աշխատանք է տանում կոլեկտիվում, ձուլողներին ու քիմիագործներին պարզաբանում յոթնամյա պլանը, կոմբինատի կոլեկտիվի առջև դրված խնդիրները։

Տարեսկզբին, երբ քննարկվում էր յոթնամյակի առաջին տարվա պլանը, կոմբինատի կոլեկտիվը հաշվի առավ իր ունեցած ռեզերվներն ու հնարավորությունները և պարտավորվեց այս տարի պլանից ավելի թողարկել առնվազն 1000 տոննա ծծմբաթթու, 5000 տոննա քիմիական պարարտանյութ, մի քանի հարյուր տոննա պղինձ ու պղնձարջասպ։ Պարտիական կոմիտեն ցեխային

սկզբնական պարտկազմակերպությունների միջոցով ծավալեց լայն սոցիալիստական մրցություն՝ ստանձնած պարտավորությունները պատվով կատարելու համար։ Սկզբնական պարտիական կազմակերպության կոմիտեն մի քանի անգամ քննության է առել սոցիալիստական մրցության ընթացքը, հսկել, որ ոչ մի ցեխ ետ չմնա։

Եվ ահա կոմբինատը տասն ամսվա պլանը կատարել է ժամկետից ութ օր շուտ։

Չնայած դրան, կոմբինատի ներկա տեխնիկան դեռևս առավելագույն չափով չի օգտագործվում։ Ծծմբաթթվի ցեխը հնարավորություն չունի լրիվ վերամշակելու ունեցած հումքը, որովհետև սառնարանային տնտեսության կարողությունը փոքր է ցեխի աշտարակների կարողությունից։ Կոմբինատի դիրեկցիան, պարտիական կոմիտեն շատ անգամ են դիմել Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհին՝ օգնելու սառնարանային տնտեսությունն ընդարձակելու, բայց մինչև այժմ ոչինչ չի արված այդ ուղղությամբ։ Նման թերություններ կան նաև մյուս ցեխերում։ Ցեխերին անհրաժեշտ շատ մեխանիզմներ ու դետալներ պատրաստվում են տեղում՝ մեխանիկական ցեխում։ Բայց հաճախ դրանք քննություն չեն բռնում, քանի որ ջերմամշակման չեն ենթարկվում։ Այս հարցում նույնպես մեզ չի օգնում Ժողտնտխորհը։

Հետևելով Դոնբասի ածխահատ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Ն. Մամայի հայրենասիրական օրինակին, ձուլողները պարտավորվեցին արտացոլիչ վառարանի հարկի յուրաքանչյուր քառակուսի մետր տարածության վրա սահմանված նորմայից ավելի հալել առնվազն 50 կիլոգրամ հանքանյութ։ Ձուլողներն այդ թիվը կարողացան հասցնել մոտ 200-ի։ Շամլուղի հանքերից ստացվող հանքաքարը հաճախ լինում է ցածրորակ, դժվարահալ ու ստանդարտից մանր և հնարավոր չէ հալել շախտային վառարաններում։ Ստիպված այդ հանքաքարը հալում են արտացոլիչ վառարանում, որով խախտվում է տեխնոլոգիական ռեժիմը, և հեռացող խարամի մեջ նորմայից ավելի պղինձ է կորչում։ Այդ առթիվ պարտիական կոմիտեի և դիրեկցիայի բազմիցս ահազանգումները արձագանք չեն գտել Ժողտնտխորհում։

Կոմբինատի կոլեկտիվը արձագանքելով վլադիմիրցիների հայրենասիրական օրինակին, ստուգեց իր ունեցած արտադրական կարողությունները և պարզեց, որ առանց լրացուցիչ ներդրումների հնարավոր է կրկնակի չափով ավելացնել արտադրանքի թողարկումը։ Սակայն առայժմ այդ կարողությունը օգտագործել չեն կարողանում, որովհետև Ղափանի ու Քաջարանի հանքագործները նրանց չեն ապահովում հումքով։ Եթե Ժողտնտխորհն օգնի, հաջողություններն ավելի մեծ կլինեն, քանի որ կոմբինատի աշխատողների մեծ մասը պայքարում է տեխնիկական պրոգրեսի, արտադրական պրոցեսների կատարելագործման, ավտոմատացման ու մեքենայացման համար։

Վերջերս, երբ կոմբինատում հայտարարվեց տեխնիկական պրոգրեսի միամսյակ, տասնյակ բանվորներ ու ինժեներա-տեխնիկական աշխատողներ հանդես եկան մի շարք խելացի առաջարկություններով։ Մեխանիկական ցեխում տեղադրվեց մեկ ֆրեզերային ունիվերսալ հաստոց։ Անոդային բաժանմունքում կաղապարներից պղինձը հանելու ժամանակ մեծ դժվարություններ էին առաջանում։ Պղնձաձուլական ցեխի նորարարները կարողացան մեքենայացնել այդ պրոցեսը։ Մեքենայացվեց նաև պղնձարջասպի արտադրանքի տեղափոխումը մինչև երկաթուղային վագոնների բարձման հրապարակը։ Այս



տարի 214 ընկերներ հանդես են եկել ռացիոնալիզատորական 500 առաջարկություններով, որոնցից արտադրության մեջ արդեն ներդրված է 210-ը և դրա շնորհիվ կոմբինատը ստանում է տարեկան 415 հազար ռուբլու օգուտ։ Անվանի ռացիոնալիզատորներ են՝ կռունկավար Ա. Բայադյանը, ծծմբաթթվի ցեխի վառարանավար Ա. Աղայանը, մեխանիկ Ե. Թունյանը, էլեկտրացեխի բանվորներ՝ Ռ. Գևորգյանը, Վ. Մայիլյանը և շատ ուրիշներ։ Ա. Աղայանի մի խելացի առաջարկության շնորհիվ մի քանի անգամ ավելացավ ծծմբաթթվի ցեխի սառնարանների աշխատաժամանակը, տնտեսվեցին բավականաչափ մետաղ ու միջոցներ։ Էլեկտրոլիզի ցեխի ռացիոնալիզատոր Ռ. Գևորգյանի առաջարկություններից տարեկան ստացվում է 21 հազար ռուբլու օգուտ։

Կոմբինատի առջև տեխնիկական պրոգրեսի բնագավառում լայն հեռանկարներ են բացվում։ Յոթնամյակի ընթացքում նախատեսված է հիմնովին վերակառուցել կոմբինատը։ Պղնձի ձուլումը, որը ներկայումս կատարվում է արտացոլիչ և շախտային վառարանների միջոցով, կփոխարինվի էլեկտրաձուլմամբ։ Ծծմբաթթվի արտադրությունը ներկայիս աշտարակային եղանակի փոխարեն կկատարվի կոնտակտային մեթոդով։ Այդ վերակառուցումը հնարավորություն կտա լրիվ կոմպլեքսային ձևով օգտագործել հումքը, մի քանի անգամ կավելանա արտադրանքի թողարկումը։

Յոթնամյակում կոմբինատի կոլեկտիվի առջև դրված խնդիրները հաջողությամբ կատարելու համար այժմ սկսված է արտադրական ցեխերի վերակառուցումը։ Անցյալ տարվա վերջերին շահագործման հանձնվեց պղնձարջասպի նոր ցեխը, որտեղ արտադրանքը ստացվում է զտած պղնձից և ավելի առաջավոր եղանակով։ Այդ ցեխի շահագործմամբ զգալիորեն բարձրացավ արտադրանքի որակը, վերացավ քաղաքի մթնոլորտը կեղտոտող գազի օջախներից մեկը։ Սկսված է և այս տարվա վերջերին կավարտվի նաև էլեկտրոլիզի ցեխի նոր, ավելի մեծ կորպուսի կառուցումը։ Աշխատանքներ են տարվում ծծմբաթթվի նոր ցեխի շինարարական հրապարակը նախապատրաստելու ուղղությամբ։

Բայց շինարարական աշխատանքները չափազանց դանդաղ են ընթանում. ներկա տեմպերը երաշխիք չեն տալիս սահմանված ժամկետին շինարարությունը ավարտելու համար։ Շինարարական մոնտաժային տրեստը ևս աշխատանքները չափազանց դանդաղ և պրիմիտիվ եղանակով է կատարում։ Կոմբինատի պարտիական կոմիտեն մի քանի անգամ քննության է առել վերակառուցման հետ կապված հարցերը, միջնորդել Ժողտնտխորհին, որպեսզի արագացվի շինարարությունը։ Բայց վիճակը դեռևս նույնն է։ Կոմբինատի կոլեկտիվը պարտավորվել է արտադրանքի թողարկման 1965 թվականի մակարդակին հասնել 1964 թվականին։ Դրա համար անհրաժեշտ է Ժողտնտխորհի շինարարական կազմակերպությունների մշտական օգնությունը։

Պարտկոմիտեի և կոմբինատի դիրեկցիայի ջանքերով մի շարք հարցեր լուծվում են տեղում, կոմբինատի կոլեկտիվի ուժերով։ Ինժեներա-տեխնիկական աշխատողների նախաձեռնությամբ նախագծված է շախտային կլոր վառարանները փոխարինել ավելի արդյունավետ, քառակուսի վառարաններով։ Այդ ուղղությամբ տեղում արդեն աշխատանքներ են տարվում և շուտով կսկսվի նոր տիպի վառարանների կառուցումը։

Ուշադրության արժանի է նաև մի կարևոր հարց։ Մինչև այժմ կոմբինատում մշակվող հումքից ստացվում է միայն պղինձն ու ծծումբը։ Իսկ հումքի

մեջ պարունակվող մի շարք նյութեր կորչում են հեռացող խարամի հետ։ Ուսումնասիրությունները ցույց տվին, որ այդ խարամը մի շարք օգտակար հատկություններ ունի։ Դրանցից կարելի է պատրաստել խողովակներ, մեկուսիչներ և զանազան այլ առարկաներ։ Այդ նպատակով կոմբինատում արդեն կառուցվել է խարամը վերամշակելու փորձնական վառարան, ինչպես և՝ խողովակներ ձուլելու էլեկտրական վառարան։

Կոմբինատի կոլեկտիվն աշխատում է ետ չմնալ միության առաջավոր ձեռնարկություններից, իր ստեղծագործական միտքը և ունակությունները ներդնում է յոթնամյա պլանի հաջող կատարմանը։ Կոմունիստական աշխատանքի բրիգադայի բարձր կոչմանն արժանանալու համար կոմբինատում պայքարի են ելել վեց բրիգադա, հերթափոխություններ, բաժանմունքներ ու ցեխեր։ Էլեկտրոլիզի ցեխի կոմունիստ Ռ. Մարգարյանի ղեկավարած բրիգադան միշտ գերակատարում է արտադրական պլանները։ Բրիգադայի բոլոր անդամներն էլ արդեն ռացիոնալիզատոր են։ Այստեղ ամենքն աշխատում են կոմունիստաբար, օգնում միմյանց, սովորում իրարից։ Օրերս այս բրիգադային շնորհվեց կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչում։ Դա է՛լ ավելի ոգևորեց ինչպես այդ, այնպես էլ մյուս բրիգադաների անդամներին։

Ընկ. Մարգարյանի ղեկավարած բրիգադան սոցիալիստական մրցության մեջ է մտել Մոսկվայի պղնձաձուլական-էլեկտրոլիզի գործարանի կոմունիստական աշխատանքի բրիգադաներից մեկի հետ։ Մրցող բրիգադաները նամակագրական սերտ կապ են պահպանում միմյանց հետ, միմյանց հայտնում ձեռք բերած հաջողությունների մասին, փոխադարձաբար օգնում իրար։ Ստանձնած պարտավորությունները պատվով են կատարում նաև ծծմբաթթվի ցեխից Ա. Առաքելյանի, պղնձաձուլական ցեխից՝ Կ. Թումանյանի, պղնձարջասպի ցեխից՝ Ս. Սարգսյանի ղեկավարած բրիգադաները։

Պարտիական կոմիտեն հաճախ քննության է առնում այդ բրիգադաների աշխատանքի փորձը, ընդհանրացնում այն և տարածում մյուս բրիգադաներում ու ցեխերում։ Կոմունիստական աշխատանքի բրիգադաների փորձը տարածելու գործում զգալի աշխատանք է կատարում կոմբինատի բազմատիրաժ «Զուլող» թերթը, որի էջերում իրենց փորձի մասին պատմում են բրիգադաների անդամները։

Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի կոմունիստները, բոլոր աշխատողները մեկ ձգտում ունեն՝ ոչ մի ջանք չխնայել հարազատ Հայրենիքին ավելի շատ պղինձ, քիմիկատներ ու պարարտանյութեր տալու համար։

Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի
պարտկոմիտեի քարտուղար

---



«Անհրաժեշտ է միջոցառումներ ձեռնարկել ետ մնացող կոլտնտեսությունները տնտեսապես ամրապնդելու և յուրաքանչյուր շրջանում այդպիսիներն առաջավոր կոլտնտեսություններին հասցնելու համար»:

ՀԿՊ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԲԱՆԱՁԵՎԻՑ

# ԾԱՂԿՈՂ ԴՎԻՆԸ

Դվի՜ն։ Այս անունը ծանոթ է մեր ամեն մի ընթերցողի։ Անցյալի ո՞ր նշանավոր հայ պատմաբանն ու վիպասանն ասեք, որ չի գրել դարերի խորքից եկող նրա պատմությունը։ Օտարերկրյա հրոսակները քանի՜, քանի անգամ հրով ու սրով անցել են Դվինի հողով, քանի՜, քանի անգամ ավերել են նրա ճարտարապետական գեղեցիկ կոթողները։ Վերջին անգամ, 13-րդ դարի 30-ական թվականներին նրա վրայով սև մրրիկի պես անցել են մոնղոլական հորդաները, որոնք հիմնահատակ կործանել են այն։ Նրա հինավուրց բերդի ավերակները մինչև օրս էլ հիշեցնում են պատերազմական թատերաբեմի վերածված այդ խոշոր քաղաքի, Բյուզանդական իմպերիայի, Սասանյան Պարսկաստանի և Կովկասյան երկրների միջև ընկած համաշխարհային առևտրի կենտրոններից մեկի դաժան ճակատագիրը։

Դվինի բնակչության հետ միասին տառապել ու պայքարել են նրա մերձակա շեների գյուղացիները։ Աշխատավոր ժողովրդի ծանր պայքարի շնորհիվ փրկվել է նրա ստեղծած կուլտուրայի մի աննշան մասը։ Ժողովրդի անկոտրում կամքի և շենացնող ջանքերի հետևանքով վերականգնվել է Դվինը, որը մոտակա անցյալում երդիկավոր հյուղերի մի գորշ բնակավայր է եղել։ Տնակների հողե հատակը, տեղացող անձրևներից կաթող ջուրը, ոտքերի հետ փողոցից բերված ցեխը, առավոտյան թոնդրի, իսկ երեկոյան ձեթի կամ մազութի ճրագի ծուխը, ախոռում քաղցից բառաչող լղարիկ անասունները, բահն ու արորը բնորոշում են նախասովետական Դվինի իրական ուրվագիծը։

Դվինցիների երկնակամարից աղքատության և թշվառության ծանր մղձավանջը փարատվեց միայն սովետական կարգերի հաստատմամբ։ Ազատագրված գյուղացիներն իրենց բարեբեր հողում սկսեցին աշխատել իրենց համար։ Ստեղծագործ աշխատանքը կենդանություն տվեց դաշտերին, ծաղկեցրեց արտն ու այգին։ Սովետական մարդը խոր հավատով լցվեց վաղվա օրվա նկատմամբ։ Սովետական կարգերի բարիքներով սնվող դվինցիները կարճ ժամանակում շեն ու լի դարձրին իրենց կյանքը։

ՋԱՐԳԱՑՄԱՆ ՆՈՐ ՈՒՂԻ

Սովետական իշխանության հաստատումից մեկ տասնամյակ անց, 1930 թվականին, դվինցիները բռնեցին նոր կյանքի ուղին։ Գյուղում կազմակերպվեց կոլտնտեսություն, առանց որի աշխատավոր գյուղացին չէր կարող վերջնականապես դուրս գալ կարիքից։ Կոլտնտեսության հիմնադրման առաջին տարիներին կային լուրջ դժվարություններ. չկար գյուղատնտեսական տեխնիկա, հանրային տնտեսությունը վարելու փորձ, շատ աննշան էր անասունների թիվը, ցածր էր հողա-

մշակության կուլտուրան։ Բայց սոցիալիստական տնտեսության գերազանց առավելությունների, հարազատ պարտիայի ու կառավարության օգնությամբ եղած դժվարությունները հաղթահարվեցին։ Կոլտնտեսությունը տարեցտարի տնտեսապես ու կազմակերպչորեն ամրապնդվեց, հասավ նորանոր հաջողությունների և հիմք դրեց կոլտնտեսային գյուղացիության բարեկեցիկ կյանքին։

Հաջողություններն առանձնապես նշանակալից ու խոշոր են վերջին տարիներում, երբ պարտիայի ու կառավարության իրականացրած մի շարք լուրջ միջոցառումները հնարավորություն տվին հանրային տնտեսությունը բազմակողմանիորեն զարգացնելու և գյուղատնտեսական մթերքների արտադրությունը շեշտակիորեն բարձրացնելու։ Մի քանի տարվա ընթացքում հանրային տնտեսության տարբեր ճյուղերը, առանձնապես առաջատար ճյուղերը, հիմնովին փոխեցին իրենց դեմքը։ Առատ դարձավ խաղողի ու բամբակի, հատապտղի ու բանջարեղենի բերքը, ավելացավ մսի ու կաթի, ձվի ու բրդի արտադրությունը։ Կոլտնտեսային գյուղը դարձավ ունևոր։ Այդ են ցույց տալիս պերճախոս փաստերը, որոնցից նշենք մի քանիսը միայն։

1953 թվականին կոլտնտեսության խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացված 45,8 ցենտների դիմաց, 1959 թվականին ստացվել է 130 ցենտներ բերք։ Այդ նույն ժամանակաշրջանում խաղողի համախառն բերքը 787 տոննայից հասել է 2000 տոննայի։ Այլ կերպ ասած, խաղողի բերքատվությունը համարյա եռապատկվել է, իսկ դրամական եկամուտը՝ քառապատկվել և հասել է վեց ու կես միլիոն ռուբլու։

Լուրջ տեղաշարժ կա նաև բամբակի արտադրությունը բարձրացնելու գործում։ 1953 թվականի 21,1 ցենտների դիմաց, 1958 թվականին յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 32,76 ցենտներ բամբակի միջին բերք, իսկ այս տարի ամենայն հավանականությամբ կստացվի 35—40 ցենտներ։

Այսպիսի աճող թվեր կարելի է բերել նաև բանջարաբուծության, պտղաբուծության և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բերքատվության բարձրացման բնագավառում։

Ներքին Դվինի «Շինարար» կոլտնտեսությունը, որին միացել են նախկին Հնաբերդ և Հողաբերդ գյուղերի կոլտնտեսությունները, իր պատմության ընթացքում և ոչ մի տարի այնքան առատ բերք չի ստացել, որքան 1959 թվականին՝ յոթնամյակի առաջին տարում։

Յոթնամյակի առաջին տարում առատացել է նաև անասնաբուծական մթերքների արտադրությունը։ 1953 թվականի 117, 1958 թվականի 283 տոննա կաթի դիմաց ընթացիկ տարվա 10 ամսում կոլտնտեսությունն արտադրել է 340 տոննա կաթ։ Ավելացել է նաև մսի, ձվի ու բրդի արտադրությունը։

— Գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ընթացիկ տարում հասել է այնպիսի մակարդակի,— պատմում է կոլտնտեսության հաշվապահ Մ. Առաքելյանը,— որը հնարավորություն է տալիս պետությանը վաճառելու ավելի շատ մթերքներ, քան նախատեսված է պլանով։ Բավական է ասել, որ ընթացիկ տարում սահմանված պլանից պետությանն ավելի է վաճառվել մոտ 6 հազար ցենտներ խաղող, 20,638 լիտր կաթ, 48,700 ձու և այլ մթերքներ։

Գյուղատնտեսական մթերքների արտադրությունը խոշոր չափով կաճի յոթնամյակի տարիներին։ 1965 թվականին խաղողի համախառն բերքը պետք է կազմի 24360 ցենտներ։ Դրա համար նախատեսված է խաղողի այգիների տարածությունը հասցնել 203 հեկտարի և ամեն հեկտարի վրա ապահովել



2600 վազ, ներկայումս եղած 2000—2200 վազի փոխարեն։ Յոթնամյակում ընդարձակվելու են նաև մյուս կուլտուրաների ցանքատարածությունները (բացի հացահատիկից) և բարձրացվելու է նրանց բերքատվությունը այն հաշվով, որպեսզի բամբակի համախառն բերքը 1965 թվականին կազմի 2140 ցենտներ (1958 թ. 1876 ցենտների դիմաց), հատապտղինը՝ 2925, բանջարեղենինը՝ 5600, եգիպտացորենի հատիկինը՝ 1350, կանաչ մասսայինը՝ 15000, իսկ առվույտինը՝ 5325 ցենտներ։

Յոթնամյակում զարգանալու է նաև անասնաբուծությունը։ Կովերի գլխաքանակը 1965 թվականին հասնելու է 260 գլխի, մեկ կովի կաթնատվությունը՝ 2500 լիտրի (1959 թ. պլանով սահմանված 1800 լիտրի դիմաց), մեկ ոչխարի բրդատվությունը՝ 4 կիլոգրամի։ Զգալիորեն կաճի մսի (առանձնապես խոզի մսի) արտադրությունը և այլն։

Մտնելով սոցիալիստական մրցության մեջ, կոլտնտեսությունը պարտավորվել է զգալի չափով գերակատարել 1965 թվականի համար սահմանված պլանը։ Դրա հետ միաժամանակ կոլտնտեսությունը պարտավորվել է այգեգործության գծով յոթնամյա պլանը կատարել 5 տարում, անասնաբուծության գծով՝ 3 տարում, շինարարության գծով՝ 5 տարում, իսկ բանջարաբուծության գծով՝ 2 տարում։

**ՀԱՐՍՏՈՒԹՅԱՆ ԱՂԲՅՈՒՐԸ**

Ներքին Դվինում ավելի առատ են դառնում գյուղատնտեսական մթերքները, ավելի առատ բարիքներով են լցվում կոլտնտեսականների տները։ Չքավոր բառը, որ մի ժամանակ հաճախ էր լսվում, այսօր դարձել է դառը հուշ, վաղուց անցած ու գնացած պատմություն։ Գյուղում արդեն կա հարստության մի հորդառատ աղբյուր, որից լիուլի օգտվում է ամեն մի ազնիվ աշխատող։ Այդ աղբյուրը կոլտնտեսության հանրային տնտեսությունն է, որի ամրապնդումն ու զարգացումը ամեն մի կոլտնտեսական համարում է իր սրբազան պարտքը, իր գլխավոր խնդիրը։ Տեղի պարտիական ու սովետական կազմակերպությունների օգնությամբ շատ բան է արված այդ ուղղությամբ։ Բավական է նշել, որ 1953—1959 թվականներին հանրային տնտեսության զարգացման համար կոլտնտեսության դրամական եկամտից հատկացվել է 4 միլիոն 685 հազար ռուբլի (անբաժանելի ֆոնդ)։ Այդ, ինչպես նաև նախորդ տարիներում կատարված կապիտալ ներդրումների շնորհիվ այսօր կոլտնտեսությունն ունի զարգացած հանրային տնտեսություն՝ իր արտադրական ամուր բազայով։

Սեփական արտադրության միջոցներով ներկայումս կոլտնտեսությունը մշակում է 199 հեկտար խաղողի այգի (որից բերքատու է 165 հեկտար), 61 հեկտար բամբակ, 33 հեկտար պտղատու այգի, 14 հեկտար բանջարեղեն, 35,5 հեկտար առվույտ, 93 հեկտար հացահատիկ, որից 8 հեկտարը եգիպտացորեն է։ Հողամշակության կուլտուրան բարձրացնելու և դաշտային աշխատատար պրոցեսները մեքենայացնելու համար կոլտնտեսությունը կազմակերպել է տրակտորային առանձին բրիգադա, որն ունի նոր տրակտորներ, գրեյդեր, շարքացաններ, կուլտիվատորներ և այլ մեքենաներ՝ բոլոր կցվող գործիքներով։ Կոլտնտեսությունն ունի նաև բեռնատար 10 ավտոմեքենա, որոնցով կատարվում է բերքի փոխադրումը։ Սայլը որպես փոխադրամիջոց այլևս չի օգտագործվում։

Վարը, ցանքը, կալսումը և այլն ամբողջապես մեքենայացված են։ Բայց գյուղատնտեսական աշխատատար պրոցեսների մեքենայացման ուղղությամբ

*շատ բան կա անելու։ Առաջատար կուլտուրաների (խաղողի ու բամբակի) մշակությունը դեռևս հիմնականում կատարվում է ձեռքով։ Կոլտնտեսության ղեկավարները լավ են հասկանում, թե դա ինչպիսի բացասական ազդեցություն է թողնում արտադրանքի ինքնարժեքի իջեցման վրա և դժվարացնում կոլտնտեսականների աշխատանքը։ Հաշվի առնելով այդ, նախապատրաստական աշխատանքներ են տարվում խաղողի թմբային այգիները աստիճանաբար լարային սիստեմի վերածելու, բամբակենու քառակուսի-բնային ցանք կատարելու և բամբակի բերքահավաքը հետզհետե մեքենայացնելու համար։ Կոլտնտեսությունն արդեն ունի բամբակահավաք կոմբայն, մնում է կազմակերպել նրա օգտագործումը։*

*Մեքենաների հետ միասին հանրային արտադրության մեջ մուտք է գործել նաև էլեկտրաէներգիան։ Կոլտնտեսության սղոցարանը, ալրաղացը, դարբնոցը, հյուսնոցը, փականագործական արհեստանոցը և կալսիչը աշխատում են էլեկտրաէներգիայով, որը խոշոր չափով բարձրացրել է աշխատանքի արտադրողականությունը, կրճատել ձեռքի ծանր աշխատանքը։*

*Հանրային տնտեսության մեջ իր ուրույն տեղն է գրավում անասնաբուծությունը։ Ներկայումս կոլտնտեսությունն ունի 531 խոշոր եղջերավոր անասուն, որից 190 կով, 1742 մանր եղջերավոր անասուն, 326 խոզ, 2567 հավ։ Անասնաբուծությունը զգալի չափով զարգացել է, հատկապես, վերջին տարիներում։ Չնայած բնական խոտհարքի բացակայության և եղած սակավ արոտավայրերի, վերջին մեկ տարում խոշոր եղջերավոր անասունների թիվը աճել է 37 գլխով, ոչխարներինը՝ 481 գլխով, խոզերինը՝ 99 գլխով, իսկ հավերինը՝ 1067 հատով։ Անասունների գլխաքանակի աճման հետ միասին բարձրացել է նաև նրանց մթերատվությունը, որի շնորհիվ էլ ընթացիկ տարում հանրային անասնաբուծությունից ստացվել է մոտ մեկ միլիոն ռուբլու եկամուտ։*

*Զարգացած հանրային տնտեսությունը չի կարելի պատկերացնել առանց ժամանակակից արտադրական շենքերի։ Այդ ուղղությամբ Ն. Դվինի կոլտնտեսությունում նույնպես խոշոր աշխատանք է կատարված։ Տիպային նախագծերով կառուցված են կովանոցներ, հորթանոցներ, ոչխարանոց, թռչնանոցներ, խոզանոց, արհեստական սերմնավորման կայանի, լաբորատորիայի, բուժարանի, արհեստանոցների շենքեր, գարաժ, էլեկտրաղաց, ջերմատուն, բամբակի չորանոց և այլն։ Երկու հարյուր կովի համար կառուցված գոմերն ունեն ավտոմատ խմոցներ, ներֆերմային տրանսպորտ։ Լավ հարմարությունն են ունեն նաև խոզանոցը, թռչնանոցները, ոչխարանոցը, ուր սանիտարական պայմաններն ու անասունների խնամքը դրված են բարձր հիմքերի վրա։*

*Լավագույն պայմաններ են ստեղծված նաև անասնապահների համար։ Աշխատանքից հետո նրանք հանգստանում են իրենց համար կառուցված առանձին սենյակում, կամ հաճախում են ֆերմայի ակումբը, ուր կան թերթեր, ամսագրեր, գրքեր, խաղեր, ռադիոընդունիչ։*

*Դեռ կարելի է շատ բան ասել հանրային տնտեսության ու նրա ունեցվածքի մասին, որից կոլտնտեսականները ստանում են իրենց ապրուստի հիմնական եկամուտը։ Այդ են ցույց տալիս աշխօրերի դիմաց բաշխվող դրամն ու մթերքները։ Այստեղ 1953 թվականի 13 ռ. 20 կ. դիմաց, 1958 թվականին յուրաքանչյուր աշխօրի տրված է 36 ռուբլի։ Այդ գումարից կոլտնտեսականները կանխիկ ստացել են 21 ռուբլի, իսկ մնացածի դիմաց տրված է յուղ, պանիր, խաղող, գինի, փշատ, հացահատիկ, մեղր և այլն, այսինքն այն, ինչ*



*անհրաժեշտ է նրանց համար։ Շատ ու շատ կոլտնտեսականների ընտանիքներ անցած տարի հանրային տնտեսությունից ստացել են 30—35 հազար ռուբլու եկամուտ։ Նրանք որոշ եկամուտ են ստացել նաև իրենց անձնական տնտեսությունից։*

*Կոլտնտեսականների եկամուտն ավելի շատ կլինի այս տարի, որովհետև նախորդ տարվա համեմատությամբ աճել է հանրային տնտեսության համախառն եկամուտը. այն կկազմի մոտ 10 միլիոն ռուբլի, անցած տարվա 8,7 միլիոն ռուբլու դիմաց։*

*Հանրային տնտեսության եկամուտների աճը կոլտնտեսությանը հնարավորություն է տվել ծերացած յուրաքանչյուր կոլտնտեսականին հանրային ֆոնդից ամիսը 200 ռ. թոշակ տալու։ Այժմ կոլտնտեսությունն ունի 10 թոշակառու։ Կոլտնտեսությունն իր միջոցներով օգնում է նաև սանատորիական բուժման կարիք ունեցողներին, վճարելով նրանց ուղեգրի արժեքի 50 կամ 100 տոկոսը։ Ընթացիկ տարում այդպիսի օգնություն է տրված 20 կոլտնտեսականի։ Այս բոլորից բացի, ամբողջ տարին անասնապահության բնագավառի աշխատողներին տրվում է մեկ ամիս արձակուրդ, նրանց գրանցելով 18—22 աշխատանքային օր։ Այս ամենը կոմունիստական կյանքի ծիլերն են, որոնք ուրախացնում են մեզ։*

## ՆՈՐ ՄԱՐԴԻԿ

*Հանրային տնտեսության զարգացման բնագավառում եղած հաջողությունները ձեռք են բերել մարդիկ, կադրերը, որոնք ամենուրեք աչքի են ընկնում իրենց ջանասեր աշխատանքով, բանիմացությամբ, նորը, առաջավորը արմատավորելու հաստատակամությամբ։ Դա վերաբերում է ոչ միայն ղեկավարներին, այլև շարքային մարդկանց, անմիջականորեն արտադրության մեջ աշխատող կոլտնտեսականներին, որոնք իրենց աշխատանքով, կուլտուրայով ու գիտելիքներով վեր են բարձրացել, նոր մարդ դարձել։ Նրանք գործ ունեն ժամանակակից գյուղատնտեսական մեքենաների, ագրո-զոոտեխնիկայի, հողագործության առաջավոր եղանակների, հանրային խոշոր տնտեսության աշխատանքի կազմակերպման, պլանավորման ու վարձատրության պրոգրեսիվ ձևերի հետ, որոնք գնալով ավելի խոր արմատներ են գցում սոցիալիստական գյուղում։*

*Մոտիկից ծանոթանալով Ն. Դվինի կոլտնտեսության մարդկանց հետ, ակնհայտ է դառնում մի ուրախալի երևույթ. դա երիտասարդության, նոր կադրերի թարմ հոսանքն է աշխատանքի բոլոր բնագավառներում։*

*— Ծերունիները, հասակավոր մարդիկ, թոշակավորվում են, թող նրանք հանգստանան,— ասում են երիտասարդները, որոնք դպրոցն ավարտելուց հետո անմիջապես աշխատանքի են անցել կոլտնտեսությունում։*

*Խաղողի բերքառատ այգիներում, բամբակենու սպիտակին տվող դաշտերում, անասնապահական ֆերմաներում, շինարարական բրիգադայում հաճելի է տեսնել ազնիվ հոգու և վառ ձգտումների տեր երիտասարդների խանդավառ աշխատանքը, բերկրալից ժպտուն դեմքերը։ Ահա նրանցից մեկը՝ թռչնապահ Էլիչկա Ասատրյանը, որը պարտկազմակերպության քարտուղար Ա. Աբրահամյանի խոսքերով ասած, գործի համար հոգի է տալիս։ Միջնակարգ դպրոցն ավարտելուց հետո նա անմիջապես աշխատանքի է անցել հավաբուծական ֆերմայում և կարճ ժամանակում դարձել է իր գործի իսկական վարպետ։*

*— Ուկրաինայի առաջավոր թռչնապահների փորձն ուսումնասիրելուց հետո,— պատմում է պարտկազմակերպության քարտուղարը,— Էլիչկան շատ*

նոր բան մտցրեց աշխատանքում, սկսեց ավելի հոգատարությամբ խնամել ու աճեցնել հավերին և, եթե այսօր կոլտնտեսությունն ավելի շատ հավ ունի, քան պետք է ունենար յոթնամյակի վերջին տարում, ապա այդ գործում մեծ է Աստրյանի կատարած աշխատանքը։ Հաշվի առնելով այդ, մենք նրան ընդունել ենք պարտիայի շարքերը և օրերս էլ ընտրել պարտբյուրոյի անդամ։

Երիտասարդների աշխատանքի մասին առանձնապես գովեստով է խոսում բրիգադավար Ս. Թարվերդյանը։

— Մեր բրիգադայի աշխատողների կեսից ավելին,— պատմում է նա,— երիտասարդներ են։ Նրանցից Շ. Բեգլոյանը, Ռ. Պետրոսյանը, Ա. Հակոբյանն ու շատերը օրական կատարում են երկու արտադրական նորմա։

Միայն գյուղի դպրոցն ավարտած երիտասարդները չեն, որ աշխատում են կոլտնտեսությունում։ Այստեղ աշխատում են նաև գյուղատնտեսական միջնակարգ և բարձրագույն կրթություն ունեցող շատ ընկերներ։ Նրանցից զոոտեխնիկներ Գ. Վարդանյանը, Վ. Հովհաննիսյանը, Ա. Նազարյանը անասնապահական ֆերմաների վարիչներ են, Ա. Խուդոյանը՝ գյուղատնտես, Ա. Նազարյանը՝ անասնաբույժ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Վ. Մարգարյանը՝ ագրոտեխնիկ։ Գյուղատնտեսական տեխնիկումն ավարտած շատ երիտասարդներ դաշտավարական բրիգադաներում շարքային աշխատանք են կատարում և իրենց գիտելիքները պրակտիկայում գործադրում։ Դրանցից և միջնակարգ դպրոցն ավարտած մյուս երիտասարդներից շատերը պատրաստվում են առանց արտադրությունից կտրվելու սովորելու հեռակա բարձրագույն ուսումնական հաստատություններում։

Ն. Դվինում աճել ու զարգացել են բազմաթիվ նոր կադրեր, հրաշալի պրակտիկ կազմակերպիչներ, որոնք ճիշտ են դասավորված հանրային տնտեսության տարբեր ճյուղերում և ղեկավար աշխատանքում։ Դրանցից է կոլտնտեսության վարչության նախագահ ընկ. Զավեն Նազարյանը։ Ունենալով տնտեսագիտական բարձրագույն կրթություն և խոր կերպով ուսումնասիրելով գյուղատնտեսության էկոնոմիկան, նա կարողանում է հմտորեն ղեկավարել կոլտնտեսության բազմաճյուղ հանրային տնտեսությունը, ժամանակին լուծել հասունացած հարցերը, ապահովել պլանային առաջադրանքների կատարումը։ Նրա աշխատանքում ամենադրականն այն է, որ պարտկազմակերպության օգնությամբ իր շուրջն է համախմբել արտադրության հրամանատարներին՝ բրիգադավարներին, ֆերմաների վարիչներին, կոլտնտեսային ողջ ակտիվին, որոնց միջոցով բարձր հիմքերի վրա է դրել աշխատանքի կազմակերպումը, կարգապահությունը, հանձնարարված գործի նկատմամբ պատասխանատվության զգացումը։

Գյուղում աճել են նաև կուլտուրայի ու լուսավորության բնագավառներում աշխատող կադրեր։

Վերափոխված սոցիալիստական Դվինում ամենուրեք աչքի է զարնում նոր մարդու, հանրային տնտեսության ու հարազատ պետության շահերը բարձր դասող մարդու զարգացումը, որը և ամենամեծ նվաճումն է։

## ԻՐԱԿԱՆԱՑԱԾ ԵՐԱԶՆԵՐ

Բարեկեցիկ կյանքի առաջին պայմանը աշխատանքի համար ստացած եկամուտն է, որը, ինչպես տեսանք, դվինցիների մոտ մեծ է։ Նրանք իրենց ստացած եկամուտով լավ սնվում են ու հագնվում։ Բայց բարեկեցիկ կյանքի համար միայն սնունդն ու հագուստը բավական չեն։ Դրանց հետ միասին անհրաժեշտ



է նաև լավ բնակարան, որի մասին աշխատավոր դվինցին շատ է երազել։

— Մեր շատ երազներն իրականություն են դարձել։ Իրականություն է դարձել նաև մեր երազանքը լավ բնակարան ունենալու մասին,— ասում են հասակավոր գյուղացիները և ցույց տալիս նախկին հողաշեն տների ու հյուղակների տեղը վարդագույն տուֆ քարով կառուցված ու վեր բարձրացած գեղեցիկ բնակարաններ, որոնց զգալի մասը երկհարկանի է։ Նոր բնակարաններն ունեն լուսավոր սենյակներ, խոհանոցներ, միջանցքներ, պատշգամբներ, թիթեղյա ծածկ և այլ հարմարություններ։ Նման բնակարաններ գյուղն իր պատմության մեջ չի ունեցել։

— Իհարկե, բոլոր կոլտնտեսականները չեն,—պատմում է կոլտնտեսության նախագահը,— որ նոր բնակարաններ են կառուցել։ Բայց մի քանի տարուց հետո այդպիսիք կկառուցեն բոլոր կոլտնտեսականները, որոնց մենք կօգնենք այդ գործում։

Սովորաբար, երբ գյուղացին բնակարան է կառուցում, նրա կողքին կամ բակում ունենում է նաև անասնագոմ, ուր պահում է իր անձնական օգտագործման համար ունեցած անասունները։ Դվինում մենք նկատեցինք, որ շատ կոլտնտեսականներ հրաժարվել են դրանից։ Ահա թե այդ առթիվ ինչ են ասում կոլտնտեսականները։

— Մեր հանրային տնտեսությունում,— ասում են նրանք,— անասնաբուծական մթերքների արտադրությունը հասել է այնպիսի մակարդակի, որ կոլտնտեսությունն արդեն հնարավորություն ունի լիուլի բավարարելու այդ մթերքների մեր պահանջը։ Էլ ինչո՞ւ կով պահել, երբ նրա կերի ու խնամքի հետ կապված ծախսերը մի քանի անգամ բարձր են, քան տված եկամուտը։

Նրանք խելացի և ճիշտ են վարվում, երբ սկսել են իրենց կովերը վաճառել կոլտնտեսությանը։ Անցյալ տարի նրանք վաճառել են 20 կով, իսկ այս տարվա անցած 9 ամսում՝ 11 կով։ Առաջիկայում համարյա բոլոր կոլտնտեսականները կվաճառեն իրենց անձնական կովերը։ Այժմ կոլտնտեսությունն ամեն օր, այն էլ անսահման քանակությամբ, կիլոգրամը 2 ռուբլով թարմ կաթ է վաճառում կոլտնտեսականներին։ Միայն 1959 թվականի անցած 10 ամսում կոլտնտեսությունն իր անդամներին վաճառել է 25.000 կիլոգրամ կաթ և 30 հազար ձու։

— Աշնան վերջում,— ասում է կոլտնտեսության նախագահը,— մենք կոլտնտեսականներին կվաճառենք նաև 400 մսացու ոչխար։

Բարեկեցիկ կյանք վարող կոլտնտեսականների համար կենսական պահանջ է դարձել կուլտուրական օջախներ հաճախելը, իսկ այդպիսիք գյուղում քիչ չկան։ Ահա՛ գյուղական հրաշալի ակումբը՝ իր 400 տեղանոց դահլիճով, մեծ բեմով, կինոսարքավորումով, խաղասենյակներով ու ընթերցարանով, թատերական, շաշկի-շախմատի, պարի, կարի ու ձևի խմբակներով, յոթնամյա հոյակապ պլանը պատկերող ցուցադրական հարուստ նյութերով։ Ահա՛ ակումբում բացված Հայկական ՍՍՌ ժողովրդական նկարիչ-քանդակագործ, ակադեմիկոս Արա Սարգսյանի ստեղծագործությունների ցուցահանդեսը, ուր կա նաև Դվինի կոլտնտեսության առաջավոր բրիգադավար Ստեփան Խուդոյանի կիսանդրին։ Ահա՛ և գրադարանը՝ իր 4200 կտոր գրականությամբ, որից օգտվում են 211 հոգի։ Այստեղ է նաև ընթերցարանը, ուր ամեն օր կարելի է կարդալ կենտրոնական ու ռեսպուբլիկական նոր թերթեր ու ամսագրեր։

Գյուղում գործում է մանկապարտեզ, որն ունի մաքուր ու կահավորված ննջարան, խաղասենյակ, ճաշասենյակ, խոհանոց: Կա նաև մանկամսուր:

Վերջին տարիներս կառուցված շենքում են գտնվում գյուղական ծննդատունն ու հիվանդանոցը՝ իրենց բոլոր հարմարություններով ու մի քանի կաբինետներով: Ամեն օր գործում է բաղնիքը, որն ունի առանձին համարներ և ընդհանուր լողարաններ: Լավն է հյուրանոցը՝ իր երկու սենյակով, ապակեպատ պատշգամբով ու հինգ մահճակալով: Այն իր մաքրությամբ, կարգ ու կանոնով երբեք չի զիջում շրջկենտրոնի հյուրանոցին: Ամեն մի գիշերող գոհունակությամբ է հեռանում այստեղից, իր հետ տանելով հերթապահուհի Տիգրանուհի մայրիկի՝ նորից համեցեք, սիրալիր հրավերը:

Գյուղում աչքի ընկնող տեղ են գրավում № 1 և № 2 դպրոցները՝ իրենց 284 սաներով ու 30 ուսուցիչներով: Կենսախինդ մանուկներն այստեղ ձեռք են բերում գիտելիքներ, ուսումնափորձնական հողամասում և արհեստանոցներում հմտանում են գործնական աշխատանքի համար:

— Առաջիկա տարիներում,— ասում է դպրոցի դիրեկտոր ընկ. Կ. Սիմոնյանը,— գյուղում կկառուցվի ինտերնատի շենք, որի վրա կծախսվի հինգ միլիոն ռուբլի: Գյուղի բոլոր երեխաները կլինեն ինտերնատում և դա հնարավորություն կտա ավելի բարձր հիմքերի վրա դնելու մատաղ սերնդի ուսման ու կրթության գործը:

Այս բոլորը խոսում են սոցիալիստական նոր գյուղի զարգացած կուլտուրայի մասին: Այդ մասին են խոսում նաև ռադիոհանգույցը, կապի բաժանմունքը՝ իր ավտոմատ հեռախոսներով, ստացվող 579 օրինակ թերթերն ու ամսագրերը, շատ կոլտնտեսականների անձնական գրադարանները, մոտ 50 հեռուստացույցները, հարյուրավոր ռադիոընդունիչները, ինչպես և սառնարանները, լվացքի, կարի մեքենաները, էլեկտրավառարանները և տնային գործածության այլ իրերն ու առարկաները, որոնք արդեն մտել են կոլտնտեսականների կենցաղի մեջ, վերափոխելով ու բարելավելով կյանքի պայմանները: Միայն գյուղի խանութից կոլտնտեսականները մեկ տարվա ընթացքում գնել են մեկ միլիոն 990 հազար ռուբլու տարբեր տեսակի ապրանքներ:

Դվինցիների բարեկեցիկ կյանքի մասին կարելի է ավելի շատ բան ասել, փաստեր բերել, բայց բավարարվենք մեկով. դա բնակչության արագ աճն է: Գյուղսովետի գործկոմի նախագահ ընկ. Մ. Ամիրխանյանի տեղեկության համաձայն 1957, 1958 և 1959 թվականներին գյուղում եղել է 239 ծնունդ, 24 մահացություն: Այլ կերպ ասած, երեք տարվա ընթացքում գյուղի բնակչությունը աճել է 215 հոգով:

## ԾԱՂԿՈՂ ԴՎԻՆԻ ՎԱՂԸ

Ընթացիկ տարվա հունիսի 14-ին Ն. Դվինում կարևոր իրադարձություն տեղի ունեցավ. կոլտնտեսականների ընդհանուր ժողովը քննության առավ յոթնամյա պլանի կատարման ընթացքը և Դվին գյուղը քաղաքատիպ ավանի վերածելու հարցը: Այդ հարցի մասին զեկուցեց կոլտնտեսության նախագահ ընկ. Զ. Նազարյանը: Մանրամասնորեն վերլուծության ենթարկելով եղած հնարավորությունները և դեռևս չօգտագործված ռեզերվները, նա նշեց, որ բոլոր պայմանները կան յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու և գյուղատնտեսական մթերքների արտադրությունը շեշտակիորեն բարձրացնելու համար: Դրա շնորհիվ մեծ չափով կաճի կոլտնտեսության դրամական եկամուտը, որից յոթնամյակում անբաժանելի դրամագլխին հատկացվելու է 11 միլիոն ռուբլի:



— Նկատի ունենալով, որ վերջին տարիներս հիմնականում կառուցվել են կոլտնտեսության անհրաժեշտ արտադրական օբյեկտներ, ինչպես և ակումբի, հիվանդանոցի, մանկապարտեզի, բաղնիքի, հյուրանոցի շենքեր և այլն,— ասաց զեկուցողը,— նպատակահարմար ենք գտնում արտադրական անհրաժեշտ օբյեկտների շինարարությանը զուգընթաց, կոլտնտեսության միջոցներով կուլտուր-կենցաղային ու բնակարանային լայն շինարարություն ծավալել, որպեսզի մինչև յոթնամյակի վերջերը գյուղն իր կուլտուր-կենցաղային մակարդակով մոտենա քաղաքատիպ ավանի աստիճանին:

— Լավ է մտածված,— այս ու այն կողմից ասացին կոլտնտեսականները, և սկսվեց մտքերի աշխույժ փոխանակությունը:

— Դա մեր նոր առաջընթաց քայլը կլինի հին կենցաղից նորին անցնելու: Ես լիովին համաձայն եմ շինարարության այն պլանին, որի հետ մեզ զեկուցողը ծանոթացրեց,—իր ելույթում ասաց կոլտնտեսական Ս. Խուդոյանը:

Ամբիոնին է մոտենում կոլտնտեսության դարբինը՝ Ա. Աբրահամյանը:

— Գյուղի մակարդակը քաղաքի մակարդակին հասցնելը մեր ձգտումն է, որի իրականացմանը օգնելու է գալիս յոթնամյա պլանը: Այդ պլանի կատարումով կապահովենք նախատեսված կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարությունը, որով ավելի կուլտուրական կդառնա մեր կյանքը:

Աբրահամյանից հետո ելույթ ունեցավ շարքային կոլտնտեսական Հ. Հովհաննիսյանը:

— Կոլտնտեսությունը,— ասաց նա,— բոլոր հնարավորություններն ունի նոր շինարարության ներկայացված պլանը կատարելու համար: Դա կախված է մեզանից, մեր աշխատանքից, իսկ մենք լավ կաշխատենք և մեր գյուղը իր կուլտուր-կենցաղային մակարդակով կմոտեցնենք քաղաքատիպ ավանի մակարդակին:

Ժողովում ելույթներ ունեցան նաև ուրիշները. ելույթ ունեցավ նաև պարտիայի շրջկոմի քարտուղար ընկ. Ժ. Սանոյանը: Նրանք ջերմորեն պաշտպանեցին յոթնամյակի ընթացքում Ներքին Դվին գյուղը քաղաքատիպ ավանի մակարդակին մոտեցնելու՝ նախատեսված ծրագիրը: Ժողովը միաձայն որոշեց արտադրական անհրաժեշտ օբյեկտների հետ միասին, մոտ ժամանակներս կառուցել եռհարկանի երեք բնակելի տուն, լվացքատուն, կենցաղային սպասարկման արհեստանոցներ, հացի փուռ, կաթնախոհանոց, ճաշարան, որտեղ պատրաստվելու են նաև կիսաֆաբրիկատներ, բոլոր շենքերում անցկացնել կենտրոնական ջեռուցում, կոյուղի, ասֆալտապատել հիմնական փողոցները, կառուցել մայթեր և այլն:

Կուլտուր-կենցաղային ու բնակարանային շինարարության նախատեսված ծրագիրը հաջողությամբ կենսագործելու համար կոլտնտեսականները որոշեցին ամեն տարի 17 տոկոսի փոխարեն անբաժանելի ֆոնդին հատկացնել կոլտնտեսության դրամական մուտքի 25 տոկոսը:

Գյուղում կուլտուր-կենցաղային և բնակարանային շինարարություն ծավալելու մասին կոլտնտեսության ընդհանուր ժողովի որոշումը, որն արժանացել է Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի բյուրոյի հավանությանը, արդեն կենսագործվում է:

Կոլտնտեսությունն այս տարի կառուցել է ճաշարանի և Հնաբերդի ակումբի շենքերը, ասֆալտապատել է 800 մետր երկարությամբ փողոց և

*սկսել է հացի փռի կառուցումը: Նախապատրաստական աշխատանքներ են ծավալված մյուս տարվա շինարարության համար:*

*Կոլտնտեսությունը լուրջ ուշադրություն է նվիրում նաև արտադրական շենքերի շինարարությանը, ավելի է ամրապնդում արտադրական բազան և ակտիվ մասնակցություն ունենում միջկոլտնտեսային օբյեկտների կառուցմանը: Այս տարի կոլտնտեսությունը կառուցել է խոզանոց, գարաժ՝ տրակտորների համար և մասնակցել է Դվինի ջրանցքի շինարարությանը: Այդ ջրանցքի կառուցումից հետո կոլտնտեսությունը հնարավորություն կունենա ոռոգել գյուղի վերին մասում եղած հողերը և այնտեղ տնկել նոր այգիներ և մշակել կերային կուլտուրաներ:*

*Ով եղել է այսօրվա Ներքին Դվինում, ով դիտել է կոլտնտեսության բերքառատ դաշտերը, ով տեսել է մթերքներով լեցուն պահեստները, կուլտուր-կենցաղային ու արտադրական նորակառույց շենքերը, էլեկտրական լույսերով ողողված կոլտնտեսականների բարեկեցիկ ու կահավորված բնակարանները, կհամոզվի, որ դվինցիները բախտավոր մարդիկ են: Նրանք այդ բախտին արժանացել են դեպի հանրային տնտեսության ամրապնդումն ու զարգացումն ունեցած իրենց ազնիվ վերաբերմունքով, ժրաջան ու եռանդուն աշխատանքով, որը գնալով նոր թափ է ստանում: Կոլտնտեսականներն անում են ամեն ինչ, որպեսզի ժամկետից շուտ կատարեն յոթնամյա պլանը և գյուղն իր կուլտուր-կենցաղային մակարդակով մոտիկ ապագայում հասցնեն քաղաքատիպ ավանի մակարդակին:*

*Այդ ազնիվ նպատակին հասնելու համար դվինցիները պետք է հիմնովին մեքենայացնեն գյուղատնտեսական աշխատանքները, վերացնեն այդ գործում եղած թերությունները և մեծ չափով բարձրացնեն աշխատանքի արտադրողականությունը: Անհրաժեշտ է, որպեսզի կոլտնտեսությունը նաև ձեռնամուխ լինի կոմպլեքսային բրիգադաների ստեղծման, տնտեսական հաշվարկի կիրառման և դրամական լրիվ վարձատրության, որոնց համար կան բոլոր հնարավորությունները:*

*Սովետական Դվինի շինարարները ձեռք բերված հաջողությունների հիման վրա կհասնեն նորանոր հաջողությունների և ավելի կամրապնդեն ու կզորացնեն իրենց կոլտնտեսությունը:*

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԼԱԳԵՐԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

## ԱԼԲԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԳԱՐՈՒՆԸ

Տասնհինգ տարի առաջ, 1944 թվականի նոյեմբերի 29-ին ալբանական լեռնաշխարհի վրա ծագեց ազատության արշալույսը: Երկիրն ազատագրվեց ֆաշիստական զավթիչներից, իշխանությունն անցավ աշխատավոր ժողովրդի ձեռքը: Ալբան ժողովրդի ազգային-ազատագրական պայքարը, որը գլխավորում էր Կոմունիստական պարտիան, պսակվեց հաղթանակով: Այդ հաղթանակը հնարավոր դարձավ Սովետական Միության մեծ օգնության ու նրա քաջարի բանակի կողմից ֆաշիստական զորքերի ջախջախման շնորհիվ:

«Առանց Սովետական Միության,— ասում է Ալբանիայի Աշխատանքի պարտիայի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Էնվեր Խոջան,— գոյություն չէր ունենա ազատ Ալբանիան... Ուստի մենք ընդմիշտ երախտապարտ ենք լինելու սովետական մեծ ժողովրդին՝ մեր ազատարարին, բոլոր ժողովուրդների ֆաշիզմի լծից ազատագրողին, մեր մեծ պաշտպանին»:

Նոյեմբերյան փառապանծ հաղթանակը շրջադարձային կետ հանդիսացավ Ալբանիայի ժողովրդի կյանքում, որը ձեռք բերեց ազգային անկախություն, պետական ինքնուրույնություն և կանգնեց զարգացման սոցիալիստական ուղու վրա:

Նախառևոլյուցիոն շրջանում Ալբանիան հանդիսանում էր Եվրոպայի ամենից հետամնաց երկիրը: Խղճուկ էր նրա արդյունաբերությունը, էքստենսիվ ու նատուրալ՝ գյուղատնտեսությունը, ալբանական գյուղում տիրապետում էին ֆեոդալական հարաբերություններ, իսկ երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ գերման-իտալական ֆաշիստական օկուպանտները երկիրը հասցրին անկման եզրին:

Ազատագրված Ալբանիայում իրականացվեցին ռևոլյուցիոն արմատական վերափոխումներ. մեկընդմիշտ վերջ արվեց կապիտալիստների և կալվածատերերի բիրտ շահագործմանը: Ալբան ժողովուրդը կոմունիստների (ներկայումս Աշխատանքի) պարտիայի ղեկավարությամբ, ՍՍՌՄ-ի և սոցիալիստական լագերի մյուս երկրների աշխատավորների եղբայրական բազմակողմանի օգնության շնորհիվ ոչ միայն արագորեն վերականգնեց ավերված տնտեսությունը, այլև այն հասցրեց բուռն ծաղկման:

Սոցիալիստական ինդուստրացման քաղաքականության հաջող իրականացման շնորհիվ հիմնովին փոխվեց երկրի դեմքը՝ Ալբանական ժողովրդական Ռեսպուբլիկան վերածվեց ագրարային-ինդուստրիալ առաջավոր տերության, տնտեսության բոլոր ոլորտներում հաղթանակեց սոցիալիստական կացութաձևը: Ստեղծվեց հայրենի արդյունաբերություն, կառուցվեցին նոր տեխնիկայով հագեցած տասնյակ գործարաններ, ֆաբրիկաներ, էլեկտրակայաններ, շահագործման հանձնվեցին նորանոր հանքահորեր, կազմակերպվեցին պետական օրինակելի տնտեսություններ, ՄՏԿ-ներ: Խոշոր կառույցներից են Տիրանայի տեքստիլ կոմբինատը, Վլորայի ցեմենտի, Կորչայի շաքարի, Ցերիկի նավթաթորման գործարանները, Մատի գետի վրա կառուցված Կ. Մարքսի անվան հիդրոէլեկտրակայանը և այլն: Կառուցվեց և շահագործման հանձնվեց երկրի առաջին երկաթուղագիծը:

Աշխատանքի պարտիայի և ժողովրդական կառավարության ձեռնարկած միջոցառումների շնորհիվ երկրի էկոնոմիկան ապրում է բուռն վերելք: Ներկայումս արդյունաբերության արտադրանքի նախապատերազմյան մակարդակը գերազանցված է 18,8 անգամ. ռեսպուբլիկայի արդյունաբերությունը քսան օրում տալիս է այնքան արտադրանք, որքան արտադրվել է ամբողջ 1938 թվականի ընթացքում: Բավական է ասել, որ միայն 1958 թվականին ժողովրդական կառավարությունն արդյունաբերության զարգացման նպատակով ներդրել էր այնքան կապիտալ միջոցներ, որքան անցյալում միապետական Ալբանիան ի վիճակի կլիներ ներդնել 70 տարում:

Երկրի էկոնոմիկայի ծաղկման շնորհիվ Ալբանական ժողովրդական Ռեսպուբլիկան մեկ շնչին ընկնող արդյունաբերության առանձին նյուղերի արտադրանքով հասել է և առաջ անցել իր հարևան պետություններից՝ Թուրքիայից, Հունաստանից և նույնիսկ Իտալիայից։ Երբ նախապատերազմյան շրջանում մեկ շնչի հաշվով Ալբանիայում արտադրվում էր 27 սմ բամբակե գործվածք, ապա այժմ՝ 16,7 մետր, այսինքն՝ 62 անգամ շատ։ Մինչդեռ Իտալիայում և Հունաստանում մեկ շնչի հաշվով արտադրվում է 10,5, իսկ Թուրքիայում՝ 6,2 մետր գործվածք։ 1958 թվականին երկրում արտադրվել է 16 անգամ շատ էլեկտրաէներգիա, քան՝ 1938 թվականին։ Այժմ ժողովրդական Ալբանիան 18 տոկոսով ավելի շատ էլեկտրաէներգիա է արտադրում, քան նրա հարևան Թուրքիան։ Նավթի հանույթը նախառևոլյուցիոն շրջանի համեմատ քառապատկվել է, իսկ քրոմինը ավելացել է մոտ 29 անգամ։ Ալբանիան ներկայումս մեկ շնչի հաշվով ավելի շատ նավթ, քրոմ, պղինձ և քարածուխ է արտադրում, քան Հունաստանը, Թուրքիան և Իտալիան։

Ալբանական ժողովրդական Ռեսպուբլիկայի էկոնոմիկայի զարգացման բարձր տեմպը հանդիսանում է արտադրության սոցիալիստական սիստեմի օրինաչափությունը, և այն պայմանավորված է սոցիալիստական հզոր լագերի երկրների միջև եղած եղբայրական փոխադարձ օգնությամբ ու համագործակցությամբ։

1958 թվականի փետրվարին կայացավ Ալբանիայի Աշխատանքի պարտիայի Կենտկոմի պլենումը։ Պլենումը, հաշվի առնելով ժողովրդի աշխատանքային էնտուզիազմը, ինչպես նաև ՍՍՌՄ-ի կողմից ցույց տրվող մեծ օգնությունը ժողովրդական տնտեսության զարգացման երկրորդ հնգամյա (1956—1960 թթ.) պլանի իրականացման գործում, որոշեց ընդլայնել հնգամյակի առաջադրանքները։ Այդ որոշմամբ արտադրության միջոցների արտադրությունը 14,8-ի փոխարեն կավելանա 20 տոկոսով, իսկ սպառման առարկաների արտադրանքը՝ 13-ի փոխարեն 15,8 տոկոսով։ Արդյունաբերության և գյուղատնտեսության համախառն արտադրանքի արժեքը 62,3 միլիարդ լեկի դիմաց կհասնի 72,5 միլիարդ լեկի։ 1960 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքը, 1955 թվականի համեմատ, ավելանալու է 2,2 անգամ։

Ժողովրդա-դեմոկրատական կարգերի օրոք լրիվ վերափոխվել է նաև ալբանական գյուղը։ Ագրարային ռեֆորմի շնորհիվ հողը հանձնվեց աշխատավոր գյուղացիներին. լիկվիդացիայի ենթարկվեց կալվածատիրությունը որպես դասակարգ, խարխլվեցին կուլակության դիրքերը. 70.211 չքավոր և հողազուրկ գյուղացիներ ստացան հող։ Պարտիան ու կառավարությունը ձեռնամուխ եղան գյուղի սոցիալիստական վերակառուցմանը։ Գյուղատնտեսական օրինակելի պետական տնտեսությունների, ՄՏ կայանների հետ մեկտեղ ալբանական գյուղում կազմակերպվեցին գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվներ։ 1959 թվականի սկզբին արտադրական կոոպերատիվներում ընդգրկված էին ավելի քան 100 հազար գյուղացիական տնտեսություններ, որոնք կազմում էին գյուղական տնտեսատերերի 63,2 տոկոսը. գյուղական կոոպերատիվները մշակում են վարելահողերի 76,2 տոկոսը։ Երկրի գյուղական յոթ խոշոր շրջաններում լրիվ ավարտված է կոոպերացումը։

Ներկայումս սոցիալիստական Ալբանիայի դաշտերում աշխատում են 2700 տրակտոր, հազարավոր կոմբայններ, հնձիչներ, խրձկապիչներ և գյուղատնտեսական այլ մեքենաներ։ Արտադրական կոոպերատիվներում գյուղատնտեսական աշխատանքների 70 տոկոսը մեքենայացված է, որի շնորհիվ աշխատանքի արտադրողականությունն անհամեմատ բարձր է, քան անհատական գյուղացիական տնտեսություններում։ Ալբանիայում մելիորացիայի, խամ ու խոպան հողերի յուրացման շնորհիվ գյուղատնտեսությունը ստացավ 180 հազար հեկտար արգավանդ հող։ Ջրանցքների կառուցումով ոռոգելի հողերի տարածությունն ընդլայնվեց 50 հազար հեկտարով։ Այդ ամենը հնարավորություն տվեց զարգացնելու կուլտուրական բույսերի մշակույթը և այգեգործությունը։ Միայն 1959 թվականի առաջին եռամսյակում տնկվեց այնքան պտղատու ծառ, ինչքան գոյություն ուներ Ալբանիայում մինչև 1956 թվականը։

Սոցիալիստական գյուղատնտեսության արտադրանքը մեծացել է ավելի քան երկու անգամ։ Ընդ որում, հացահատիկի արտադրանքն ավելացել է 93 տոկոսով, բրնձինը՝ 8,5 անգամ, բամբակինը՝ 121 անգամ, ծխախոտինը՝ 4 անգամ, կարտոֆիլինը՝ 4,3 անգամ։ Ներկայումս սոցիալիստական սեկտորը տալիս է երկրում արտադրվող հացահատիկի 66,4 տոկոսը, բրնձի՝ 94,9 տոկոսը, բամբակի՝ 91,9 տոկոսը, ծխախոտի՝ 81,8 տոկոսը, շաքարի ճակնդեղի՝ 95,5 տոկոսը, բանջարեղենի՝ 73,6 տոկոսը, կարտոֆիլի և մյուս կուլտուրաների՝ 66,7 տոկոսը։

ԱԱՊ-ի Կենտկոմի 1958 թվականի Փետրվարյան պլենումի որոշմամբ 1960 թվականին հացահատիկի արտադրանքը, 1958 թվականի համեմատ, կավելանա 60 տոկոսով, և երկիրը կապահովվի սեփական հացով։ Մեծ ուշադրություն է դարձվում նաև այգեգործության ու ծխախոտագործության զարգացման վրա։ Գյուղատնտեսության զարգացման արագ տեմպն ապահովելու համար պլանավորված է իրիգացիոն սիստեմի ընդլայնման միջոցով մինչև 1960 թվականի վերջը մշակելի հողերի տարածությունների մեկ երրորդը դարձնել ոռոգելի։ Երկրի էկոնոմիկայի զարգացման հեռանկարային պլանի համաձայն 1965 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, մսի արտադրանքն ավելանալու է 2,3 անգամ, կաթինը՝ 2,4 անգամ։ Այդ նշանակում է, որ երբ 1957 թվականին մեկ շնչի հաշվով արտադրվում էր 12 կգ միս, ապա երրորդ հնգամյակի վերջում այն կհասնի 24 կգ-ի, իսկ կաթինը՝ 95 կգ-ից 194 կիլոգրամի։ Այդ պլանի իրագործումով բնակչության մսի և կաթի պահանջները լրիվ կբավարարվեն։

Սոցիալիստական արդյունաբերության ու գյուղատնտեսության բուռն վերելքին զուգահեռ, աճում է Ալբանիայի ազգային եկամուտը, անշեղորեն բարձրանում է աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակը։ Երկրորդ հնգամյակի վերջում ժողովրդական ռեսպուբլիկայում ազգային եկամուտը, առաջին հնգամյակի համեմատ, կաճի 173 տոկոսով, բանվործառայողների ռեալ աշխատավարձը՝ 35 տոկոսով, իսկ գյուղացիների եկամուտները՝ 45 տոկոսով։ Միայն 1958 թվականի ապրիլին պետական ու կոոպերատիվ մանրածախ գների իջեցման շնորհիվ աշխատավորությունը շահեց 1.300 միլիոն լեկ։

Ալբանիայում մեծ ուշադրություն է դարձվում բնակարանային շինարարությանը։ Երբ 1951—1957 թվականին կառուցվել ու շահագործման է հանձնվել 170 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, ապա միայն 1958 թվականին շահագործման հանձնվեց 147 հազար քառակուսի մետր։ Ընթացիկ տարում միայն ռեսպուբլիկայի մայրաքաղաքում՝ Տիրանայում, աշխատավորության համար կառուցվելու է ավելի քան հազար բնակարան։ Այժմ Տիրանան հիմնովին վերակառուցվում է, որից հետո նա կդառնա ժամանակակից բարեկարգ ու գեղեցիկ քաղաքներից մեկը։

Ժողովրդական ռեսպուբլիկայում բարձր հիմքերի վրա է դրված նաև աշխատավորության սոցիալական ապահովագրության գործը։ Միայն այս տարի կառավարությունն այդ նպատակին հատկացրել է 800 մլն. լեկ՝ 1958 թվականի 550 միլիոն լեկի դիմաց։ Աշխատավորությունը ստանում է ձրի բուժում, օգտվում է հանգստյան տներից և առողջարաններից։

Ժողովրդական իշխանության գոյության ժամանակ Ալբանիայում տեղի է ունեցել իսկական կուլտուրական ռևոլյուցիա։ Անցյալում բնակչության կուլտուրական մակարդակով և դպրոցների քանակով Ալբանիան Եվրոպայի ամենահետամնաց երկիրն էր, որի բնակչության 85 տոկոսն անգրագետ էր։ Ներկայումս ամբողջ երկիրը ծածկվել է դպրոցների, գրադարանների, կարմիր անկյունների, ընթերցարանների և ակումբների ցանցով։ Բացվել են կուլտուրայի տներ և թատրոններ։ Հանրակրթական դպրոցներում սովորողների քանակն ավելացել է 4,5 անգամ։ Այժմ ժողովրդական ռեսպուբլիկայի յուրաքանչյուր հինգ բնակչից մեկը սովորում է, մինչև 45 տարեկան երկսեռ քաղաքացիները գրագետ են։ Մինչդեռ Ալբանիայի հարևան բուրժուական Հունաստանում բնակչության 25 տոկոսն անգրագետ է, իսկ Թուրքիայում՝ 65 տոկոսը։

Նախառևոլյուցիոն Ալբանիայում չկային գիտության և կուլտուրայի օջախներ, իսկ այժմ գործում են Տիրանայի պետական համալսարանը, երկու մանկավարժական և մեկ գյուղատնտեսական ինստիտուտ։ Երկրում հիմնվել են նաև Գիտությունների ինստիտուտ (մի շարք գիտա-հետազոտական հիմնարկներով), պետական դրամատիկական, օպերայի ու բալետի թատրոններ և կինոստուդիա։

Արտադրողական ուժերի արագ զարգացման, գիտության ու կուլտուրայի աննախընթաց վերելքի և աշխատավորական մասսաների նյութական մակարդակի բարձրացման շնորհիվ սոցիալիստական Ալբանիան դարձել է ալբանական ժողովրդի օրորանը, հույսն ու ապավենը։ Տասնյակ հազարավոր ալբանացիներ, որոնք նախառևոլյուցիոն շրջանում հարկադրված էին դիմել պանդխտության, այժմ վերադառնում են հայրենիք։

Այսպիսով, Ալբանիան ժողովրդա-դեմոկրատական կարգերի հաստատման շնորհիվ, սոցիալիստական երկրների և, առաջին հերթին ՍՍՌՄ-ի օգնությամբ բանցելով կապիտալիզմի ստադիան, բռնեց զարգացման սոցիալիզմի ուղին։ Արդարացավ Վ. Ի. Լենինի այն կանխատեսումը, թե «...առաջավոր երկրների պրոլետարիատի օգնությամբ հետամնաց երկրները կարող են անցնել սովետական կարգին և զարգացման որոշ աստիճանների միջոցով՝ կոմունիզմին, խուսափելով զարգացման կապիտալիստական ստադիայից» (Երկեր, հատ. 31, էջ 295)։

Ալբան փոքրիկ ժողովրդի քաղաքական և տնտեսական վիթխարի նվաճումները հանդիսանում են ճնշված ու հարստահարված ժողովուրդների համար այն լավագույն օրինակը, թե ինչ-

պես տարերկրյա և հայրենի բուրժուազիայի լուծը թոթափած ժողովուրդը, կանգնելով սոցիալիստական զարգացման ուղու վրա, կարող է իր երկիրը դարձնել ծաղկուն, իսկ աշխատավորությանը՝ երջանիկ:

Ալբանական ժողովրդական ռեսպուբլիկան գտնվում է սոցիալիստական երկրների համերաշխ ընտանիքում: Նրա մասնակցությունը այդ լագերին խարսխված է պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքի, սոցիալիստական երկրների լրիվ իրավահավասարության, ազգային շահերի փոխադարձ հարգման, բարեկամության ու եղբայրական փոխօգնության, ազգային անկախության ու պետությունների սուվերենության վրա: Այդ համագործակցության մեջ առաջատար դերը պատկանում է Սովետական Միությանը:

Ալբանիան համագործակցելով սոցիալիստական լագերի երկրների հետ, կնքել է նրանց հետ կարճատև և հեռանկարային պայմանագրեր, նրանցից ստանում է վարկեր, տեխնիկական օգնություն և ռացիոնալ ու էֆեկտիվ կարգով օգտագործում երկրի բնական ու տնտեսական ռեսուրսները: Այդ ամենը հնարավորություն են տվել նրան զարգացնելու արտադրության այն ճյուղերը, որոնց համար երկրում գոյություն ունեն ավելի նպաստավոր պայմաններ:

Աճում ու ամրապնդվում է սովետա-ալբանական բարեկամությունը, որը ստեղծվել ու կոփվել է թշնամիների դեմ կռվի բովում, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող ընդհանուր պայքարում: «Մոսկվան,— ասում է Ալբանիայի Մինիստրների Խորհրդի նախագահ ընկ. Մեհմետ Շեխուն,— հանդիսանում էր մեր ժողովրդի և մեր պարտիայի հույսի, հզորության, ոգեշնչման, իմացության ու բանականության աղբյուրը»:

Ալբանական աշխատավորությունը ջերմ սիրով ու խոր հարգանքով է վերաբերվում Սովետական Միության նկատմամբ, քանի որ ՍՍՌՄ-ի հետ է կապված Ալբանիայի ազգայինազատագրական պայքարի և ժողովրդական ռևոլյուցիայի հաղթանակը, անկախ ու սուվերեն ալբանական ռեսպուբլիկայի գոյությունը:

1959 թվականի մայիսի 30-ին Սովետական Միության պարտիական և կառավարական դելեգացիայի հետ Տիրանայի աշխատավորության հանդիպման ժամանակ, որը վերածվեց սովետա-ալբանական բարեկամության մեծ ցույցի, ընկ. Էնվեր Խոջան իր ելույթում ասաց, որ Սովետական Միության հետ բարեկամությունը, արևի ջերմության նման, իր ճառագայթներով տաքացնում է ալբան ժողովրդի կյանքը, որ այդ բարեկամության մեջ է գտնվում մեր բոլոր հաղթանակների գաղտնիքն ու երաշխիքը:

Անչափ աճել է Ալբանիայի միջազգային հեղինակությունը: Նա միջազգային 14 կազմակերպությունների, այդ թվում և ՄԱԿ-ի անդամ է: Մասնակցում է միջազգային 42 դաշնագրերի և 25 պետությունների հետ ունի դիվանագիտական կապեր:

Սոցիալիստական Ալբանիան ապրում է ստեղծագործական ուժերի ծաղկում, տնտեսության ու կուլտուրայի հզոր վերելք: Նա սոցիալիստական հզոր լագերի բոլոր երկրների հետ միասին, միասնական ճակատով, հաղթականորեն ընթանում է կոմունիզմի լուսավոր ուղիով:

Լ. ԲԱՅՐԱՄՅԱՆ

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ԱՍՏՎԱԾԱՇՈՒՆՉԸ ԳԻՏՈՒԹՅԱՆ ԼՈՒՅՍԻ ՏԱԿ

Կրոնը կեղեքվող արարածի հառաչանքն է, ժողովրդի հաշիշը:

Կ. ՄԱՐՔՍ

Ե՞րբ և ո՞վ է գրել այսպես կոչված Աստվածաշունչը կամ Սուրբ գիրքը: Ո՞րն է նրա էությունը:

Այս հարցերին սպառիչ պատասխան է տալիս վերջերս լույս տեսած (ռուսերեն լեզվով) Ի. Կրիվելևի «Գիրք Աստվածաշնչի մասին» օգտակար աշխատությունը, որի հիմնական մտքերը շարադրում ենք ստորև հայ ընթերցողների համար:

Սուրբ գիրքը սկզբում հին եբրայերեն (հրեյերեն) լեզվով կոչվել է Տորա, որը նշանակում է օրենք: Մինչև օրս էլ բազմաթիվ ժողովուրդների մոտ այն կոչվում է Բիբլիա, որ հունարեն նշանակում է՝ գրքեր: Այն Սուրբ գիրք, Աստվածաշունչ, Հին կտակարան են կոչել եկեղեցականները, նրա «սրբությունը», «աստծու օրենքը» լինելու հանգամանքն ընդգծելու նպատակով: Աստվածաշունչը բաղկացած է երկու հիմնական մասերից՝ Հին և Նոր կտակարաններից: Հին կտակարան կոչված ժողովածուն հրեական կրոնի, հավատալիքների, ծեսերի, եբրայական ժողովրդի առասպելների, մարգարեությունների և այլ նյութերի միփակեռպ շարադրանքն է: Նոր կտակարանը բացառապես պարունակում է քրիստոնեության քարոզը:

Աստվածաշնչի եբրայական (հրեական) բնագիրը բաղկացած է 38 տարբեր գրքերից: Առաջին գիրքն սկսվում է աշխարհի արարչագործությունից. շարադրվում է աստծու վեցօրյա աշխատանքը լույս, ջուր, ցամաք, կենդանիներ և մարդ ստեղծելու նպատակով: Մարդկային առաջին զույգը (Ադամն ու Եվան) դեռ դրախտում մի քանի օր չապրած, խախտեցին տիրոջ պատվերը՝ ճաշակելով իմացության ծառի պտուղը: Աստված նրանց դրախտից վռնդեց: Աշխարհիս վրա մարդիկ աճեցին և, հարկավ, ամենից առաջ կազմավորվեց աստծու «ընտրյալ» եբրայական ժողովուրդը:

Այնուհետև գրքում մեծ մանրամասնություններով շարադրվում է հրեից ժողովրդի կյանքը Եգիպտոսում, նրա ելքը գերությունից, նրա պետության ստեղծումը և անկումը, նրա գերեվարությունը Բաբելոնի կողմից, նրա վերադարձը և այլն: Հին կտակարանում, իհարկե, այդ ամենը շարադրված են գերապանցապես կրոնական խորհրդավորությամբ և աղավաղված ձևով, խրատական նկրտումներով, որպես աստծու և իր ժողովրդի անմիջական փոխհարաբերությունների նկարագրություն:

Այն հանգամանքը, որ առաջին մարդը համարձակվեց խախտել տիրոջ պայմանը և ինքնագլուխ դիմեց դեպի ճշմարտությունը, մատնում է հենց մարդու հնարած աստծու մարդակերպությունը և անզորությունը: Բնորոշ է, որ այդ անմեղ քայլի համար աստված սաստիկ պայրացած Ադամին ու Եվային անեծքով դատապարտեց տառապալի կյանքի և մահվան: Այժմ բնականաբար հարց է ծագում. ինչո՞ւ ամենազոր աստվածը չգիտեր իր արարածների այդ «չար» հակումը: Եթե գիտեր, ապա ինչո՞ւ չկանխեց նրանց քայլը: Եթե կարող էր, ինչո՞ւ չարավ այդ: Այս հարցերը մատնում են Աստվածաշնչի բոլոր առասպելների մտահնար բնույթը:

Այնուհետև գրքում շարադրվում է, որ սերունդները բազմանալով այնքան սանձարձակ դարձան, որ արհամարհեցին աստծու կանոնները: Անզոր «իր ստեղծած» մարդկանց վրա իշխելու՝ ամենազոր աստվածը «զղջաց, որ մարդ է ստեղծել երկրիս վրա և իր սրտում տխրեց: Տերն ասաց՝ Երկրի վրայից պիտի ջնջեմ մարդը, որին ստեղծեցի: Պիտի ոչնչացնեմ մարդկանց, անասուններին, սողուններին ու երկնքի թռչուններին, որովհետև նրանց ստեղծելը զղջում եմ» (Աստվածաշունչ, էջ 9) *:

* Մեր հետագա բոլոր մեջբերումները կատարում ենք 1870 թ. տպագրված Աստվածաշնչից.—Ա. Ա.

Իր վղջումն իրացնելու նպատակով աստված ջրհեղեղ սարքեց և Նոյից բացի բոլոր կենդանի էակներին խեղդեց: Եթե այս առասպելին հավատանք, Նոյն իր ընտանիքով փրկվեց Արարատի կատարին լողացող տապանում: Որպես հատուցում այդ փրկության, Նոյն աստծուն ողհ մատուցեց, որը հրճվելով խորովածի անուշաբույր հոտից, ասաց՝ «Սրանից հետո մարդու համար կըրկին երկիրը չպիտի անիծել, թեև մարդը ներքուստ իր մանկությունից չար է: Այլևս չպիտի ոչնչացնեմ ամեն մի կենդանի, ինչպես որ արի» (Աստվածաշունչ, էջ 11): Չնայած իր այս մարդկային վըղջմանն ու մեղայականին, Աստվածաշնչում մենք ականատես ենք այն փաստին, երբ տերը մշտապես դրժում է իր խոստումը, ոչնչացնում է մարդկանց, ժողովուրդներին, վրեժխնդիր լինում բոլոր նրանցից, որոնք հանդգնում են չճանաչել նրան: Սակայն մարդիկ ընթացել են կյանքի ճանապարհով: Բնական և հասարակական ուժերի դեմ մղվող կռվում սրվել է մարդկային միտքը, որը «ջրհեղեղից» հետո ավելի հանդուգն է դարձել: Այս անգամ տիրոջից դժգոհ եբրայեցիք նախաձեռնում են կառուցել այնպիսի մի աշտարակ, որը պիտի հասներ մինչև երկինք: Ինչո՞ւ: Որովհետև կենդանի մարդիկ չէին կարող բավարարվել վերացական աստծու անիրագործելի քարոզներով: Մարդիկ ուզում էին բարձրանալ «երկինք», շոշափել ու տեսնել, թե ի՞նչ է իրենից ներկայացնում ամենազոր Յահվեն: Մարդկային որոնող բանականության ուժն ու թուլությունն են խոսում դարերի խորքից եկած այս առասպելում: Բայց պայքարը շարունակվում է: Մարդը չի ենթարկվում իր աստծուն, թեև նրան կեղեքողները հավատացնում են, որ այս անգամ էլ վրիժառու աստված պատժեց Բաբելոնի աշտարակը կառուցողներին, աշտարակը «կործանվեց» և այլն:

Այս «իրադարձությունից» հետո Յահվեն պայման է կնքում կալվածատեր-ստրկատեր Աբրահամի հետ, ասելով՝ որ ինքը բոլոր ժողովուրդներից գերադասում է հրեաներին, որին խոստանում է առաջնորդել դեպի Ավետյաց երկիրը: Սակայն աստված այդ երկիրը (Քանանը) խոստանում է մի պայմանով, որպեսզի ժողովուրդը հրաժարվի իր «պղծություններից» և կիրառի տիրոջ պատգամները: Տերն ասում է Աբրահամին, որ Սոդոմ և Գոմոր քաղաքների բնակիչները վաղուց անձնատուր են եղել արվամոլության, որի համար նա ոչնչացնում է բոլորին, բացի Ղովտից և նրա երկու աղջիկներից, որոնց տերը խնայում է Աբրահամի խնդրանքով: Իհարկե, ոչ մի հավատացյալ չի կարող հասկանալ, թե ինչո՞ւ երկու քաղաքի բնակիչներից ազատվում է միայն Ղովտն իր երկու աղջիկներով: Գուցե նրա համար, որ երկու քույրերն այդ ազատությունը գործադրում են իրենց հոր հետ սեռականորեն կենակցելով և որի հետևանքը, իհարկե, երեխաների ծնունդն է լինում (էջ 20—21): Այսպիսի միամիտ կուրիոզներ Սուրբ գրքում շատ կան:

Այսպես կոչված «Ելից» գրքում հանգամանորեն նկարագրվում է, թե ինչպես աստծու մշակած հրահանգով, իսրայելացիք ազատվում են եգիպտական գերությունից: Ազատագրման և գաղթի երկարատև ընթացքը վարում է տիրոջ վստահությունը վայելող առասպելական Մովսեսը: Աստվածը նրան պարտադրում է կիրառել 10 օրենքները և իրեն հետևյալ ընծաները բերել՝ «ոսկի, արծաթ, պղինձ: Եվ կապույտ ու ծիրանագույն՝ և կրկնակի կարմիր ու բարակ քաթան և այծի մազ, և կարմիր ներկված խոյի մորթեր՝ ու թեհաշի մորթեր՝ և Սատիմի փայտեր» (էջ 81): Հարկավ այս բարիքները վայելել են տիրոջն «սպասարկող» քրմերը:

Այն պահին, երբ Մովսեսը Սինա լեռան վրա «զրուցում» է տիրոջ հետ, նրա եղբոր՝ Ահարոնի ղեկավարությամբ անհնազանդ եբրայական ժողովուրդը ոսկե հորթ է շինում և շուրջպար է բռնում իր շոշափելի աստծու շուրջը: Իջնելով լեռից, Մովսեսը հարցնում է Ահարոնին, ինչո՞ւ այդպիսի ծանր մեղք գործեցիք և ոսկե կուռք շինեցիք: Ահարոնը պատասխանում է. դու գիտես, որ այս ժողովուրդը չարին է հակված: Նրանք ասին, մեզ այնպիսի աստված շինի, որն ընթանա մեր առջևից, ես էլ շինեցի: Մովսեսը կատաղած աստծու անունից հրամայում է: «Թող որ ամեն մարդ իր սուրը պատյանից հանի և ամեն մարդ իր եղբորը՝ և ամեն մարդ իր ընկերոջը՝ և ամեն մարդ իր դրացիին սպանի: Այդ օրը Մովսեսի հետևորդները 3000 հոգի սպանեցին» (էջ 90): Նման հաշվեհարդարներ Մովսեսը շատ է կատարում, իսկ Յահվեն կրկին ներում է եբրայեցիներին:

Հաջորդ գրքում («Ղևտացոց») մանրամասնորեն հրահանգ է տրվում Յահվեի կողմից, թե ինչպես պետք է լինեն նրա պաշտամունքի ծիսակատարությունները: Տերը սահմանում է, որ իրեն ողհ պետք է բերել՝ մորթվող անասունի փորի ճարպը, երկու երիկամունքները, լյարդի թաղանթը, տապկից պոկված ամբողջ դմակը և այլն (էջ 101): Զոհվող երինջի և այծի կամ ոչխարի համար տերը սահմանում է բռնազանձման տարբեր պրոպորցիաներ: Հետաքրքրական է, որ աստված հաճախ շեշտում է, որ իրեն անչափ հաճելի է այրվող ճարպի անուշ բույրը:

Աստվածաշնչի ընթերցողին զարմանք է հարուցում այն անհարիր երևույթը, որ Յահվեն սիրում և հովանովորում է այն ժողովրդին, որը մանկությունից «չարամիտ» է և «անհնազանդ»: Յահվեի և ժողովրդի փոխհարաբերություններում վճռական



դեր է խաղում փոխանակության սկզբունքը: Ժողովուրդը պարգևատրվում է տիրոջ կողմից, երբ նրան լսում է, պատժվում է, երբ «օրինազանց» է լինում: Այս ոգով է շարադրված ամբողջ Աստվածաշունչը: Իհարկե հաճախ է ընդգծվում աստծու և մարգարեների բերանով, թե հրեից ժողովուրդը երախտամոռ է, ապիկար, գոռոզ և անհրավ:

Մի անգամ անապատից Մովսեսը հետախույզներ է ուղարկում Քանան, որպեսզի նրանք իմանան, թե ինչ է իրենից ներկայացնում տիրոջ խոստացած երկիրը (հավանաբար իր սրտի խորքում Մովսեսն էլ չէր հավատում Յահվեի խոստումներին): Հետախույզները վերադառնում են և ասում Մովսեսին՝ թե երկիրը շատ բարեբեր է ու գեղեցիկ, բայց նրա բնակիչները ուժեղ են և քաջ, որոնց հաղթելը շատ դժվար է: Տիրոջ «ընտրյալ» ժողովուրդը սարսափելով այդ լուրից, վճռում է վերադառնալ Եգիպտոս: Ի պատասխան դրան, Յահվեն որոշում է նորից ջարդել բոլոր հրեաներին, կենդանի թողնել միայն Մովսեսին, որպեսզի նրանից մի նոր ժողովուրդ առաջանա: Բնորոշ է, որ աստված մարդկանց բազմացումը կատարում է սեռական մերձեցման ճանապարհով: Բոլոր կոտորածների դեպքում մի զույգ է կենդանի թողնում՝ արական և իգական հատկանիշներով: Մովսեսը պաղատում է աստծուն այս անգամ ներել հրեաներին: Վերջինս փոխում է իր վճիռը և որոշում՝ հրեաներին 40 տարի թափառեցնել անապատում և ապա տանել Ավետյաց երկիրը:

Սուրբ գրքում պետեղված «Երկրորդ օրինաց» գիրքը փաստորեն կրկնությունն է նախորդների: Այս գրքում նորն այն է, որ Յահվեն պահանջում է իրեն ողհեր մատուցել ոչ թե ամեն տեղ, այլ միայն մի վայրում: Դա նշանակում է, որ բոլոր ողհաբերությունները կենտրոնանում են քրմերի կաստայի՝ ղևտականների ձեռքում: Դրա համար էլ դրանից գոհ գրիչը նշում է. ինչպես արծիվն է իր բույնը շինում բարձրաբերձ ժայռերի վրա և իր թևերն է տարածում ձագերի վրա, այնպես էլ աստվածն է հովանավորում հրեից ժողովրդին (էջ 209):

Մովսեսի մահից հետո հրեական ժողովրդի ղեկավարությունն անցնում է Հեսու Նավինի ձեռքը: Սրանով վերջանում է այսպես կոչված, Հընգագիրքը, որը հավատացյալների կարծեցյալ ամենասուրբ գիրքն է:

Հեսուի ղեկավարությամբ մղվող կռիվների և Քանանի գրավման մանրամասնություններն են շարադրվում «Գիրք Հեսուա» գլխում, որտեղ որպես թե տիրոջ օգնությամբ հրեաները պարտության են մատնում իրենց թշնամիներին: Գրավելով Ավետյաց երկիրը, կողոպտելով, ստրկացնելով բնիկներին, հրեաները դարձյալ խախտում են Յահվեի օրենքները: Քանանի նվաճման հենց հաջորդ օրը Յահվեն պատվիրում է Հեսուին սրել դանակները և թլպատել բոլոր արուներին, որպեսզի նրանք չկենակցեն տեղացի կանանց հետ: Իսրայելացիք թլպատում են նաև բոլոր արու քանանցիներին: Հեսուի մահից քիչ անց, հրեաները նորից են մոռանում իրենց տիրոջ տված երդումը և շարունակում են պաշտել կուռքերին: Այս անգամ Յահվեն մեկ այլ ժողովրդի միջոցով դարձյալ ջարդում է իր «ընտրյալ» ժողովրդին:

Ապացուցված է, որ Աստվածաշնչի բովանդակության առանձին տարրեր առնված են ժողովրդի բանավոր ավանդությունից, որն առաջացել է նախքան եբրայական գրի ստեղծումը: Հաստատ է, որ մինչև Աստվածաշնչի կազմվելը եբրայական ժողովուրդն ունեցել է կրոնական բնույթի երգեր, ողբեր, հանդիսավոր հիմներ, մարգարեություններ, գուշակություններ և այլ ժանրի ժողովրդական ստեղծագործություններ: Բնական է, որ Բիբլիայում առաջին հերթին պետք է պետեղվեին կրոնական երանգի ստեղծագործությունները: Գիտնականները համոզված են, որ Աստվածաշնչի հնագույն ֆրագմենտը՝ «Դատավորներ» գլխում տեղ գտած Դեբորային վերաբերող երգն է: Որպես թե Դեբորա մարգարեուհին կազմակերպում է հրեից ժողովրդին և քանանցիներին այնպիսի մի ջարդ է տալիս, որ եբրայեցիք կարողանում են 40 տարի խաղաղ ապրել (էջ 242—243): Աստվածաշընչում պետեղված այդ երգը զուրկ է կրոնական բնույթից:

Մեր թվարկությունից 1000 տարի առաջ, եբրայեցիք փյունիկեցիներից փոխ առնելով իրենց գիրը, նախ և առաջ, գրի առան Աստվածաշնչի նյութերի մի մասը: Կան հիշատակություններ, որ մինչ այդ եղել են մի շարք մագաղաթյա գրքեր: Բանավոր ավանդություններից և նշված գրքերից քաղված նյութերը պետեղվել են Աստվածաշնչում: Նրա մեջ տեղ են գտել ոչ միայն եբրայական դիցաբանությունը, այլև պատմական, իրավաբանական, կենցաղային, գրական, ֆոլկլորային բնույթի արժեքավոր նյութեր, որոնք վերծ են կրոնական ոգուց: Բայց դարերով եկեղեցին օգտագործել է և դրանք՝ կրոնական նկատառումներով:

Հրեական ժողովրդի պետականությունը սկսվել է մեր թվարկությունից հազար տարի առաջ, երբ առաջին թագավորը (Բենիամինի ցեղից) ընտըրվել է Սավուղը: Վերջինս կարողանալով միացնել եբրայական տարբեր ցեղերին, երկար կռիվներից հետո հաղթեց փղշտացիներին և ստեղծեց մեկ միասնական պետություն: Սուրբ գրքում գրված է, որ Սավուղին դավաճանեց նրա մոտ հրամանատար եղած Դավիթը (Հուդա ցեղից): Անցնելով փղշտացոց բանակը, նա կռվեց Սավուղի դեմ և կարողացավ դառնալ հրեից միապետ: Փղշտացիների օգնությամբ իրեն ենթարկելով հրեական

տարբեր ցեղերին, Դավիթը գրավեց Քանանը ու Երուսաղեմը դարձրեց պետության մայրաքաղաքը: Սուրբ գրքում նշված է, որ Դավթի նվաճումներից երկիրը հարստացավ ու ծաղկեց, ինչպես և աճեց ստրուկների թիվը: Աստվածաշնչում բազմաթիվ էջեր են նվիրված այն դաժանությունների նկարագրությանը, որոնք կատարված են Դավթի կողմից: Բայց և շատ էջերում Դավիթը փառաբանվում է որպես Յահվեի կողմից նշանակված եբրայեցոց փրկիչ:

Դավթին փոխարինեց նրա որդի Սողոմոնը 10-րդ դարու կեսին (մեր թ. ա), որի օրոք Հրեաստանը դարձավ բավականին հզոր մի պետություն, իր զարգացած տնտեսությամբ ու կուլտուրայով: Կիրառելով մի շարք խոշոր ռեֆորմներ, Սողոմոնը հարկադրեց ժողովրդին հսկայական միջոցների վատնումով երկար տարիներ կառուցել Յահվեի տաճարը Երուսաղեմում: Արքայական պալատի և վերոհիշյալ տաճարի կառուցման վրա աշխատել են 150 հազարից ավելի ստրուկներ: Այդ վիթխարի շինարարության կապակցությամբ Սողոմոնի կիրառած ծանր պարտույթները, ծայր աստիճան սրեցին ժողովրդի դժգոհությունը, և երկրի հյուսիսում Սողոմոնի դեմ լուրջ ապստամբություն բռնկվեց, որը խեղդվեց արյան մեջ:

Սողոմոնի մահից հետո ծայր առած սոցիալական խլրտումները վերջացան նրանով, որ մինչ այդ մեկ պետության մեջ միավորված Հուդա և Իսրայել ցեղերը 926 թվականին (մեր թ. ա.) անջատվեցին: Երկրի հյուսիսում կազմվեց Իսրայելյան պետությունը, իսկ հարավում՝ Հուդա ցեղի իշխանությունը՝ Հրեաստանը: Առաջինի մայրաքաղաքը Սամարան էր, իսկ երկրորդինը՝ Երուսաղեմը: Մեր թվարկությունից առաջ 9 և 8-րդ դարերում Իսրայելն ու Հրեաստանը տիպիկ ստրկատիրական պետություններ էին, որոնք իրար դեմ արյունահեղ կռիվներ էին մղում: Ստույգ է, որ 722 թվականին (մեր թ. ա.) Բաբելոնի հարվածներից կործանվեց իսրայելյան տունը, իսկ ժողովրդի վերնախավը գերի տարվեց: Վախենալով իր անկումից, հարավում եղող Հրեաստանը ստիպված կիրառեց այսպես կոչված «երկրորդ օրենքը», որն իբր թե Մովսեսն էր կտակել: Այդ օրենքով՝ մասամբ մեղմացվեցին ստրուկների կեղեքումները: Բայց 597 թվականին (մեր թ. ա.) Բաբելոնը կրկին գրավեց Հրեաստանը և եբրայական արիստոկրատիային գերեվարեց Բաբելոն: Թեև 590 թվականին հրեաները մեծ ապստամբություն բարձրացրին նվաճողների դեմ, բայց և այնպես մի քանի տարի պաշարված Երուսաղեմն ընկավ (586 թվականին մեր թ. ա.): Այս երկրորդ գերությամբ էլ փակվեց եբրայական ժողովրդի պետության պատմության էջը:

Ահա մոտավորապես պատմական այն աղոտ ֆոնը, որի վրա խայտաբղետ գույներով ուրվագծվում է հրեից ժողովրդի կարմանալի հարուստ դիցաբանությունը, որն իր մարմնացումն է գտել Աստվածաշնչում: Հատկանշական է, որ, չնայած Յահվեի ձևական հաղթանակին, եբրայական ժողովուրդը երկար տարիներ մնում էր հեթանոս: Հեթանոսության դեմ մղվող պայքարի բազմաթիվ էջեր է պարփակում Աստվածաշունչը: Բնորոշ է, որ նույնիսկ Սողոմոն թագավորը (կամ իմաստունը) չէր քաշվում պաշտել այն բազում աստվածներին, որոնք բերել էին նրա պալատը՝ նրան պատկանող հարյուրավոր այլադավան կանայք ու հարճեր: Աստվածաշնչում այն մոլորությունն է քարոզվում, որպես թե ժողովրդի դարավոր տառապանքների միակ պատճառը՝ այլ աստվածներին հավատալն է: Եվ հրեաների «հավատափոխության» ու կրոնական «դավաճանության» շատ վառ դրվագներ կան Սուրբ գրքում: Հաստատված է, որ Յահվեի բացարձակ իշխանության ժամանակ եբրայեցիք շարունակում էին պաշտել 53 աստվածներ: Համենայն դեպս անվիճելի է, որ մինչև բաբելոնյան գերությունը, հրեաները ձեռք չէին վերցրել կռապաշտությունից:

Աստվածաշնչի գիտական հետազոտությունն անկասկած է համարում, որ Հին կտակարանի տեքստերից և ոչ մեկն էլ չի գրված 9-րդ դարից առաջ (մեր թ. ա.): Դեռ ավելին, միայն 7-րդ դարում (մեր թ. ա.) են միահյուսված Իսրայելի աստված Էլոհիմի և Հրեաստանի՝ Յահվեի շուրջը հորինված ասույթները: Անհերքելի է, որ միևնույն գրքում, նույն ժողովուրդն իր աստծուն տարբեր կերպ է կոչել:

Հրեից ժողովրդի համար 8-րդ դարը (մեր թ. ա.) տագնապալի էր: Ժողովրդական զանգվածների ծանր կեղեքումը մի կողմից և այլ պետություններից կրած հարվածները մյուս՝ կործանման եզրին էին հասցրել ժողովրդին: Խորտակվելու ահից սմքած ժողովուրդը ելք էր երազում: Եվ պատահական չէ ամենևին, որ այդ ժամանակ երկրում ծայր է առնում «մարգարեների» շարժումը, մարգարեներ, որոնք ժողովրդի բախտի գուշակությունները համեմում էին կրոնական միստիկ քարոզներով և հորդորներով: Մարգարեները բոցաշունչ կամ լալահառաչ եղանակով կոչ էին անում տառապող եբրայեցիներին՝ մաքառելու այլադավանների դեմ: Հովիվ Ամոսն առաջինն էր, որ հանդգնեց հրապարակով «գուշակել» իր ժողովրդին սպասվող աղետաբեր գալիքը: Այս հասկացող հովիվը շեշտում էր, որ Իսրայելի կործանման պատճառն այն հարուստներն են, որոնք «բազմում են փղոսկրյա օթյակներում և վայելք են անում փափուկ անկողիններում, հոտերի գառները և նախրի պարարտ հորթերն են ուտում: Գավաթներով գինի են խմում և թանկարժեք յուղերով են օծվում» (էջ 848): Նշավակելով հարուստների և վաշխառուների



ոտնձգությունները աղքատների հանդեպ, Ամոսը որոտում է. «Դուք իրավունքը դառնություն և արդարության պտուղը՝ օշինդր եք դարձրել» (էջ 849): Այս մարգարեն ցասումնալի Յահվեի անունից ասում է, որ հարուստները «արդարին՝ դրամով, և տնանկին՝ մեկ զույգ կոշիկով են վաճառում: Իմ սուրբ անունը պղծելու համար հայր ու տղան կենակցում են միևնույն աղջկա հետ» (էջ 846):

Իհարկե, Ամոսը խարազանում է և հասարակ ժողովրդին, նշելով, որ տերը պետք է պատժի ոչ միայն «նենգությամբ խարդախ կշեռքներ գործածողներին և աղքատներին կուլ տվողներին», այլև ժողովրդի մեջ եղած բոլոր մեղավորներին:

Ըստ եկեղեցու պաշտոնական կանոնի, Աստվածաշնչում տեղ գտած մարգարեներից գլխավորները Եսայը, Երեմիան և Եզեկիելն են: Այս և մնացած բոլոր մարգարեների մոտ անվերջ կրկնվում է այն միտքը, որ հրեական ժողովուրդը դավաճանում է ամենազոր Յահվեին: Դրա համար էլ նա ջրհեղեղի, ժանտախտի, կայծակի, մորեխի, սովի, պատերազմների ու համաճարակների միջոցով պարբերաբար ոչնչացնում է իր «ընտրյալ» ժողովրդին: Եզեկիել մարգարեն աստծու անունից ասում է. «Իսրայելի մեջ տղան իր հոր մերկությունն է ցուցահանում, դաշտանի պատճառով անմաքուր կինն է բռնաբարվում: Մեկն իր հարևանի կնոջն է պղծում, իսկ մյուսն իր հարսին և հաջորդը՝ սեփական քրոջն է բռնաբարում: Արյուն թափելու համար կաշառք են առնում, վաշխ ու տոկոս են տամար կաշառք ... լիս և բռնությամբ դրացիներից կայք են վաստակում»: Ահա թե ինչու վրդովված տերը «սրբավայրել» ասում է. «Իսրայելի տունն ինձ համար կղզել կղանք եղավ: Այստեղ ամենքդ էլ կղկղանքի պես եք» (էջ 785):

Նման քարոզների միջից պարզ երևում է այն ճշմարտությունը, որ եբրայական Յահվե աստվածը միշտ խոսում և գործում է պարզապես անվայելուչ մարդու նման: Նա օժտված է մարդկային ամեն կարգի որակներով: Նրա դատողություններն ու գործողությունները ոչնչով չեն տարբերվում իրականության մեջ տեղ գտած միահեծանի պրակտիկայից: Տիրոջ մարգարեները սովորական մարդկանց պես են վարվում: Եսայը հրահրում է հրեաներին՝ բնաջնջելու հարևան ժողովուրդներին և գերի վերցնելու իրենց երբեմնի գերողներին: Երբ աշխարհում կիշխի հրեական սուրը,— հավատացնում էր Եսայ մարգարեն,— «գայլը կապրի գառան հետ, իսկ վագրը կննջի ուլիկի կողքին»: Նման երանելի կացութաձև է խոստանում Յահվեն ժողովրդին, երբ աշխարհ կգա նրա օծյալը:

Տերը մարգարեի բերանով հուսադրում է տառապյալներին, որ ժողովրդի փրկիչը՝ (մեսիան), որը գալու է շուտով, լինելու է Դավթի տոհմից: Այսպիսով, Հին կտակարանում խոսվում է միայն օծյալի կամ մեսիայի, բայց ոչ երբեք Քրիստոսի մասին: Ընդգծենք, որ Աստվածաշնչի հիշատակած մեսիան գալիս է կործանելու բոլոր ժողովուրդներին և աշխարհում հաստատելու միայն հրեից սրի տիրապետությունը:

Ռազմատենչ և վրիժառու Յահվեն անընդհատ կոչում է հրեաներին՝ «Կողոպտել կողոպտիչներին, պլոկել պլոկողներին»: Նա ամենուր գործում է բառիս բուն իմաստով բռնություններով: Դրա համար էլ նա ժողովրդին կոչում է. «Սուրը, սուրը սրեցեք մորթելու համար: Արդարն ու մեղավորը պիտի ոչնչացնեմ և սուրս պատյան չեմ դնելու, մինչև ամեն ինչ տակնուվրա չանեմ: Սուրը սրվել է մեծ կոտորածի համար»: Սրանք աստծու հերթական հրամաններ են՝ տրված Եզեկիել մարգարեին (էջ 784): Վերջապես, Յահվեն հրամայում է մարգարեին ասելու ժողովրդին. «Դու ոսկուց և արծաթից կուռքեր շինեցիր և քո մեծանդամ սահմանակիցներիդ՝ եգիպտացիների հետ պոռնկություն արիր և քո բզկանոցը պիտի փլցնեմ» (էջ 777): Եվ որպեսզի «պոռնկացած» ժողովրդին խելքի բերի, Յահվեն կարգադրում է Եզեկիելին հարկադրել ապստամբ ժողովրդին սնվել... (էջ 767): Անհարմար ենք գտնում այդ տողերը ցիտել:

Աստվածաշնչի գիտական ուսումնասիրությունը բնավ չի հերքում, որ վաղ շրջանի մարգարեների գրքերը մերթ արտահայտում են գոյություն ունեցող քարքերի ապականությունը: Սակայն դա չէ էականը: Այլ այն, որ ոչ մի մարգարե չի պահանջում վերացնելու իր քննադատած ստրկատիրական հարաբերությունները: Այլ կերպ էլ լինել չէր կարող: Օգտագործելով ստրուկների ատելությունն ու ցասումը, մարգարեները ձգտում էին բարելավել ստրկատիրական հասարակարգը: Դասակարգային ատելությունը մարգարեների գրքերում ոչ միայն իր արտահայտությունն է գտել, այլև իր ելքն ու թուլացումը: Ինչպես առհասարակ ամեն կրոնում խափանվում է թշվառների բողոքն ընդդեմ հարուստների, այնպես էլ մարգարեների տրտունջներն են մարում Աստվածաշնչի էջերում: Դրանով էլ մարգարեների գրքերը նպաստել են ստրկության ամրապնդմանն ու սրբագործմանը, նրա աննշան սրբագրություններով հանդերձ:

Եբրայական ժողովրդի ծանր տարիների արձագանքը պետք է համարել Դանիել մարգարեի (167—164 թթ. մեր թ. ա.) գիրքը, որում շատ բան կրկնված է իր նախորդներից: Իսկ Երեմիա մարգարեի գրքերի մի մասը բովանդակում է հրեական ժողովրդի ծանր կյանքի պայմանների նկարագրությունը բաբելոնյան գերության տարիներին և հրեից ժողովրդի պետության կործանումը Նաբուգոդոնասարի ձեռքով: Երկար տարիներ լինելով բաբելոնյան գերության մեջ, հրեաները յուրացրին Բաբելոնի բարձր կուլտուրան և միֆոլոգիան:

Աստվածաշնչի հետազոտողները վաղուց են նըշել, որ բոլոր մարգարեներին միշտ անհանգստացրել է այն հանգամանքը, թե ինչու ամենազոր աստվածը չի կարողանում որևէ կերպ փրկել իր «ընտրյալ» ժողովրդին: Ե՞րբ և ինչպե՞ս է նա օգնելու իր տարաբախտ հոտին: Ահա այս հարցին պատասխան չգտնելով, միշտ կեղեքվող ժողովրդի մունետիկներին մնում էր հուսալքված կառչել պապենական ծեսերի և օրենքների օգնությանը: Հենց այս նպատակով էլ Եզեկիել մարգարեն հուսադրում է իր ժողովրդին, գերությունից ազատվելու և Երուսաղեմի տաճարը վերականգնելու համար:

Պարսից արքա Կյուրոսի զորքերը 538 թվականին (մեր թ. ա.), խորտակեցին հզոր Բաբելոնը: Կյուրոսը արտոնեց հրեաներին գերությունից վերադառնալ Հրեաստան: Հայրենի երկրի փաստական իշխանությունը անցավ հոգևոր կաստայի ձեռքը: Ավելի սաստկացավ ժողովրդի թշվառ վիճակը: Թեև չկար եբրայական միապետությունը, բայց անհրաժեշտ էր գեթ վերականգնել Երուսաղեմը՝ հոգևոր դասի գանձարանը: Գերությունից վերադարձած (456 թվականին մեր թ. ա.) Եզրաս մարգարեն մշակեց և կիրառեց այսպես կոչված «Քրմական կոդեքսը»:

Պետք է հավաստի համարել, որ այսպես կոչված Մովսեսի օրենքը և Եզրասի կազմած Հնգագիրքը վերջինիս կողմից խմբագրված է V դարի կեսերին (մեր թ. ա.): Ուրեմն, եկեղեցու կողմից հնարված Մովսեսի առասպելից 1000 տարի հետո է կազմված Աստվածաշունչը: Դեռ ավելին, այս գրքի վերջնական խմբագրությունը ավարտվել է 100 թվականին (մեր թ. ա.): Հետագայում ևս նրա բովանդակությանն ավելացված են. «Դատավորաց», «Թագավորաց» և «Մնացորդաց» գրքերը, որոնք նախորդների կրկնությունն են:

Բաբելոնյան գերությունից եբրայեցիք հազիվ էին շունչ քաշել, երբ նրանց երկիրը ներխուժեցին Ալեքսանդր Մակեդոնացու զորքերը (332 թվականին մեր թ. ա.): Նվաճողները հրեաներին հարկադրեցին հելլենական ապրելակերպն ու կրոնը: Յահվեի կուլտը տեղի տվեց Զևսի պաշտամունքին, որը լրացրեց հավատացյալների համբերության բաժակը: Բռնկվեց մասսայական ապստամբություն նոր բռնակալների դեմ (167 թ. մեր թ. ա.): Ապստամբության ղեկավարներն էին կըտրիճ Մակաբեյ եղբայրները, որոնց հաջողվեց հրեից ժողովրդի այդ հերոսամարտը պսակել հաջողությամբ: Երկրից դուրս մղվեցին նվաճողների զորքերը և վերականգնվեց եբրայական պետությունը քրմապետ Սիմոնի գլխավորությամբ: Այս իրողությունը բավական եղավ, որպեսզի տանջված հրեաները նոր թագավորին դիտեին որպես աստծու **առաքած մեսիան**, որին նրանք վաղուց անձկում էին: Բայց, ինչպես միշտ և ամենուր, այս անգամ էլ հավատացյալների ակնկալումները հօդս ցնդեցին: Նոր դինաստիայի օրոք ժողովրդի վիճակը կրկին ծանրացավ: Կրկին ծայր առած ապստամբությունը հայրենի կեղեքողների դեմ ավարտվեց նրանով, որ ժողովրդից սպանվեցին 15 հազար և աքսորվեցին 80 հազար մարդ: Այս անգամ էլ տիրոջ օծյալը ո՛չ եկավ և ո՛չ էլ օգնեց տառապյալներին:

Եբրայական ժողովրդի կյանքը թևակոխեց մի նոր փուլ, երբ 63 թվականին (մեր թ. ա.), հռոմեական զորավար Պոմպեոսը գրավելով Երուսաղեմը, մեկընդմիշտ վերջ տվեց հրեից պետությանը: Սկսվեց մասսայական արտագաղթ Հրեաստանից դեպի Հռոմի տիրապետության տակ եղած այլ երկրներ:

Ապրելով այլ երկրներում, տանջահար եբրայեցիք այն համոզման եկան, որ այլադավան ժողովուրդների հետ հաշտ ապրելուն մեծապես խանգարում է իրենց ռազմաշունչ Յահվեն, որը ազգային աստված էր: Գործնական նկատառումներով եբրայեցիք պետք է հրաժարվեին բնիկների հետ գժտվելուց՝ գոյություն չունեցող Յահվեի պատճառով: Այլ ժողովուրդների հետ կենակցելու անհրաժեշտությունը ստիպեց հրեական քրմերին Յահվեին ապազգային պատմուճան հագցնել: Այս առիթով Ֆ. Էնգելսը գրել է. «Հին ժամանակների բոլոր կրոնները նախնադարյան ցեղային, իսկ այնուհետև ազգային կրոններ են եղել, որոնք առաջացել են յուրաքանչյուր ժողովրդի հասարակական և քաղաքական պայմաններից և սերտորեն աճել էին նրանց հետ: Քանի որ խորտակված էր դրանց այդ հիմքը, ջարդված էր ժառանգված հասարակական ձևը, հնամենի քաղաքական կառուցվածքը և ազգային անկախությունը, ապա հասկանալի է, որ պետք է խորտակվեր և դրա հետ կապված կրոնը: Ազգային աստվածներն իրենց կողքին կարող էին հանդուրժել այլ ժողովուրդների ազգային աստվածներին, բայց ոչ երբեք իրենց աստծուց բարձր. հին ժամանակներում դա ընդհանուր կանոն էր» (К. Маркс и Ф. Энгельс, Соб. соч., том XV стр. 607):

Հետագայում եբրայական կրոնը (կամ հրեությունը) խորապես ազդվեց այլ ժողովուրդների կրոններից, հատկապես միստիկ բնույթի գնոստիցիզմից և նեոպլատոնիզմից: Ահա թե ինչու մի գրքում ներկայացված եբրայական ժողովրդի կրոնը հանդիսանում է իրարամերժ մեկնությունների, հակագիտական հայացքների, աղճատված փաստերի և ֆանտաստիկ մտասլացումների մի կոնգլոմերատ: Աստվածաշնչում զետեղված են գործեր, որոնք էապես չեն առնչվում հրեից կրոնի հետ: Դրանք են՝ սաղմոսների մի մասը, որոնք սխալմամբ Դավթին են վերագրում, Երգ երգոցը, Հռութը, Եսթերը, Առակները, Էկլիսիաստը և այլն:



Մինչև օրս էլ չի պարզված, թե ով է Էկլիսիաստը:

Ամբողջովին պեսիմիստական և բուդդայիզմից ազդված այդ երկի հեղինակի համար մեր աշխարհի բոլոր եղելություններն անիմաստ են և հոգու թմբիր: Ըմբռնելով ամեն ինչ, ասում է նա, ես համոզվեցի՝ որքան խորն է իմացությունն, այնքան մեծ է մեր վիշտը: Ով՝ բազմապատկում է իր իմացությունը, նա մեծացնում է իր թախիծը: Ուրախ կյանքն ու գինին նմանապես ունայնություն են և հոգու թմրություն: Թե հարստությունը, և թե իմաստությունը ունայնություն են, որովհետև երկուսն էլ՝ հարուստն ու աղքատը հավասարապես մեռնում են: Ինչ գոյություն ունի, նա փոշիանում է տիեզերքում և աշխարհում ոչինչ նոր և ոչինչ լավ բան չկա: Կյանքն ինչպես ընթացել է, այնպես էլ կընթանա: Ճաշակելով կյանքի բոլոր քաղցրություններն ու դառնությունները, Էկլիսիաստն ասաց՝ ունայնություն ունայնության (էջ 638—647):

Գեղեցիկ լեզվով, բայց հոռի ոգով գրված փիլիսոփայական այդ ֆրագմենտը չի առնչվում Սուրբ գրքի հետ:

Աստվածաշնչում զետեղված արժեքավոր նյութերից է Երգ երգոցը: Համաշխարհային գեղարվեստական գրականության հայտնի երկերից է դա, որի հեղինակը հայտնի չէ, թեև եկեղեցին այն վերագրում է Սողոմոնին: Հյութեղ և դյութիչ այս սիրերգը որպես արձակ բանաստեղծություն, իր բովանդակությամբ լիովին հակասում է կրոնի դոգմաներին: Սակայն բնորոշն այն է, որ մի շարք գեղարվեստական և պատմական նյութեր զետեղելով Աստվածաշնչում, եկեղեցին օգտագործել է դրանք, որպեսզի այդ եղանակով հարկադրի ընթերցողներին՝ կարդալու կրոնական բնույթի հատուկ տաղտկալի էջեր: Հենց այս նպատակով էլ Երգ երգոցը հատվածելով մանր գլուխների, եկեղեցու հայրերը թունդ կրոնական վերնագրերով են հրամցրել այդ բանաստեղծությունը: Ահա մի քանի հատվածներ:

Ո՛վ Երուսաղեմի աղջիկներ, ես սև եմ՝ բայց գեղեցիկ Կեդարի վրանների պես, Սողոմոնի վարագույրների պես: Թե որ դու չգիտես ո՛վ կանանցից ամենագեղեցիկ, հոտերի շավիղներով գնա և հովիվների վրանների մոտ ուլերդ արածացրու: Փարավոնի կառքերին լծված ձիերիս քեզ նմանեցրի, ո՛վ իմ սիրուհիս: Իմ սիրականս՝ ինձ համար զմուռսի ծառի խեժի պես է, գիշերը իմ ստինքների մեջ պիտի հանգչի: Իմ սիրականս հինայի ողկույզի պես է: Ահա գեղեցիկ ես՝ ո՛վ իմ սիրուհիս. ահա գեղեցիկ ես:

Ես Սարոնի ծաղիկն եմ ու հովիտների շուշանը: Ինչպես շուշանն է փուշերի մեջ՝ այնպես էլ սիրուհիս աղջիկների մեջ: Իմ սիրականս այծյամի կամ եղնիկի ձագի է նման: Նա պատասխան տալով ինձ ասավ. ելիր, ո՛վ սիրուհիս, ո՛վ գեղեցիկս և ինձ մոտ արի: Որովհետև ահա ձմեռն անցավ, անձրևներն անցան գնացին: Գետնի վրա ծաղիկներ երևացին, բայց հոտելու ժամանակը հասավ և մեր երկրի վրա տատրակի ձայն լսվեց: Օրվա հովը չփչած և ստվերները չհեռացած, դարձիր ո՛վ իմ սիրական (էջ 642—646):

Այս սիրավեպ արձակ բանաստեղծության զետեղումը Սուրբ գրքում արված է անշուշտ այն նպատակով, որպեսզի հրապուրեն մարդկանց կարդալու գրքի մռայլ էջերը:

Աստվածային անարդարությունների և դաժանությունների մասին է խոսվում Հին կտակարանում զետեղված Հովբի գրքում: Արդար ու երջանիկ էր կալվածատեր Հովբը: Գրազ գալով սատանայի հետ, աստվածը Հովբին ենթարկում է անպատում տանջանքների: Զրկված ամեն ինչից, բորոտած, նստած մոխրակույտի վրա տանջահար Հովբը բողոքում է աստծուն շեշտելով, որ տերն անարդար է և անիրավ: «Աստծուն պիտի ասեմ, ինձ մի դատապարտիր. ինձ ասա, թե ինչ բանի համար հետս վիճում ես: Գիտեմ որ հանցավոր չեմ. բայց չկա մեկը որ քո ձեռքից ինձ ազատի: Ինձնից հեռու կաց, թույլ տուր մի փոքր հանգստանամ», ասում է աստծուն խիստ դառնացած Հովբը (էջ 508—509): Հիասթափված իր բարեկամներից, նա ասում է. «Ինչո՞ւ աստծու պես ինձ կհալածեք և մարմնիցս չեք կշտանում» (էջ 515): Աշխարհիս վրա անարդարները և անիրավները ապրում են հզոր ու երջանիկ, բայց տիրոջ գավազանը նրանց չի դիպչում, նշում է Հովբը: Սակայն լինելով տիրոջ խոնարհ ծառան, նա վախեցած աստծուց՝ հավատում է նրա մեծությանն ու գթությանը և պըղջում իր բողոքի համար: Եկեղեցին հաճախ է օգտագործում Հովբի գիրքը չեղած աստծու ողորմածությունն ապացուցելու համար:

Աստվածաշնչի «ամենազոր» տերն ամեն ինչ կատարում է ապրանքային փոխանակության սկզբունքով: Նա ասում է. ես ինձ փառավորողներին պիտի փառավորեմ, իսկ արհամարհողներին պիտի պատժեմ (էջ 271): Որովհետև Դավիթ թագավորը լավ է կոտորել ու ջարդել, ապա տերը երախտապարտ է նրան, հենց դրա համար էլ նա մարգարեին հայտնում է, թե ժողովրդի եկող փրկիչը լինելու է Դավթի տոհմից: Սակայն ինչ գրված է Աստվածաշնչում Դավթի մասին, մեկ համոզում է, որ նա սովորական արյունարբու բռնակալ է եղել և միշտ խախտել է տիրոջ օրենքը:

Դավիթը կոհ է մատուցում աստծուն միայն այն պատճառով, որ վերջինս միշտ օգնել է նրան աշխարհիս վրա գործած բռնությունների համար: Դիմելով աստծուն, նա աղոթում է.

«Դու ինձ օգնեցիր ոչնչացնելու թշնամիներիս:

«Աստվածաբանական-քաղաքական տրակտատում» Սուրբ գրքի խոր վերլուծությամբ նա ապացուցեց, որ «Հնգագիրքը» անհամեմատ ուշ է կազմված, քան կարծում են եկեղեցականները: Այն Մովսեսին վերագրելը անհեթեթություն է:

Տասնութերորդ դարի կեսին ֆրանսիացի բժիշկ Ժան Աստրյուկը անհերքելի փաստերով ապացուցեց, որ Աստվածաշնչում «Ծննդոց» գիրքը երկու տարբեր աղբյուրներ ունի՝ մեկի հեղինակն աստծուն կոչել է Յահվե, իսկ մյուսը՝ Էլոհիմ (հին եբրայերեն նշանակում է՝ աստվածներ): Երկու տարբեր աղբյուրների միացումը մատնում է գրքի հակասական բնույթը և կրկնությունները: Աստըրյուկի հայտնագործությունը լուրջ հարված էր Աստվածաշնչի եկեղեցական մեկնաբանությանը: Աստվածաշնչի գիտական քննադատությունը վաղուց է ապացուցել, որ «Հնգագրքի» և Հեսու Նավինի գրքերի հիմքում դրված են չորսից ավելի տարբեր աղբյուրներ, որոնք միացվել են միմյանց հավանաբար հինգերորդ դարում (մեր թ.ա.): Անցյալ դարում մի շարք գիտնականներ եկան այն հիմավորման, որ եկեղեցու պաշտոնական տեսակետը Աստվածաշնչի գրելու ժամանակի վերաբերյալ՝ ճիշտ չէ, նրանք հիմնավորեցին, որ այսպես կոչված Մովսեսի օրենքը, Հեսու Նավինի, «Դատավորներ», «Թագավորներ» կոչված գրքերը գրված են շատ ուշ, առնվազն 1000 տարի հետո, քան պնդում են եկեղեցականները:

Հնէաբանական պեղումները բացահայտեցին, որ շումերական և հին բաբելական դիցաբանական գրականությունը շատ ավելի հին է, քան Աստվածաշունչը: Վերջինիս մեջ նկարագրված Նոյա տապանի առասպելը, Աբելի և Կայենի վեճը, մարդուն հողից ստեղծելու միֆը ամբողջովին վերցված է շումերա-բաբելական դիցաբանությունից: Եգիպտական և փյունիկյան դիցաբանության ազդեցությունը ակներև է Աստվածաշնչի էջերում:

Անգլիական հնէաբան Ջ. Սմիթը 1872 թվականին հայտնաբերած բրածոների հիման վրա համոզիչ փաստերով շարադրեց, որ Ադամ ու Եվայի դրախտի առասպելը վերցված է ասորական դիցաբանությունից, իսկ Մովսեսի ծնունդն ու փրկությունը՝ պարզ կրկնություն է ակադական թագավոր Սարգոն առաջինի (24-րդ դար մեր թ. ա.) վերաբերյալ եղած ավանդությունից: Եվ վերջապես, 1901 թվականին Իրանի տերիտորիայում պեղումների ժամանակ հայտնաբերվեց մի քարե սյուն, որի վրա փորագրված են բաբելական թագավոր Խամուրաբիի օրենքները (1792—1790 թթ. մեր թ. ա.): Հետազոտողները միաբերան վկայում են, որ Խամուրաբիի մի շարք օրենքներ բառացի կրկնված են Աստվածաշնչում: Այդ սյան վրա նկարված է Խամուրաբիի արքան Շամաշ աստծուց քարի վրա գրված օրենքն ընդունելիս: Մովսես մարգարեն նրա պես իբր թե ընդունել է օրենքները Յահվեից: Ոչ միայն Մովսեսի օրենքները, այլև Սուրբ գրքի մի շարք սաղմոսներ կրկնում են ասորա-բաբելական երգերը: Այդ նույն աղբյուրից են առնված այսպես կոչված Սողոմոնի առակները:

Գիտության ներկայացուցիչները չեն կասկածում, որ Աստվածաշնչում հանդես եկող իմաստուն օձը հավանաբար առնված է քանանացիների պաշտամունքից: Դա կատարվել է անշուշտ այն ժամանակ, երբ հրեաները մուտք գործեցին Քանան, որտեղ բնիկները պաշտում էին օձին: Ահա թե ինչու Սուրբ գրքում օձն ավելի իմաստուն է, քան տիրոջ ստեղծած մարդկային «անբան» զույգը:

Սակայն մեր ասածից չպետք է ենթադրել, որ հրեական Սուրբ գրքի ամբողջ բովանդակությունը փոխառություն է: Ամենևին ոչ: Չպետք է անտեսել, որ «հրեական այսպես կոչված Սուրբ գիրքը ոչ այլ ինչ է, քան գրառումը հին արաբական կրոնական և տոհմական տրադիցիաների, որոնք ձևափոխվել են շնորհիվ այն բանի, որ հրեաներն անջատվել են իրենց ցեղակից, բայց վաչկատուն մնացած տոհմերի տրադիցիաներից»: Հետևաբար, Աստվածաշնչի «հիմնական բովանդակությունը եղել է արաբական կամ ավելի ճիշտը՝ ընդհանուր սեմիտական» (К. Маркс и Ф. Энгельс, О религии, стр. 93):

Ինչպես երևում է Աստվածաշնչի բովանդակությունից, նրա բազմաթիվ հեղինակները ջանք չեն խնայել ժողովրդի կյանքում արմատավորված հեթանոսական հավատալիքները դուրս մղել Յահվեի պաշտամունքից: Իրականում դա նրանց լիովին չի հաջողվել: Սուրբ գրքում քանիցս շեշտված է, որ աստված արգելում է մորթված անասունի արյունը ճաշակել: Իբր թե յուրաքանչյուր մարմնի հոգին նրա արյունն է: Սա արդեն հեթանոսության այն շրջանից է, երբ հրեա ժողովուրդը, ինչպես և նրա քրմերը խորապես հավատում էին, թե մարդը մեռնելիս հոգին անջատվում է մարմնից: Եվ քանի որ առանց արյունի մարդը կամ կենդանին չեն կարող ապրել, ապա նրանց պատկերացումով հոգին էլ հենց արյունն է: Տվյալ դեպքում արյունը սուրբ համարելով, հրեից Յահվեն մատնում է հեթանոսության հետ ունեցած իր էական կապը: Հին հրեաները, ինչպես և շատ ժողովուրդներ դարերով պաշտել են բնության ուժերը, այդ թվում և անապատի չար ոգի այծակերպ Ազազելին (աստված-այծին), որին հագուրդ էին տալիս, ամեն աշուն անապատը այծ քշելով («Քավության նոխազ»): Այգիների և դաշտերի ոգիներին հին եբրայեցիք բերքահավաքից հետո թողնում էին հատիկի և խաղողի որոշ քանակությունը: Նրանք պաշտում էին փայտե և քարե սյուները, որոնց մեջ իբր թե բնակվում էին աստվածները: Հեթանոս ժամանակ հին եբրայեցիք դեռևս էապես չէին տարբերում հոգիները աստվածներից: Նրանց մոտ զարգացած էր նաև նախնիների պաշտամունքը: Հեռավոր անցյալում հին եբրայեցիք զատիկը տոնում էին որպես անասնապահների տոն: Նախքան հացահատիկը տուն բերելը հին քանանացիների պես, հրեաներն էլ պետք է ճաշակեին (նուբար անեին) նոր բերքից թխված առաջին բլիթը ի պատիվ դաշտերի աստծու: Հայերի մոտ դա ջրաղացի բաղարջ է կոչվում: Անձրևի, այգեկութի տոները հրեաների մոտ կրկնվում էին ամեն տարի: Այս ծեսերի կիրառումը եղել է և հայ ժողովրդի մոտ:



Տոհմատիրական հասարակության կործանումով բնության ուժերի պաշտամունքը և հոգեպաշտությունը (անիմիզմ), տեղի տվեց հասարակական ուժերի պաշտամունքին: Դասակարգերի առաջացումը ծնեց պոլիթեիզմ (բազմաստվածություն), երբ պաշտամունքի աստվածները մարդակերպ դարձան: Աստվածաշնչում տեղ գտած լեգենդար Սամսոնը ինչպես ապացուցում են հետազոտողները, անցյալում հանդիսացել է արևի աստվածը (Սամսոն հին եբրայերեն նշանակում է արև): Իր քաջագործություններով հրեից Սամսոնը շատ նման է շումերական Գիլգամեշին և հունական Հերակլին:

Ողջ Սուրբ գրքում կարմիր թելով այն միտքն է անցնում, որ Յահվեի հետ ապրում ու գործում են բազմաթիվ չար ոգիներ, որոնք հաճախ տապալում են Յահվեի մտահղացումները: Այս երկվությունը կա և բուդդայական կրոնի, քրիստոնեության և այլ կրոնների մեջ: Բայց VIII դարից հետո եբրայական ժողովրդի կրոնական անդաստանում բազմաստվածությունը հետզհետե տեղի տվեց միաստվածության: Այս անցման հիմքը պետք է որոնել այն սոցիալ-տնտեսական պրոցեսների մեջ, որոնք տեղի ունեցան հրեական ժողովրդի կյանքում: Սոցիալական ճնշման դիմագրավելու և քաղաքական անկախություն ձեռք բերելու ձգտումները կարիք ունեին զեթ երևակայական հենարանի, որն իհարկե, հայրենի Յահվեն էր: Իրական աշխարհում կորցնելով իրենց «ապավեն» թագավորին (որը եբրայեցիների աչքում տիրոջ օծյալն էր այս աշխարհում), հրեից քրմերն ու մարգարեները հարկադրված իրենց աստծուն պետք է հակադրեին այլ աստվածների, հավատալով միայն մեկին: Հուսախաբված բազմաթիվ աստվածներից՝ անօգնական հրեից ժողովուրդն իր ակնկալումներն ու հույսը կապեց մեկ աստծու հետ:

Այսպիսով, Աստվածաշնչի ուսումնասիրությունը պերճախոս կերպով ապացուցում է մարքսիստական այն մտքի ճշմարտացիությունը, որ կրոնը արտաքին ուժերի ֆանտաստիկ արտացոլումն է մարդկանց գլուխներում, մի արտացոլում, որի մեջ երկրային ուժերը վերերկրային ձև են ընդունում: Հասարակական զարգացման որոշ աստիճանի վրա բնական ուժերի հետ միասին մարդկանց վրա իշխում են և նրանց համար անհասկանալի հասարակական ուժերը: Զարգացման ավելի բարձր աստիճանի վրա բազմաթիվ աստվածների հատկանիշները փոխանցվում են մեկ աստծու, որը վերացական մարդու արտացոլումն է: Այսպես ծագեց միաստվածությունը, որը պատմականորեն հունական ավելի հետագա դարաշրջանի վուլգար փիլիսոփայության վերջին արդյունքն էր և որն իր մարմնացումը գտավ հրեական զուտ ազգային Յահվե աստծու մոտ,— ասում է Ֆ. Էնգելսը:

Մեկ այլ անգամ կանդրադառնանք Աստվածաշնչի երկրորդ մասին, որը կոչվում է Նոր կտակարան:

Ա. ԱԴՈՅԱՆ

ները և երիտասարդները գրեթե կտրված են հասարակական աշխատանքներից, նախաձեռնություն հանդես չեն բերում արտադրական առաջադրանքների հաջող կատարման գործում։

Քաղկոմի բյուրոն հանձնարարեց Տեղարդկոմբինատի պարտիական կազմակերպությանը ավելի կոնկրետ զբաղվել կոմերիտական կազմակերպության աշխատանքների բարելավման հարցով, օգնել նրան կոմբինատում լայնորեն ծավալելու սոցիալիստական մրցությունը, ապահովելու բոլոր կոմերիտականների և երիտասարդների ակտիվ մասնակցությունը արտադրական պլանների կատարմանը։ Քաղկոմի բյուրոն պարտավորեցրեց պարտիական կազմակերպության քարտուղարին և կոմբինատի դիրեկտորին կազմակերպել տեխնիկական ուսուցման խմբակներ, միջնակարգ կրթություն չունեցող երիտասարդ բանվորներին ընդգրկել գիշերային դպրոցում։

## ԲԱԶՄԱՏԻՐԱԺ ԹԵՐԹԵՐԻ ՀԱՐՑԸ ՇՐՋԿՈՄԻ ԲՅՈՒՐՈՅՈՒՄ

ՀԿՊ Կիրովյան շրջկոմի բյուրոն քննության առավ «Գյուղատնտես» (խմբագիր Ս. Սարգըսյան) և «Հիդրոշինարար» (խմբագիր Օ. Սեմիրջյան) բազմատիրաժ թերթերի աշխատանքը՝ Գյուղատնտեսական ինստիտուտի և Հայհիդրոէներգոշինի կոլեկտիվների շրջանում ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների պրոպագանդման ասպարեզում։ Բյուրոն նշեց, որ թերթերը որոշակի դրական աշխատանք են կատարել այդ ուղղությամբ։

Սակայն թերթերի աշխատանքներում կան մի շարք էական թերություններ։

«Գյուղատնտես» թերթը անբավարար է լուսաբանում ինստիտուտի կապը արտադրության, կոլտնտեսությունների ու սովխոզների հետ, անհրաժեշտ ուշադրություն չի հատկացնում առաջավոր փորձի արմատավորման վրա։ Թերթում շատ քիչ են բարձրացվում գիտական, տեսական բնույթի հարցեր, որոնք կապված լինեն գյուղատնտեսության արտադրության հետ։ Ինստիտուտի դասախոսները հազվադեպ են հանդես գալիս նրա էջերում։ Թերթում քիչ են տպագրվում նյութեր ուսանողների դաստիարակության, հեռակա ուսուցման, ինչպես նաև ուսանողական գիտական ընկերության աշխատանքների վերաբերյալ։

«Հիդրոշինարար» թերթը անբավարար է պրոպագանդում արտադրության առաջավորների փորձը, տեղյակ չէ ռացիոնալիզատորական առաջարկների կենսագործման ընթացքին։

Երկու թերթերն էլ հետևողական չեն իրենց բարձրացրած հարցերում։ Սոցմրցությամբ վերցված պարտավորությունների կատարման մասին շատ քիչ հոդվածներ են տպագրվում։ Թերթի էջերում հազվադեպ են տպագրվում լուրջ քննադատական հոդվածներ։

Շրջկոմի բյուրոն կոնկրետ միջոցառումներ նշեց վերոհիշյալ թերությունները վերացնելու համար։

---



Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес Редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր),
ԱՌԱՔԵԼՅԱՆ Ս. Վ., ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ Գ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս.։

ՎՖ 08300 Պատվեր 2274 Տիրաժ 8500

Տպ. 7 մամուլ, մամուլում 68, 840 նիշ։ Ստորագրված է տպագրության 16/XI 1959 թ.։

Խմբագրությանը ստացված ձեռագրերը հեղինակին չեն վերադարձվում։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։

Գինը 2 ռ. 50 կ.